ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք








# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922թ.

4

ԱՊՐԻԼ • 1989

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4
ԱՊՐԻԼ
1989 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄ. ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ



ԵՐԿՐՈՐԴ ՓՈՒԼԸ՝ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄ



Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11







# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1989 թվականի մարտի 15—16-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը: Պլենումը քննարկեց հետևյալ հարցերը.

1. Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների անցկացման մասին:

2. Արդի պայմաններում կուսակցության ագրարային քաղաքականության մասին:

Պլենումին ներկա էին ՍՄԿԿ-ից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածուները:

Առաջին հարցի առթիվ ՍՄԿԿ-ից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների ընտրական հանձնաժողովի նախագահ Վ. Ա. Կոպտյուգը հանդես եկավ հաղորդումով:

Այնուհետև կայացավ քվեարկությունը, որին մասնակցեցին ՍՄԿԿ Կենտկոմի անդամները, ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուները, ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամները, ինչպես նաև միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների ու մարզկոմների՝ ՍՄԿԿ-ի կենտրոնական մարմինների կազմի մեջ չմտնող, բայց կուսակցական այլ ընտրովի մարմինների անդամներ հանդիսացող առաջին քարտուղարները, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների երկրորդ քարտուղարները, միութենական հանրապետությունների Գերագույն սովետների նախագահությունների նախագահները և Մինիստրների խորհուրդների նախագահները, մինիստրներ, զինվորական օկրուգների հրամանատարները:

Գաղտնի քվեարկությամբ բոլոր թեկնածուներն ընտրվեցին Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատներ:

Պլենումն ընդունեց ՍՄԿԿ-ից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատներին տրվող պատվիրանների մասին որոշում:

Արդի պայմաններում կուսակցության ագրարային քաղաքականության մասին հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը: Այս հարցի քննարկմանը մասնակցելու համար պլենում են հրավիրված գյուղական շրջկոմների մի խումբ քարտուղարներ, կոլտնտեսությունների նախագահներ, սովխոզների դիրեկտորներ, վարձակալներ, ագրոարդյունաբերական համալիրի գիտնականներ և այլ աշխատողներ:

Պլենումի մասնակիցներին հնարավորություն էր ընձեռվել նախապես ծանոթանալ կուսակցության ագրարային քաղաքականության հարցերի վերաբերյալ փաստաթղթերի նախագծերին, որոնք ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն պատրաստել է՝ ելնելով ՍՄԿԿ XXVII համագումարի և XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի հիմնադրույթներից:

Մտքերի փոխանակությանը հանդես եկան՝ ՍՄԿԿ Իրկուտսկի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Պոտապովը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ե. Ե. Սոկոլովը, Ուկրաինական ՍՍՀ Կիրովի անվան կոլտնտեսության նախագահ Դ. Կ. Մոտոռնին, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա.—Մ. Կ. Բրազաուսկասը, ՍՄԿԿ Մոսկվայի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Կ. Մեսյացը, Վ. Ի. Լենինի անվան գյուղատնտեսական գիտությունների համամիութենական ակադեմիայի ակադեմիկոս, Ուկրաինական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի տնտեսագիտության գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր Ի. Ի. Լուկինովը, Ղազախական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ա. Նազարբաևը, ՍՄԿԿ Տուլայի մարզկոմի առաջին քարտուղար Յու. Ի. Լիտվինցևը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, ՍՍՀՄ պետագրոարդի նախագահ Վ. Ս. Մուրախովսկին, ՍՍՀՄ առողջապահության մինիստր Ե. Ի. Չազովը, ՍՄԿԿ Չիտայի մարզկոմի առաջին քարտուղար Ն. Ի. Մալկովը, Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ռ. Ն. Նիշանովը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Ա. Վ. Վլասովը, ՍՄԿԿ Ստավրոպոլի երկրկոմի առաջին քարտուղար Ի. Ս. Բոլդիրևը, Տաջիկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Մախկամովը, Ղազախական ՍՍՀ Ամանգելդու անվան սովխոզի մեխանիզատոր Ն. Վ. Գելերտը, «Օկտյաբր» ամսագրի գլխավոր խմբագիր Ա. Ա. Անանևը, Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Վյալյասը, ՍՄԿԿ Ալթայի երկրկոմի առաջին քարտուղար Ֆ. Վ. Պոպովը, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Ի. Գ. Գրինցովը, Ռոստովի մարզի «Լենինի ուղի» կոլտնտեսության մեխանիզատոր, վարպետ-դաստիարակ Ն. Վ. Պերևերզևան, ՍՍՀՄ հանքային պարարտանյութերի արտադրության մինիստր Ն. Մ. Օլշանսկին, կոլտնտեսությունների միութենական խորհրդի նախագահ, Մոսկվայի մարզի Վլադիմիր Իլյիչի անվան կոլտնտեսության նախագահ Ի. Ի. Կուխարը, Վ. Ի. Լենինի անվան գյուղատնտեսական գիտությունների համամիութենական ակադեմիայի պրեզիդենտ Ա. Ա. Նիկոնովը:

Վերջում ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց ծավալուն որոշում:

Պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի անդամներ՝ Մոսկվայի Վլադիմիր Իլյիչի անվան էլեկտրամեխանիկական գործարանի ներտաշող խառատ Վ. Պ. Տիխոմիրովը, Խարկովի «Մալիշևի անվան գործարան» արտադրական միավորման խառատ Վ. Ա. Պետրովը, «Մոսշին» նախագծաշինարարական միավորման կոմպլեքսային բրիգադի բրիգադավար Վ. Ա. Չատվորնիցկին, «Լենինգրադի մետաղեղենի գործարան» տուրբինաշինության արտադրական միավորման հավաքող փականագործների բրիգադավար Վ. Ս. Չիչերովը, Կոստրոմայի Վ. Ի. Լենինի անվան վուշեղենի կոմբինատի ջուլհակուհի Վ. Ն. Պլետնյովան, ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու, Լենինգրադի մարզի «Դետսկոյե սելո» սովխոզի բանջարաբույծ բրիգադավար Վ. Ռ. Պարշինան, ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամ, Քիշնևի «Զորիլե» կոշկեղենի արտադրական միավորման ձևարարուհի Վ. Ս. Օդոբեսկուն և ուրիշ ընկերներ առաջարկություն արեցին քննարկել և գնահատական տալ ՍՄԿԿ Կենտկոմի անդամ Բ. Ն. Ելցինի որոշ ելույթների, որոնք իրենց կարծիքով հակասում են Կենտկոմի քաղաքական դիրքորոշումներին, կուսակցական էթիկային և ՍՄԿԿ-ի կանոնադրական նորմերին:

Պլենումն անհրաժեշտ համարեց ՍՄԿԿ Կենտկոմի անդամներից կազմված հանձնաժողովին հանձնարարել ուշի-ուշով ուսումնասիրել տվյալ հարցը և իր հետևությունները հաղորդել ՍՄԿԿ Կենտկոմի հերթական պլենումին:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

---

# ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ՍՄԿԿ-Ի ԱԳՐԱՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

### ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1989 թվականի մարտի 15-ին

Ընկերներ:

Կուսակցության Կենտկոմի սույն պլենումի հետ մեր հասարակության մեջ մեծ ակնկալիքներ են կապվում: Պլենումը պետք է մշակի և ժողովրդին առաջարկի այնպիսի ագրարային քաղաքականություն, որի իրագործումը կարողանա գյուղացուն վերածնել որպես հողի տնտեսատիրոջ, հուսալիորեն լուծել պարենային պրոբլեմը: Այս գործում հետագա դանդաղումը պարզապես անթույլատրելի է: Նման հարցադրումը թելադրվում է երկրում ստեղծված ռեալ իրավիճակով, վերակառուցման ընդհանուր խնդիրներով:

Մեզ հարկավոր է այնպիսի ագրարային քաղաքականություն, որը գյուղի զարգացման մեջ ապահովի արմատական վերափոխումներ՝ քաղաքական, տնտեսական, սոցիալական, մշակութային, ապահովի մեր հասարակության կենսագործունեության հիմնական ոլորտներից մեկում կուտակված պրոբլեմների լուծումը ամենակարճ ժամկետներում, ինչը ասպարեզ կբացի գյուղի աշխատավորների նախաձեռնության համար:

## I

Երբ մենք խոսում ենք ագրարային քաղաքականության մասին, ապա նկատի ունենք քաղաքի ու գյուղի միջև և հենց գյուղում հարաբերությունների ձևավորման ու կարգավորման գաղափարների, նպատակների, միջոցների և մեթոդների ամբողջությունը, իսկ գլխավորը՝ պարենային հարցի առաջնահերթ լուծումը:

Ագրարային վերափոխումները անբաժանելի են այժմ իրագործվող քաղաքական ու տնտեսական ռեֆորմներից, որոնց կենտրոնում են մարդու բազմազան պահանջմունքների բավարարումը, նրա աշխատանքային և սոցիալական ակտիվության բացահայտումը: Առանց մեր հասարակության կյանքի հեղափոխական նորացման, առանց դեմոկրատացման, առանց տնտեսավարման նոր գաղափարախոսության անկարելի է մեր էկոնոմիկայի բարձր արդյունավետ ագրարային հատվածի ստեղծումը: Միշտ նույն կերպ գյուղում արմատական փոփոխությունները պարտադիր պայման են երկրի տնտեսական ու սոցիալական առաջադիմության համար:

Այլ խոսքով՝ ժամանակակից ագրարային քաղաքականությունն ինչ-որ խիստ առանձնահատուկ, գերատեսչական-ճյուղային բան չէ: Ոչ, այսօր դա մեր ամբողջ քաղաքական կուրսի առաջատար ուղղությունն է, հեղափոխական վերակառուցման օրգանական մասը:

Արդի ագրարային քաղաքականության մշակումը վերջին հաշվով անբաժանելի է ամբողջությամբ վերցված սոցիալիզմի վերաբերյալ և նրա սոցիալ-տնտեսական հետանկարների վերաբերյալ նոր պատկերացումների ձևավորումից:

Ինչպես հայտնի է, պլենումի նախապատրաստությունը սկսվել էր վաղուց: Ագրարային պրոբլեմները լայնորեն ու համակողմանիորեն քննարկվում են կուսակցության մեջ, գիտական շրջաններում, մասնագետների կողմից: Դե, ինչ ասել կուզի, ընկերներ, այդ կենսական հարցերը քննարկում է բովանդակ երկիրը:

Քաղբյուրոն ոչ միայն ուշի-ուշով հետևում էր բոլորիս էլ շատ հարկավոր այդ դիսկուսիային, այլև ամեն կերպ խթանում, ձգտում էր ստեղծել ստեղծագործական, գործարար մոտեցման մթնոլորտ, որպեսզի առավելագույն չափով խորամուխ լինեինք մեր լուծելիք բարդ պրոբլեմներին: Վերլուծության է ենթարկվել հսկայական նյութ, որն ընդգրկում է բազմազան դատողություններ, առաջարկություններ, տեսակետներ՝ երբեմն նաև ուղղակի հակադիր:

Ես կարծում եմ, ճիշտ կլինի ասել, որ այս պլենումում տրվող զեկուցումը և համապատասխան փաստաթղթերի նախագծերը, որոնք ձեզ բաժանված են, համակուսակցական, համաժողովրդական քննարկման յուրօրինակ արգասիքն են:

Մենք հույս ունենք, որ Կենտկոմի այս պլենումում խորությամբ, կոնստրուկտիվորեն կքննարկվեն տեսական, քաղաքական ու գործնական հարցերը, այն հաշվով, որ մշակվի հասարակության հարաճուն պահանջմունքներին համապատասխանող, գիտականորեն հիմնավորված երկարաժամկետ ագրարային քաղաքականություն:

Մենք բոլորս հիշում ենք, թե XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի պատվիրակներն ինչպիսի շահագրգռությամբ էին խոսում երկրում պարենի մատակարարման վիճակի մասին: Այն ժամանակ մենք այդ պրոբլեմն անվանեցինք հասարակության կյանքի ամենացավագին կետը: Այդ առթիվ մեծ մտահոգություն էր արտահայտվում վերջերս կայացած հաշվետու-ընտրական կուսակցական ժողովներում և կոնֆերանսներում: Այդ հարցերը աշխատավորները սրությամբ բարձրացնում են նաև հիմա՝ ընտրական կամպանիայի ընթացքում:

Իրականությունն այնպիսին է, որ գյուղատնտեսության արտադրանքը մեզ չի բավականացնում: Պետությունն ստիպված է արտասահմանից գնել խոշոր քանակություններով հացահատիկ, միս, միրգ, բանջարեղեն, շաքար, ձեթ և որոշ այլ մթերքներ:

Մենք զարգացած երկրներին՝ թե՛ մեծ և թե՛ փոքր, առաջվա պես զիջում ենք և՛ աշխատանքի արտադրողականությամբ, և՛ դաշտերի բերքատվությամբ, և անասունների մթերատվությամբ, և՛ սննդամթերքի բազմազանությամբ ու որակով: Խզումը ոչ թե կրճատվում է, այլ մեծանում:

Պարենամթերքի դեֆիցիտը ստեղծում է սոցիալական լարվածություն, հարուցում է մարդկանց ոչ թե սոսկ կշտամբանքը, այլ արդեն դժգոհությունը: Պարենավորման հետ կապված նման վիճակը մնում է երկար տարիներ:

Չի կարելի կարծել, թե մենք առաջներում այս հարցերը չէինք տեսնում և դրանցով չէինք զբաղվում: Ես նույնիսկ այսպես կասեի. ժողովրդական տնտեսության մեջ չկա մի պրոբլեմ, որով Կենտրոնական կոմիտեն ու կառավարությունն ավելի շատ զբաղված լինեն, քան ագրարային պրոբլեմն է:

Վերջին երկու տասնամյակներում ագրարային հատվածը ստացել է շատ ռեսուրսներ՝ և՛ կապիտալ ներդրումներ, և՛ տեխնիկա, և՛ հանքային պարարտանյութեր: Իրագործվել է հողերի մելիորացման մի խոշոր ծրագիր: Սակայն ձեռնարկված միջոցառումներից մեր ակնկալած հատույցը, մեր սպասած հավելաճը մենք չստացանք:

Մենք մինչև օրս այդպես էլ չենք կարողացել արմատապես լուծել պարենային հարցը: Եվ սա մի երկրում, որն ունի այսպիսի հսկայական հնարավորություններ:

Մեզանում վիճակը խիստ աննպաստ է հողային ֆոնդի՝ մեր գլխավոր ազգային հարստության, պահպանման ու ռացիոնալ օգտագործման հարցում: Վերջին 25 տարում կորսվել է 22 միլիոն հեկտար արդեն յուրացված վարելահող, որից շուրջ 12 միլիոն հեկտարը օգտագործվել է արդյունաբերական շինարարության ու ճանապարհների համար, իսկ ավելի քան 6 միլիոն հեկտարը լքվել է և պատվել թփուտներով: Միաժամանակ վիթխարի միջոցներ են ծախսվել միլիոնավոր հեկտարներով նոր հողատարածություններ յուրացնելու համար:

Դաշտերի արգավանդությունը ռեգիոնների մեծ մասում նվազում է: Ավելի քան երեք միլիոն հեկտար ոռոգելի հողահանդակ, որը «ոսկե ֆոնդ» կլիներ յուրաքանչյուր պետության մեջ, անտնտեսվարության պատճառով փաստորեն դուրս է եկել շրջանառությունից: Սրան պետք է ավելացնել, որ վերջին երկու տասնամյակում հիդրոկայանների շինարարության լավ չմտածված նախագծերի իրագործման հետևանքով երկիրը զրկվել է ավելի քան 10 միլիոն հեկտար ողողվող մարգագետիններից և արոտավայրերից:

Տագնապ են հարուցում գյուղատնտեսական մթերքների հսկայական կորուստները: Անտնտեսվարությունը տանում է գյուղում արտադրվող ամբողջ մթերաքանակի մինչև 20 տոկոսը, իսկ որոշ մթերքների՝ 30—40 տոկոսը:

Սոցիալական ու մշակութային զարգացմամբ գյուղը լրջորեն հետ է մնացել քաղաքից: Լավ ճանապարհների բացակայությունը պրոբլեմ է բոլոր ռեգիոնների համար, իսկ ոչ սևահողային գոտու համար դա պարզապես աղետ է: Ոչ մի քննադատության չի դիմանում գյուղի ապահովվածությունը ժամանակակից բարեկարգ տներով, կոմունալ սպասարկումներով, դպրոցներով, բժշկական, մշակութային հիմնարկներով: Հաճախ ամենակենսական հարցերը լուծելու՝ բժշկական օգնություն ստանալու, տարրական կենցաղային սպասարկումներից օգտվելու, պարզագույն ապրանքներ գնելու համար մարդը պետք է տասնյակ, իսկ երբեմն էլ հարյուրավոր կիլոմետրերով ճանապարհ կտրի:

Կրքեր չեմ բորբոքի, բայց այնուամենայնիվ ասեմ՝ շատ ռեգիոններում դրությունն այնպիսին է, որ մարդիկ պարզապես թողնում են հողը, հեռանում են գյուղից: Գյուղական բնակչության միգրացիան երկրի մի շարք մարզերում տագնապալից աստիճանի է հասել:

Ի՞նչն է պատճառը: Ինչու՞ մեր բոլոր միջոցառումները, իսկ դրանց թվում եղել են նաև շատ լուրջ միջոցառումներ, ցանկալի արդյունքներ չեն տվել, գյուղում չեն ապահովել հարկավոր վերափոխումները: Ահա այն գլխավոր հարցը, որին պետք է պատասխան տրվի: Մենք պետք է խորամուխ լինենք էությանը, պարզենք մեր գյուղում, երկրի պարենավորման ասպարեզում ներկայումս գոյություն ունեցող շատ սուր իրավիճակի արմատները և գտնենք դրա լուծման ուղիները:

Դրա համար օգտակար է դիմել պատմությանը, քննության առնել մեր հասարակության զարգացման տարբեր փուլերում ագրարային քաղաքականության նկատմամբ եղած մոտեցումները, դասեր առնել մեր աշխատանքի համար:

## II

Գյուղացիական հարցը միշտ էլ կենտրոնական տեղ է գրավել մեր կուսակցության քաղաքականության մեջ՝ թե՛ հեղափոխության տեսության տեսակետից և թե՛ նոր հասարակության կառուցման խնդիրների տեսակետից:

Կուսակցության մշակած ագրարային քաղաքականությունը, գյուղում բոլշևիկների պրակտիկ գործունեությունը ապահովեցին, որ գյուղացիական զանգվածները 1917 թվականին անցան հեղափոխության կողմը, բանվոր դասակարգի կողմը: Այդ քաղաքականության արտահայտությունը եղավ սովետական իշխանության առաջին դեկրետներից մեկը՝ հողի դեկրետը, որով աշխատավոր գյուղացիության լայն խավերի դիրքերից էր լուծվում հողային հարցը:

Նույնիսկ քաղաքացիական պատերազմի ծանր տարիներին, այդ պատերազմի ամենալարված պահերին կուսակցությունը տեսադաշտից չէր կորցնում գյուղում տիրող իրավիճակը, գյուղացիության հետ բանվոր դասակարգի դաշինքի պրոբլեմը:

Հենց այդ դաշինքի, հեղափոխության նվաճումների պահպանման շահերը թելադրեցին անցնել նոր տնտեսական քաղաքականության:

Նէպ-ի տարիներին կուսակցության ագրարային քաղաքականությունը ներառում էր պարենմասնատրման փոխարինում պարենհարկով (որը հստակորեն սահմանափակում էր գյուղացիական տնտեսություններից մթերքների առգրավման չափերը), ազատ առևտրի թույլտվություն, կոոպերատիվ շարժման լայն զարգացում, հողի վարձակալման և որոշակի չափերով վարձու աշխատանքի կիրառման թույլտվություն, գների, հարկերի, վարկի միջոցով տնտեսական գործունեության պետական կարգավորում, կոնտրակտացիայի համակարգի զարգացում, քաղաքի և գյուղի համարժեք փոխանակության աստիճանական հաստատում, գյուղատնտեսության՝ որպես ժողովրդի կենսամակարդակի վերելքի և երկրի ինդուստրացման անհրաժեշտ պայմանի առաջնահերթ վերականգնումն ու զարգացումը:

Նոր տնտեսական քաղաքականությունը տրամաբանորեն բխում էր հեղափոխական պրոցեսի օբյեկտիվ ընթացքից, կշռադատվել էր «լրջորեն և երկար ժամանակի համար», հենվում էր ներքևից եկող նախաձեռնության վրա, կառուցվում էր դեմոկրատիայի, տնտհաշվարկի, կոոպերացիայի ձևերի բազմազանության հիման

վրա: Դա գյուղացիության համար մատչելի և առավել հասկանալի ուղին էր դեպի սոցիալիզմ:

Եվ արդյունքները չուշացան: Արդեն 1925 թվականին շատ ցուցանիշների գծով վերականգնվեց առաջին համաշխարհային պատերազմից առաջ ձեռք բերված արտադրության մակարդակը:

1927 թվականին երկրում կային տասնյակ հազարավոր գյուղատնտեսական ընկերություններ և կոոպերատիվներ, այդ թվում 6,3 հազար հողի համատեղ մշակման ընկերություն, 8,5 հազար արտել և կոմունա:

Գյուղացիները միավորվում էին սպառողական ընկերությունների մեջ: Սպառկոոպերացիան հանդես էր գալիս որպես կարևոր առևտրական միջնորդ արտադրող գյուղացու և սպառող քաղաքացու միջև: 1926—1927 թվականներին սպառողական կոոպերացիայով էր անցնում մանրածախ ապրանքաշրջանառության ամբողջ ծավալի կեսից ավելին, նրան բաժին էր ընկնում հացի, մսի, ձվի, վուշի մանրաթելի և շատ ուրիշ արտադրատեսակների մթերումների զգալի մասը:

20-ական թվականների երկրորդ կեսին զգալի զարգացում ստացավ կոնտրակտացիան՝ գյուղացիական տնտեսությունների հետ պետական և կոոպերատիվ կազմակերպությունների պայմանագրերի համակարգը, որը ներառում էր արտադրության միջոցների մատակարարումների և ագրոտեխնիկական օգնություն ցույց տալու պարտավորություններ: Դա, ինքնըստինքյան մեծ քայլ էր տնտեսական հարաբերությունների զարգացման մեջ, քանի որ սահմանափակում էր շուկայական տարերայնությունը, նշում գյուղատնտեսական մթերքների արտադրության, վերամշակման և իրացման վրա պլանային ներգործության մեխանիզմի ուրվագծերը:

Ամբողջությամբ վերցրած նոր տնտեսական քաղաքականության իրականացումը հաստատեց Վ. Ի. Լենինի առաջ քաշած տնտեսավարման սկզբունքների ու մեթոդների ճշտությունը, կոոպերացիայի, գյուղացիության հետ ապրանքաշրջանառության՝ որպես «սոցիալիզմի տնտեսական բազայի», դերի նրա գնահատականը:

20-ական թվականների երկրորդ կեսին նոր տնտեսական քաղաքականությունը բախվեց մի շարք դժվարությունների և հակասությունների, որոնք ժողովրդական տնտեսության ծանր վիճակի հետևանքն էին: Թույլ արդյունաբերությունը չէր կարող գյուղացիներին տալ բավարար քանակությամբ անհրաժեշտ ապրանքներ: Դրա հետևանքով գյուղատնտեսության զարգացումն ավելի ու ավելի էր դեմ առնում նյութատեխնիկական բազայի սահմանափակ հնարավորություններին: Այդ վիճակի մասին են վկայում մասնավորապես հետևյալ թվերը. 1928 թվականին գարնանացան մշակաբույսերի ցանքատարածությունների ավելի քան 70 տոկոսը ցանվել է ձեռքով, բոլոր հացաբույսերի մոտ 45 տոկոսը հավաքվել է մանգաղով ու գերանդիով, ամբողջ բերքի ավելի քան 40 տոկոսը կալսվել է շղթաներով և տափաններով:

Այդպիսի նյութատեխնիկական բազայի պայմաններում շուկայական հարաբերությունների ազդեցությունը սկսեց թուլանալ. գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի տեմպերը դանդաղեցին: Մինչդեռ ինդուստրացման պլանների իրականացման նպատակով ծավալված մասշտաբային աշխատանքը պահանջում էր ավելի ու ավելի շատ նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսներ: Քաղաքային բնակչությունն ավելանում էր տարեկան մոտավորապես չորս տոկոսով: Արագորեն աճում էին աշխատավորների դրամական եկամուտները և նրանց վճարունակ պահանջարկը, քաղաքներում սկսեցին չբավականացնել հացը և մյուս մթերքները: Հարկ եղավ սահմանել քարտեր:

Երկրում նշմարվում էր ճգնաժամային իրավիճակ: Ամբողջ սրությամբ ծառացան հետագա զարգացման ուղիների, ինդուստրացման բախտի, պարենային պրոբլեմի լուծման հարցերը: Դրանք ստացան առանձնահատուկ քաղաքական գունավորում և, ես կասեի, արտակարգ բնույթ:

Այս ամենը արծարծում էր արմատական հարցը՝ գյուղացիության հետ բանվոր դասակարգի դաշինքի, գյուղացիության հանդեպ վերաբերմունքի հարցը: Մեր պատմության այդ շատ պատասխանատու հատվածում երկրի ղեկավարությունը գնաց ոչ թե պրոբլեմների ու հակասությունների լուծման տնտեսագիտական մեթոդների որոնման, լենինյան սկզբունքների, նէպ-ի փորձի բազայի վրա փոփոխված պայմաններին համապատասխան տնտեսական քաղաքականության մշակման ուղիով, այլ ուրիշ, ճիշտ հակադիր ուղիով՝ նէպ-ի ապրանքադրամական հարաբերությունների սահմանափակման, աշխատանքի նյութական խթանների անտեսման, սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման նկատմամբ վարչահրամայական մեթոդների կիրառման ուղիով:



Գյուղացիության նկատմամբ Ստալինը և նրա մերձավորագույն շրջապատը փաստորեն իրականացնում էին իրենց իսկ քննադատած տրոցկիստական-պրեոբրաժենսկիական կոնցեպցիան. միջոցները գյուղատնտեսությունից արդյունաբերություն փաստորեն անհատույց արտամղման հաշվին «նախասկզբնական սոցիալիստական կուտակման» վերաբերյալ: Իրականում գործադրվեց նաև Զինովևի-Կամենևի գաղափարը գյուղի ունևոր խավերի արտակարգ հարկման վերաբերյալ:

Այդ բոլոր գործողությունների առաջացրած գյուղացիների բնական դժգոհությունը մեկնաբանվեց որպես յուրօրինակ սաբոտաժ: Եվ դրանով արդարացվում էր պատժիչ միջոցներ կիրառելու անհրաժեշտությունը:

Վերջին հաշվով նման մոտեցումը դարձավ ստրատեգիական լուրջ սխալ, ագրարային-գյուղացիական հարցի լուծման ուղիների մասին մարքսիստական հայացքներից ու պատկերացումներից կատարված նահանջ:

Այստեղ կարելի էր հիշեցնել, որ մարքսիզմի հիմնադիրները վճռականորեն մերժում էին գյուղացիական տնտեսության սեփականազրկման գաղափարը, այն համարում խիստ հետադիմական և կործանարար սոցիալիստական վերափոխումների համար: Դեռ 1894 թվականին Ֆ. Էնգելսը գրում էր. «... պետական իշխանություն ունենալով՝ մենք չենք էլ մտածի մանր գյուղացիներին բռնի կերպով սեփականազրկելու մասին... Մեր խնդիրը մանր գյուղացիների նկատմամբ նախ և առաջ այն է, որ նրանց մասնավոր արտադրությունը, նրանց սեփականությունը դառնա ընկերական, բայց ոչ թե բռնի ուժով, այլ օրինակի միջոցով, այդ նպատակով հասարակական օգնություն առաջարկելով... այս իմաստով մենք ուրեմն կարող ենք անչափ լիբերալ լինել գյուղացիների նկատմամբ»:

Ըստ Վ. Ի. Լենինի մտահղացման, կոոպերացման համար «կպահանջվի մի ամբողջ պատմական դարաշրջան»: Դա նկատի ունենալով, Վ. Ի. Լենինը ձևակերպեց գյուղացիական տնտեսությունների սոցիալիստական վերափոխումների այնպիսի հիմնարար սկզբունքներ, ինչպիսիք են կամավորությունն ու աստիճանականությունը, կոլեկտիվ գյուղատնտեսական արտադրությանն անցնելիս գյուղացիների նկատմամբ հարկադրման որևէ միջոցի անթույլատրելիությունը, ամբողջ հասարակության շահերի հետ զուգորդված նրանց շահերի հաշվառումը, կոոպերացիայի բազմապիսի ձևերի լայն օգտագործումը պետության կողմից դրան ցույց տրվող նյութատեխնիկական օգնության պայմաններում: Այս հիմքերի վրա ձևավորվեցին բոլշևիկյան կուսակցության ագրարային ծրագիրն ու քաղաքականությունը:

Խոսելով գյուղացիության նկատմամբ եղած վարչահրամայական մոտեցումների մասին, պետք է խոստովանել, որ դրանց առավել այլանդակ դրսևորումը եղան գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացման բռնի մեթոդներն ու արագացված տեմպերը, արտադրության, փոխանակման և բաշխման պրոցեսներին ցույց տրված վոլյունտարիստական միջամտությունը:

Ագրարային հատվածում վերածնվեցին «ռազմական կոմունիզմի» ժամանակների արտատնտեսական հարկադրանքի մեթոդները: Հողի տերը լինելու մարդու ձգտումը, որը օրենսդրական կերպով ճանաչվել էր դեռ հողի մասին դեկրետով, հայտարարվեց մասնավոր սեփականատիրական վերապրուկ: Հողի վրա տնտեսավարելու եղանակների ամբողջ բազմազանությունը փաստորեն հանգեցվեց մեկ ձևի: Բացառվում էր կոլտնտեսությունների և սովխոզների ամեն տեսակ տնտեսական ինքնուրույնություն, որոնց աշխատավորները դրվեցին օրավարձու բանվորների վիճակի մեջ:

Դեմոկրատական հաստատությունները կրճատվեցին. վերացվեցին կոլտնտեսային կենտրոնը և կոլտնտեսային միությունները, կոոպերացիայի շատ ձևեր. կոլտնտեսությունների, սովխոզների, գյուղացիության գլխին կախվեց բյուրոկրատական ապարատի ճյուղավորված համակարգը:

Դրա հետևանքով գյուղատնտեսությանը վիթխարի վնաս հասցվեց: Կտրուկ նվազեցին անասունների գլխաքանակը, գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, վատթարացավ քաղաքների մատակարարումը, գյուղերում նվազեց սպառումը: 1932—1933 թվականներին այդ պատճառներով, ինչպես նաև երաշտի հետևանքով մի շարք վայրերում նույնիսկ սով բռնկեց: Ապրանքադրամական փոխանակման քայքայման հետ մեկտեղ լրջորեն խախտվեց ամբողջ էկոնոմիկայի կանոնավոր գործունեությունը: Կոլեկտիվացման սկզբներին ձեռք բերված գյուղատնտեսական արտադրության մակարդակը նախապատերազմյան տարիներին հաջողվեց գերազանցել միայն երկու անգամ՝ 1937 և 1940 թվականներին:

Գնահատելով այն տարիների իրադարձությունները, մենք պարտավոր ենք խոսել նաև մարդկային ողբերգության մասին: Դրա պատճառը այն է, որ կուլակի դեմ պայքարելիս փաստորեն բռնություն կիրառեցին միջակ գյուղացիների և նույնիսկ չքավորների վիթխարի զանգվածի նկատմամբ: Միլիոնավոր գյուղացիներ ընտանիքներով կտրվեցին հողից, հարազատ վայրերից, չքավորության էին մատնվել և զոհվում էին ճամբարներում ու աքսորում:

Ագրարային ոլորտում լենինյան կուրսից կատարված կոպտագույն նահանջները վերածվեցին սոցիալական, տնտեսական և բարոյական բնույթի մեծ վնասների:

Գյուղացիության հետ ապրանքափոխանակման և փոխադարձ օգուտի վրա հիմնված հարաբերությունների փոխարինումը թելադրանքի հարաբերություններով ոչ միայն նշանակում էր ագրարային քաղաքականության շրջադարձ, այլև հանգեցրեց երկրում սկզբունքորեն նոր քաղաքական ու սոցիալական իրադրության ստեղծման: Արդյունաբերության տնտեսավարման վոլյունտարիստական մեթոդների հետ զուգակցվելով փաստորեն կառավարման վարչահրամայական համակարգ ձևավորվեց ամբողջ հասարակության մեջ:

Այն ժամանակվա յուրահատուկ ներքին և արտաքին գործոնների հետևանքով ստեղծված կոնկրետ պատմական իրադրության մեջ գերակշռեցին այն ուժերը, որոնք անտեսում էին հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքները, ձգտում էին նոր հասարակության կառուցման «ռազմակոմունիստական» մեթոդների:

Մասսաների մեջ արմատավորվում էր սոցիալիզմի մասին պարզունակ պատկերացումը, պնդում էին, թե դրա կառուցումը կարճ ժամանակ կպահանջի, թե դա ամենաշատը երկու-երեք հնգամյակի գործ է: Նման հայացքների հիման վրա էր կառուցվում նաև արագացված ինդուստրացման, ամբողջ գյուղացիությունը շուտափույթ կերպով պրոլետարական ձևով վերափոխելու, մանր ապրանքային գյուղատնտեսությունը արդյունաբերական տիպի խոշոր ֆաբրիկաների հատուկ շարքի վերածելու քաղաքական գիծը:

Հավաստելով կոլեկտիվացման նկատմամբ եղած մոտեցումների սխալականությունը, այդուհանդերձ ուզում եմ ընդգծել, որ ճիշտ չէր լինի այդ հիման վրա ժխտել գյուղի սոցիալիստական վերափոխումների անհրաժեշտությունը, ինչպես որ անօրինաչափ կլիներ հետևություն անել կոլտնտեսային կարգերի անարդյունավետության մասին: Ոչ, կոլեկտիվ տնտեսության բնույթի մեջ հսկայական պոտենցիալ հնարավորություններ կան, որոնք բացահայտվում և հիանալի արդյունքներ են տալիս միայն տնտեսական ճիշտ հարաբերությունների դեպքում: Դրա հաստատումը մեր երկրի և սոցիալիզմի մյուս երկրների բազմահազար առաջավոր տնտեսությունների փորձն է:

Հետագա տարիներին կյանքը բազմիցս հարց առաջադրեց կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական գործունեության խիստ կանոնակարգման հետևանքով ստեղծված արգելակող գործոնները վերացնելու, ագրարային հատվածի կառավարման հրամայական մեթոդներից հրաժարվելու, գյուղացիության նկատմամբ լենինյան սկզբունքները վերականգնելու մասին: Բայց այն տարիներին դա այդպես էլ չարվեց:

Երկրի գյուղատնտեսությանը անչափ ուժեղ հարված հասցրեց պատերազմը: Գյուղի առանց այդ էլ ցածր մակարդակի վրա գտնվող արտադրողական ուժերը լրջորեն ջլատվեցին: Պատերազմից առաջ մեր երկիրը զգալի չափով մնում էր գյուղացիական:

Ուստի և, երբ մենք խոսում ենք Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի գործած սխրանքի մասին, պարտավոր ենք պատշաճը հատուցել ինչպես աշխատավոր գյուղացիությանը (բանակի, թիկունքի աշխատավորների պարենավորումը), այնպես էլ մարտական գյուղացիությանը: Գյուղացիների միլիոնավոր որդիներ ընկան մարտադաշտերում՝ պաշտպանելով հայրենիքը:

Հանուն անաչառության պետք է ասել, որ հետպատերազմյան տարիներին խոշոր միջոցներ ձեռնարկվեցին ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Մերձբալթիկայի պատերազմից ավերված շրջաններում գյուղատնտեսությունը վերականգնելու նպատակով: Բայց ագրարային նոր քաղաքականության մշակումը, որի կարիքն ուներ գյուղը, այդպես էլ չիրականացվեց: Ավելին, հրամայելու մեխանիզմները, գյուղից ռեսուրսներն արտամղելու եղանակները, գյուղի աշխատավորների կենսապայմանների նկատմամբ քամահրական վերաբերմունքը ոչ միայն չէին թուլանում, այլև ավելի ու ավելի նրբահնար էին դառնում:



Անհամարժեք փոխանակման հիման վրա գյուղից խլվում էին հսկայական միջոցներ: Այսպես, 1946—1953 թվականներին գյուղատնտեսության մեջ արտադրվեց 298 միլիարդ ռուբլու ազգային եկամուտ (հաշվի առնելով նրա այն մասը, որն իրացվեց նաև մյուս ճյուղերում), այնինչ այդ գումարից գյուղատնտեսության մեջ օգտագործվեց միայն 193 միլիարդ ռուբլի (հաշվի առնելով գյուղատնտեսության բաժինը համապետական ծախսերում): Դա նշանակում է, որ 105 միլիարդ ռուբլի գյուղից տարվել է էկոնոմիկայի այլ ոլորտներ:

Աշխատանքի համար կոլտնտեսականներին տրվող վարձահատուցումը ավելի շուտ սիմվոլիկ բնույթ էր կրում: Նրանք ստիպված էին ապրել հիմնականում անձնական օժանդակ տնտեսությունների հաշվին, որոնց վրա նաև անչափ մեծ հարկեր էին դրվում: Ամեն մի գյուղացիական ծուխ պետք է վճարեր հողի հարկ, ինչպես նաև պետությանը մատակարարեր սահմանված քանակությամբ միս, կաթ, ձու, բուրդ և այլ մթերքներ, հաճախ անկախ նրանից, կարող էր դա անել, թե ոչ: Երբեմն բանը հասնում էր լրիվ անհեթեթության: Ինչպես հայտնի է, նույնիսկ հնարվել էր հարկ ամեն մի մրգատու ծառի համար, անկախ նրանից, ծառը բերք տալիս էր, թե ոչ:

Կոլտնտեսականների նկատմամբ քամահրական վերաբերմունքը դրսևորվեց նաև նրանով, որ նրանց կենսաթոշակային ապահովություն չէր հասնում: Նրանք չունեին անձնագրեր և չէին կարող գյուղից հեռանալ առանց թույլտվության:

1953 թվականից հետո ձեռնարկվեցին գյուղատնտեսության ամրապնդման նպատակին ուղղված բավական խոշոր տնտեսական, քաղաքական, կազմակերպական միջոցներ: ՍՄԿԿ Կենտկոմի 1953 թվականի սեպտեմբերյան պլենումի որոշումներին համապատասխան մտցվեցին գյուղատնտեսական արտադրանքի ավելի հիմնավորված գնման գներ, հռչակվեց ներքևից պլանավորման սկզբունքը, կարգավորվեց հարկային քաղաքականությունը: Մեծացավ գյուղի աշխատավորների նյութական շահագրգռությունը, սկսեցին մտցվել կենսաթոշակներ, վերացվեցին անձնագրային ռեժիմի սահմանափակումները: Կոլտնտեսություններն իրավունք ստացան փոփոխություններ մտցնելու իրենց կանոնադրությունների մեջ՝ հաշվի առնելով տեղական պայմանները: Իրացվեց 42 միլիոն հեկտար խամ ու խոպան հողերի յուրացման խոշոր ծրագիրը:

Այդ միջոցառումները սկսեցին հատույց տալ: Գյուղատնտեսությունը սկսեց առաջ շարժվել բավական արագ տեմպերով: Ընդհանուր առմամբ 1953 թվականից հետո անցած հինգ տարում նախորդ հնգամյակի համեմատությամբ գյուղատնտեսական արտադրության հավելաճը կազմեց 34 տոկոս: Ուժեղացավ ինտենսիվ գործոնների ազդեցությունը տնտեսավարման արդյունքների վրա:

Սկսվեց կոլտնտեսությունների էկոնոմիկայի առողջացման պրոցես: 1957 թվականին նրանց դրամական եկամուտները 1952 թվականի համեմատությամբ կոլտնտեսային ծխի հաշվով ավելացան 2,3 անգամ, իսկ աշխօրի դիմաց վճարվող փողը՝ 3 անգամ: Երկրի զարգացման նոր փուլին համապատասխանող ագրարային քաղաքականության մշակումը և իրացումը ընթանում էին պահպանողական ուժերի դեմ գաղափարաքաղաքական սուր պայքարում: Եվ այնուամենայնիվ իսկապես խոշոր առաջընթաց քայլեր արվեցին:

Բայց շուտով դարձյալ սկսեցին չարդարացված միջամտությունը կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեությանը, կենտրոնից զանազան ցուցումների պարտադրումը նրանց, մտացածին վերակազմումները:

Գյուղատնտեսության մեջ իրացնող շինանյութերի և մյուս արտադրամիջոցների սիստեմատիկ թանկացումը, կոլտնտեսությունների մեքենատրակտորային կայանների տեխնիկայի բարձր գներով վաճառքը բացասաբար անդրադարձան կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի վիճակի վրա, խափանեցին ընդլայնված վերարտադրության պրոցեսը, նորից հանգեցրին անհամարժեք փոխանակման:

Հենց այդ ժամանակաշրջանում սկսեց կենսագործվել անձնական օժանդակ տնտեսության վերացման ըստ էության ձախարարական կոնցեպցիան, տնտեսություն, որի առկայությունն իբր արգելակել է գյուղում սոցիալիստական հարաբերությունների հաստատումը: Ակտիվանում էր նաև այսպես կոչված անհեռանկար գյուղերը վերացնելու քաղաքականությունը:

Իսկ այդ ամենը վերջին հաշվով հանգեցրեց գյուղատնտեսական արտադրության աճի տեմպերի անկման, հացահատիկի պրոբլեմի շեշտակի սրման, պարենային մատակարարման վատացման:

Արդյունավետ ագրարային քաղաքականություն մշակելու մի նոր փորձ արվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումում: Դրա որոշումներին համա-

պատասխան միջոցառումներ իրականացվեցին ազգային եկամուտը գյուղատնտեսության օգտին վերաբաշխելու և գյուղի սոցիալական պրոբլեմները ավելի լայնորեն լուծելու, ագրարային հատվածի զարգացման, կոլտնտեսային-սովխոզային արտադրության ինտենսիվացման համար տնտեսագիտական մեթոդներ օգտագործելու նպատակով: Բարձրացվեցին գյուղատնտեսական արտադրանքի գնման գները:

Այս միջոցառումները պաշտպանություն գտան գյուղացիության կողմից, աշխուժացրին գյուղի տնտեսական գործունեությունը: Ութերորդ հնգամյակը, ինչպես գիտեք, իր ցուցանիշներով բավական հաջող էր:

Սակայն մարտյան պլենումի որոշումներն էլ չկատարվեցին, իսկ պլենումի սահմանած կուրսը հետագայում լրջորեն ձևախեղվեց: Տնտեսավարման տնտեսական պայմանները խախտվեցին քաղաքի և գյուղի միջև անհամարժեք փոխանակման ուժեղացումով: Կոլտնտեսությունները և սովխոզները զրկվեցին անհրաժեշտ միջոցներ վաստակելու հնարավորությունից, ինչը բացասաբար անդրադարձավ նրանց տնտեսական վիճակի վրա: Դրա հետևանքով արդեն 1980 թվականին թե՛ կոլտնտեսությունները և թե՛ սովխոզները դարձան ընդհանուր առմամբ վնասակիր, թեև 1970 թվականին սովխոզային արտադրության ընդհանուր շահութաբերությունը կազմել էր 22 տոկոս, իսկ կոլտնտեսայինը՝ 34 տոկոս:

60-ական թվականների վերջին և 70-ական թվականների սկզբին փորձ արվեց գյուղատնտեսության ինտենսիվացման պրոբլեմները լուծել միջտնտեսային կոոպերացիայի լայն զարգացման, ագրոարդյունաբերական ձեռնարկությունների ու համալիրների ստեղծման միջոցով: Բայց այդ միջոցառումն էլ, որն ընդհանուր առմամբ սկզբունքորեն ճիշտ էր, ձեռնարկված էր ռեալ դրությունից կտրված: Գյուղին հատկացվող միջոցների զգալի մասը ծախսվում էր թանկարժեք օբյեկտների շինարարության համար, «պատեր շինելու» վրա էր գնում, փոխանակ օգտագործելու հողերի բերրիության բարձրացման, արտադրության մեքենայացման, գյուղի սոցիալական վերակառուցման համար: Վերջին հաշվով ծախսումները հաճախ ոչ թե տնտեսական օգուտ էին տալիս, ինչը ակնկալում էին, այլ մեծ կորուստներ:

Բուն ագրարային հատվածում չկարգավորված տնտեսական հարաբերությունները, տնտեսավարման հին մեթոդների պահպանումը, աշխատանքի կազմակերպման և վարձատրության գործում թույլ տրված մեծ վրիպումները լրջորեն թուլացրին նյութական խթանների ազդեցությունը գյուղի աշխատավորի վրա: Այդ իրավիճակում գյուղացիների աշխատանքի նույնիսկ երաշխավորված վարձատրությունը, որն ինքնին այն ժամանակվա կարևոր սոցիալական նվաճում էր, հանգեցրեց խնամառուականության աճի, քանի որ չէր շաղկապվում արտադրության վերջնական արդյունքների հետ: Գյուղի սոցիալական զարգացման հետ մնալը ուժեղացրեց միգրացիոն պրոցեսները:

Մի խոսքով, 80-ական թվականների սկզբին գյուղատնտեսությունը, ամբողջությամբ վերցված երկրի ագրարային համալիրը, ասենք նաև մեր ամբողջ էկոնոմիկան հայտնվեցին այնպիսի վիճակում, որ անհետաձգելի միջոցառումներ պահանջվեցին:

Այդ իրադրության մեջ որոշում ընդունվեց պարենային ծրագրի մշակման մասին, որը հաստատեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումը: Դրանով իսկ ինչ-որ կերպ հաջողվեց կանգնեցնել ճգնաժամային երևույթների ուժեղացումը և նույնիսկ որոշ չափով բարելավել գյուղատնտեսության վիճակը: Այդ առթիվ տվյալները ձեզ հայտնի են: Բայց մայիսյան պլենումի որոշումներն իրենց վրա նաև ժամանակի կնիքն էին կրում, փոխզիջումային, կիսատ-պռատ բնույթ ունեին:

Երկրի տնտեսական զարգացման հանգամանալի վերլուծությունը, որ արվեց Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում և դրան հաջորդած պլենումներում, XXVII համագումարում, XIX կուսկոնֆերանսում, երկրի պարենային համալիրի իրավիճակի քննադատական գնահատականն այսօր պահանջում են անդրադառնալ ագրարային պրոբլեմի ամբողջ կոմպլեքսի քննարկմանը:

Իսկ ի՞նչ գլխավոր դասեր են հետևում անցյալի պարզաբանումից ու գնահատումից: Ի՞նչ է անհրաժեշտ նախատեսել վերակառուցման ժամանակաշրջանի ագրարային քաղաքականությունը մշակելիս:

Մենք ամենից առաջ պետք է ընդհանուր հետևություն անենք: Դա սոցիալիստական հեղափոխական վերափոխումների լենինյան կոնցեպցիայի անանց նշանակության հավաստումն է և դրա ձևախեղումների անթույլատրելիության գիտակցումը:

Սոցիալիզմի գործին առավել մեծ վնասը հասցված է նրանով, որ մոռացու-



թյան էր մատնվել սոցիալիզմի՝ որպես մասսաների կենդանի ստեղծագործության մասին լենինյան հիմնարար միտքը: Նոր հասարակությունը կառուցվում է հանուն աշխատավորների շահերի և հենց աշխատավորների կողմից: Իսկ դա ենթադրում է ժողովրդի լայն մասնակցություն բոլոր վերափոխիչ պրոցեսներին, դեմոկրատիայի բազմակողմ զարգացում, ժողովրդապետության և ինքնակառավարման սկզբունքների հաստատում: Ոչ մի սոցիալական վերափոխություն, ինչպիսի վեհ լոզունգներով էլ որ քողարկվի, չի կարող իրականացվել մասսաների շահերին հակառակ և առանց նրանց անմիջական մասնակցության:

Լենինյան այս սկզբունքային դրույթները խոսքով ընդունվում էին, իսկ գործնականում անտեսվում, փոխարինվում վարչահրամայական մեթոդներով:

Դա հսկայական վնաս հասցրեց երկրի ամբողջ հասարակական զարգացմանը, զգալի չափով ձևախեղեց քաղաքական հաստատությունների գործունեությունը: Սոցիալիստական շինարարության լենինյան կոնցեպցիայից թույլ տրված նահանջներն առանձնապես հիվանդագին անդրադարձան գյուղի վիճակի վրա: Թե՛ տեսությունը և թե՛ պրակտիկան ապացուցում են, որ ագրարային քաղաքականությունը կարող է դառնալ սոցիալիստական վերափոխումների ամրապնդման ու խորացման կարևորագույն գործոններից մեկը և իսկապես այդպիսին է, եթե ճիշտ է արտացոլում հասարակական զարգացման պահանջմունքները, բանվոր դասակարգի և գյուղացիության շահերը: Եվ, ընդհակառակն, եթե ագրարային քաղաքականությունը թույլ է տալիս հակադրություն այդ շահերին, ապա նա ոչ միայն խարխլում է գյուղատնտեսությունը, այլև լուրջ դժվարություններ առաջացնում ամբողջ հասարակության զարգացման մեջ:

Սա է, ընկերներ, ընդհանուր սկզբունքային հետևությունը: Բայց մենք պետք է նաև ավելի կոնկրետ դասեր քաղենք արդի ագրարային քաղաքականության մշակման համար:

Առաջին: Գյուղի սոցիալիստական վերափոխումների ամբողջ փորձը՝ բոլոր նվաճումներով, ձեռքբերումներով և հսկայական կորուստներով հանդերձ, հավաստում է լենինյան այն առաջատար միտքը, որ ագրարային քաղաքականությունը պետք է նպատակամղված լինի այնպիսի արտադրական հարաբերությունների, տնտեսավարման այնպիսի ձևերի ստեղծմանը, որոնք ապահովեին գյուղացու՝ որպես հողի տիրոջ ամուր դիրքը:

Երկրորդ: Թե՛ ագրարային հատվածը և թե՛ ամբողջ հասարակությունը չեն կարող հաջողությամբ զարգանալ առանց քաղաքի և գյուղի միջև, ագրարային հատվածի և էկոնոմիկայի մյուս հատվածների միջև տնտեսագիտորեն հիմնավորված, արդարացի հարաբերությունների հաստատման: Այստեղ ամեն մի շեղում հղի է լուրջ հետևանքներով: Այս հետևությունը ոչ միայն տնտեսական, սոցիալական, այլև քաղաքական նշանակություն ունի, քանի որ խոսքը վերաբերում է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքին, սոցիալիզմի բախտին:

Երրորդ: Սոցիալիստական կարգերի բուն էությունից է բխում էկոնոմիկայի, բոլոր հասարակական պրոցեսների կառավարման դեմոկրատական մեթոդների անհրաժեշտությունը: Եվ սրանից հետևում է վարչահրամայական համակարգի անընդունելիությունը: Դրա մեթոդներն առավել ևս անթույլատրելի են գյուղատնտեսության մեջ, որը գործ ունի հողի հետ, մեծ բազմազանությամբ աչքի ընկնող բնակլիմայական պայմանների հետ:

Չորրորդ: Շատ կարևոր է միշտ տեսնել գյուղի արտադրական հարաբերությունների և արտադրողական ուժերի կենդանի դիալեկտիկան: Առաջնահերթ նշանակություն տալով ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերում տնտեսական հարաբերությունների արմատական վերակառուցմանը, մենք չենք կարող մոռանալ դրա նյութատեխնիկական բազայի հետագա զարգացումը: Առանձնապես այսօր, երբ գիտատեխնիկական հեղաշրջումն ընդգրկում է նյութական արտադրության բոլոր ոլորտները, այդ թվում նաև գյուղատնտեսությունը:

Հինգերորդ: Ամենակարևոր դասը, ընկերներ, որ մենք պետք է հաստատ յուրացնենք, գյուղի աշխատավորների աշխատանքի ու կենցաղի պայմանների նկատմամբ քամահրական վերաբերմունքի անթույլատրելիությունն է:

Ագրարային քաղաքականությունը, որն այսօր մենք մշակում ենք, պետք է մի հիմնական նպատակ ունենա՝ գյուղի իսկական վերածնումը, որպեսզի գյուղացին և գյուղացիական աշխատանքն արժանի տեղ գրավեն հասարակության մեջ: Սա ոչ միայն կարևորագույն սոցիալ-տնտեսական խնդիր է, այլև, ես կասեի, մեր բարոյական պարտքը: Առանց հասարակության մեջ գյուղացիության դիրքի արմատական

փոփոխման չի կարելի լրջորեն ակնկալել արտադրական խնդիրների և պարենային պրոբլեմի լուծում: Գյուղի մարդու նկատմամբ հոգատարությունը մեր ներկա ագրարային քաղաքականության կիզակետն է:

Սրանք են պատմական դասերից մի քանիսը, սրանք են դրանցից բխող հիմնական հետևությունները:

## III

Ընկերնե՛ր: Մենք պետք է մշակենք այնպիսի ագրարային քաղաքականություն, որի կենսագործումը թույլ տար ամենամոտ ժամանակներս լուծել պարենային սուր պրոբլեմը, իսկ տասներեքերորդ հնգամյակում՝ ապահովել այնպիսի քանակությամբ և տեսականիով գյուղատնտեսական մթերքների արտադրություն, որոնք բավարար լինեն կայուն պարենային մատակարարման համար:

Նոր ագրարային քաղաքականության միջոցով մենք պետք է արմատական սոցիալ-տնտեսական վերափոխումներ իրականացնենք գյուղում, ժամանակակից մակարդակին հասցնենք գյուղատնտեսական արտադրությունը, գյուղատնտեսական մթերքների փոխադրման, պահպանման ու վերամշակման ոլորտը, ինչը ամբողջ էկոնոմիկայի ներդաշնակ զարգացման կարևոր գործոն կլինի:

Սա է այն գլխավոր սոցիալ-տնտեսական ու քաղաքական խնդիրը, որ ծառացել է կուսակցության, ամբողջ հասարակության առջև:

Բնականաբար, հարց է ծագում. մենք գյուղատնտեսական մթերքների արտադրության ի՞նչ ծավալների պետք է հասնենք և դրա համար ի՞նչ ռեսուրսներ են պետք: Փաստաթղթերում, որոնք բաժանված են ձեզ, այդ առթիվ առաջարկություններ կան: Դրանցում նշված բնագծերի նվաճումը անչափ կարևոր ու անհրաժեշտ է: Բայց կարծում եմ, որ մեր պլենումում մենք պետք է շեշտը դնենք այն ուղիների որոնման, այն գործնական միջոցառումների կոմպլեքսի վրա, որ պահանջվում է իրագործել այդ կողմնորոշիչներին հասնելու համար:

Քաղբյուրոյի կարծիքով արդի ագրարային քաղաքականության հիմնական հարցը գյուղում տնտեսական հարաբերությունների արմատական վերափոխումն է: Ես կուզենայի սա մեկ անգամ ևս ընդգծել, քանի որ պլենումի նախապատրաստման ընթացքում անցկացված դիսկուսիան ցույց տվեց, որ կա մեր առաջադրած նպատակների իրագործման միջոցների ընտրության պատեհաժամության ու կարևորության լուրջ թերըմբռնում:

Ամենաարմատացած կարծիքներից մեկն այն է, թե իբր բավական է գյուղին ավելի շատ տեխնիկա, պարարտանյութեր, շինանյութեր, կապիտալ ներդրումներ տալ, արագացնել հողերի մելիորացումը, և դա կարծես թե ինքնին կլուծի բոլոր պրոբլեմները...

Իսկապես, գյուղը շատ բանի կարիք ունի, և նրան պետք է շատ բան տալ: Այս պնդման հետ ընդհանուր առմամբ դժվար է վիճելը: Այդուհանդերձ, պատմության վերլուծությունը, վերակառուցման վերջին տարիների փորձը համոզիչ կերպով ապացուցում են, որ եթե մենք ընտրենք այդ ուղին որպես ագրարային քաղաքականության գլխավոր ուղղություն, ապա լուրջ սխալ թույլ կտանք:

Եվ ահա թե ինչու: Վերջին տարիներին ագրարային հատվածին հատկացվել են հսկայական կապիտալ ներդրումներ, այլ նյութական ռեսուրսներ: Բայց այդ ծախսումների համեմատ էական արդյունքներ չեն ստացվել:

Սա բնորոշ է ոչ միայն մի այնպիսի բարդ ու դժվարին ռեգիոնի, ինչպիսին է օրինակ ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտին: Եկեք նայենք Ուկրաինային: Վերջին 20 տարվա ընթացքում այստեղ գյուղատնտեսության հիմնական արտադրական ֆոնդերը մեծացել են 4,2, պարարտանյութերի մատակարարումները՝ 3, աշխատանքի վարձատրությունը՝ 2,7 անգամ, իսկ գյուղատնտեսական մթերքների արտադրության հավելաճը կազմել է ընդամենը 39 տոկոս:

Մենք խոսում ենք Մերձբալթյան միութենական հանրապետությունների առաջավոր տնտեսությունների արժանի նվաճումների մասին: Բայց այնտեղ էլ նույն միտումն է նկատվում: Վերջին 20 տարվա ընթացքում Լիտվայում գյուղատնտեսական նշանակության հիմնական արտադրական ֆոնդերը մեծացել են գրեթե 5, Լատվիայում՝ 3,8, Էստոնիայում՝ 4,1 անգամ: Իսկ գյուղատնտեսության համախառն արտադրանքը ավելացել է համապատասխանաբար՝ Լիտվայում՝ 45 տոկոսով, Լատվիայում՝ 39 և Էստոնիայում 33 տոկոսով: Ընդ որում այդ հանրապետությունների կոլտնտեսություններում և սովխոզներում հիմնական մթերքների ինքնարժեքը բարձ-



րացել է. օրինակ, խոշոր եղջերավոր անասունների քաշաճինը՝ 2—2,3, խոզերի քաշաճինը՝ 1,6—1,7, կաթինը՝ 1,6—1,8, բանջարեղենինը՝ 1,6—2,2 անգամ:

Մոտավորապես նույն պատկերն է նաև Միջին Ասիայի միութենական հանրապետություններում: Վերցնենք Ուզբեկստանը: Վերջին 20 տարվա ընթացքում այդ հանրապետությունում շրջանառության մեջ են դրվել 1,6 միլիոն հեկտար ոռոգվող հողեր, գյուղատնտեսության հիմնական արտադրական ֆոնդերն ավելացել են 6 անգամ, իսկ համախառն արտադրանքը՝ 78 տոկոսով:

Այն փաստը, որ նման միտումներ են դրսևորվում գյուղատնտեսության վարման տարբեր պայմաններ ունեցող ռեգիոններում, վկայում է, որ գլխավոր պատճառը ոչ թե նյութատեխնիկական ռեսուրսների սահմանափակությունն է, այլ ավելի խոր պատճառ կա:

Ընկերնե՛ր, մենք պետք է որքան կարելի է շուտ ազատվենք հին, սովորական, գուցեև նույնիսկ հարմար ստերեոտիպերից: Պետք է որքան կարելի է ավելի արագ գիտակցել, որ առանց գյուղի տնտեսական հարաբերությունների և սոցիալական պայմանների արմատական փոփոխման «չեն գործի» ո՛չ կապիտալ ներդրումները, ո՛չ էլ տեխնիկան: Այս եզրակացությունը բխում է ոչ միայն անցյալի բացասական դասերից, այլև առաջավոր տնտեսությունների ժամանակակից փորձից: Նրանց նվաճումները հնարավոր են դարձել ամենից առաջ նոր տնտեսագիտական մոտեցումների կիրառման, նյութական շահագրգռության ուժեղացման, մարդու նկատմամբ հոգատարության և ուշադրության մեծացման շնորհիվ:

Գյուղի տնտեսական վերափոխումների իմաստը պետք է լինի ինքնուրույնության, ձեռներեցության և նախաձեռնության դրսևորման համար գյուղացիներին լայն հնարավորություններ տալը: Մենք պետք է վճռաբար հաղթահարենք գյուղի աշխատավորների (ինչպես, ի դեպ, նաև բոլոր աշխատավորների) օտարացումը սեփականությունից, որն առայժմ միայն ձևականորեն է նրանց պատկանում: Հարկավոր է արմատապես փոխել տնտեսավարման բազմազան ձևերի և տնտհաշվարկային հարաբերությունների լայն օգտագործման միջոցով սոցիալիստական սեփականատիրոջ իրավունքների իրացման ձևերը:

Գյուղում տնտեսական հարաբերությունների վերակառուցումը պահանջում է թե՛ տեսության մեջ և թե՛ պրակտիկայում վերանայել սոցիալիստական սեփականության վերաբերյալ գոյություն ունեցող հայացքները:

Արհեստական չափանիշներով սեփականության ձևերը բարձրագույն և ցածրագույն, հետևողական և ոչ հետևողական սոցիալիստական ձևերի բաժանելը, ինչն արմատացել է, շատ բանով որոշել է նաև տնտեսավարման ու կառավարման կազմակերպման ձևերի ընտրության նկատմամբ դոգմատիկ մոտեցումները, հասցրել խոշոր վնասների:

Այսօր խոսքը վերաբերում է արտադրամիջոցների սոցիալիստական սեփականության տարբեր ձևերի և դրանց վրա հիմնված տնտեսության վարման եղանակների իրավահավասարության ճանաչմանը:

Մենք պետք է լայն ճանապարհ բացենք տնտեսավարման ամենաբազմազան ձևերի՝ թե՛ կոլտնտեսությունների, թե՛ սովխոզների, թե՛ ագրոֆիրմաների, թե՛ ագրոկոմբինատների, թե՛ գյուղացիական և անձնական օժանդակ տնտեսությունների, թե՛ արդյունաբերական, շինարարական ու մյուս ոչ ագրարային ձեռնարկությունների ագրոարտադրամասերի և թե՛ օժանդակ զբաղմունքների ու այլ ձևերի առջև:

Պետք է նոր ձևով մոտենալ ընտանեկան-անհատական գյուղացիական աշխատանքային գործունեությանը: Ինչպես որ կոոպերացիան, այն նույնպես պետք է վերականգնի իր իրավունքները: Խոսքը վերաբերում է ապրանք արտադրող, անձնական աշխատանքի վրա հիմնվող գյուղացիական տնտեսություններին: Եվ, իհարկե, մենք պետք է վերականգնենք աշխատավորների անձնական օժանդակ տնտեսությունների լիիրավությունը:

Բոլոր տնտեսական ձևերը կարող են սերտորեն փոխգործակցել մեր հասարակության սոցիալ-տնտեսական կառուցվածքում, մրցակցել իրար հետ, լրացնել միմյանց, գործնականորեն ապացուցել իրենց արգասավորությունն ու հեռանկարայնությունը:

Եվ ամենագլխավորն այն է, որ տնտեսավարման նոր մեխանիզմի, կոոպերացիայի, վարձակալության միջոցով առավելագույնս բացահայտվի կոլտնտեսությունների ու սովխոզների հսկայական պոտենցիալը, այսինքն իրացվի այն, ինչ և մտահղացվում էր աշխատանքի կոլեկտիվ ձևերի անցնելիս:

Ո՞րն է այդ խնդրի լուծման հիմնական ուղին: Դրա էությունը տնտեսական կյան-

քի ըստ ամենայնի դեմոկրատացումն է, որը թույլ է տալիս արմատապես վերափոխել կոլտնտեսությունների կառուցվածքը՝ դրանք կոոպերատիվների կոոպերատիվ դարձնելու միջոցով: Ըստ էության նույն մոտեցումը կիրառելի է նաև սովխոզների նկատմամբ:

Տնտեսական հարաբերությունների վերակառուցման մեր պլանները իրացնելու և գյուղում տնտեսավարման ձևերի լայն բազմազանություն ապահովելու համար, անշուշտ, ժամանակ կպահանջվի: Չհեշտացնենք խնդիրը. չէ՞ որ մենք ձեռնամուխ ենք լինում գյուղական կյանքի ամբողջ կացութաձևի արմատական բարեփոխման:

Սոցիալիստական սեփականության հարաբերությունների վերակառուցման կարևորագույն, իսկ գուցե և տվյալ փուլում նաև վճռական ուղիներից մեկը վարձակալական հարաբերությունների զարգացումն է գյուղում: Հենց վարձակալման միջոցով կարելի է առավել լիովին իրականացնել անձնական շահագրգռվածության ակտիվ ներգրավման լենինյան գաղափարը, մարդուն վերադարձնել տիրոջ զգացումը, խթանել նրա ստեղծագործական հնարավորությունները:

Հասարակությունը քննարկում է վարձակալության հարցը: Կարծիքների ընդգրկումը այստեղ շատ լայն է: Առաջավոր կոլտնտեսությունների և սովխոզների շատ ղեկավարներ, սկզբունքորեն դրականորեն արտահայտվելով վարձակալման մասին, այդուհանդերձ այն կարծիքին են, որ իրենց տնտեսություններում կարելի է գործը գլուխ բերել առանց դրա:

Ինչպես հայտնի է, այդ տնտեսություններում ձեռք է բերվել թե՛ հողի, թե՛ ֆոնդերի հատույցի բարձր մակարդակ, լայնորեն են օգտագործվում տնտհաշվարկի հնարավորությունները: Այդ ամենն այդպես է: Բայց, ընդսմին, պետք է տեսնել հեռանկարը: Բոլոր կոլեկտիվները, այդ թվում և լավագույնները, պետք է ուղիներ որոնեն՝ ավելացնելու արտադրությունը և բարձրացնելու նրա արդյունավետությունը: Իսկ չէ՞ որ, ուղղակի ասենք, դեպի նոր բնագծեր շարժվելը հետզհետե ավելի ու ավելի կբարդանա և այդ դեպքում, ըստ երևույթին, հնարավոր չի լինի յոլա գնալ ավանդական մոտեցումներով:

Այնպես որ, ես այստեղ էլ չէի մերժի վարձակալումը: Բայց, ինչպես ասում են, թող կյանքն ինքն ասի իր վճռական խոսքը: Կարծում եմ, որ այս հարցերը պետք է լուծեն իրենք՝ մեր առաջավոր կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորական կոլեկտիվները:

Կա նաև մի այլ, ես կասեի՝ ուղղակի հակադիր տեսակետ վարձակալական հարաբերությունների, իսկ դրա հետ մեկտեղ նաև կոլտնտեսությունների ու սովխոզների ճակատագրի նկատմամբ: Նրա կողմնակիցները ելնում են այն բանից, որ դրանք պետք է ցրվեն, իսկ դրանց հողը և մյուս արտադրամիջոցները պետք է հանձնել վարձակալներին: Կարծում եմ, որ այս տեսակետը թե՛ գիտական, թե՛ գործնական առումով անհիմն է:

Բացառված չէ, որ որոշ դեպքերում կարող են ընդունվել նաև այդպիսի որոշումներ: Բայց, այդուհանդերձ, գլխավոր ճանապարհը տեսնում ենք և՛ կոլտնտեսությունների, և՛ սովխոզների՝ ներտնտեսական վարձակալման անցնելու, դրանք վարձակալների կոոպերատիվների ստեղծման հիման վրա վերափոխելու մեջ:

Մենք չպետք է թերագնահատենք այն իրական փաստը, որ ներկայիս կոլտնտեսություններն ու սովխոզներն ունեն թեկուզև ոչ բավարար, բայց զարգացած ենթակառուցվածք, որն ընդունակ է բավարարել վարձակալի շատ պահանջմունքներ: Դա վերաբերում է թե՛ արտադրամիջոցների մատակարարմանը, թե՛ արտադրված արտադրանքի իրացմանը, թե՛ բազմաթիվ սպասարկումների տրամադրմանը, և թե՛ նույնիսկ ջանքերի միավորմանը տարածքի սոցիալական զարգացման գործում:

Իսկ չէ՞ որ բավական է հայացք նետել ոչ միայն սոցիալիստական, այլև կապիտալիստական երկրների կոոպերատիվների փորձին՝ համոզվելու համար, որ ամենուրեք կոոպերատիվներն ու գյուղացիական տնտեսություններն այս կամ այն չափով կարիք ունեն միավորելու ջանքերը արտադրական ու սոցիալական պահանջմունքների բավարարման համար:

Ըստ երևույթին կոլտնտեսություններն ու սովխոզները ցրելու առաջարկությունը զգալիորեն առաջացել է վարձակալական հարաբերությունների ճակատագրի համար ունեցած երկյուղի ազդեցությամբ, այն վախից, թե դրանց զարգացումը կարող է շրջափակվել որոշակի ուժերի դիմադրությամբ, ինչը հաղթահարելը հեշտ չէ:

Այստեղ ի՞նչ ասել: Նորին ընդդիմանալն առկա է և միանգամից չի վերանա: Վերջին երկու-երեք տարվա փորձը ցույց տվեց, որ կոլտնտեսությունների, սովխոզների, մյուս ձեռնարկությունների՝ վարձակալական հարաբերություններին անցնելու ճանապարհին եղած իրական խոչընդոտները հանգում են երկու հանգամանքի:



Մի կողմից մարդիկ ուզում են ունենալ հուսալի իրավական երաշխիքներ, որոնք վստահություն ստեղծեին մեր քաղաքականության լրջության և տևականության նկատմամբ: Այդ երկյուղները մենք կարող ենք և պետք է փարատենք արդեն այժմ՝ առաջարկելով ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը ՍՍՀՄ-ում վարձակալման և վարձակալական հարաբերությունների մասին: Դրա նախագիծը ձեզ մոտ կա: Մեր կարծիքով այն կպաշտպանի վարձակալների և վարձատուների շահերը: Իսկ մինչև տարեվերջ հնարավոր կլիներ մշակել նաև օրենք վարձակալման մասին:

Մյուս կողմից վարձակալումը, ինչպես ցույց տվեց կյանքը, արմատապես փոխում է մասնագետների դիրքը գյուղատնտեսական արտադրության մեջ: Այդ առնչությամբ նրանց մի մասը քննադատաբար է տրամադրված տնտեսավարման այդ ձևի նկատմամբ: Բայց դրա հետ մեկտեղ վստահ ենք, որ մասնագետների մեծամասնությունն իր տեղը կգտնի գյուղում ձևավորվող հարաբերություններում, քանի որ վերջիններս նրանց հնարավորություն են ընձեռում առավել լիովին բացահայտել իրենց ընդունակությունները և պրոֆեսիոնալ բավականություն ստանալ՝ չխոսելով նյութական վարձատրության մասին:

Վարձակալումը զգուշավորությամբ է ընդունում նաև կոլտնտեսականների ու բանվորների այն մասը, որը երկար տարիներ հետ է վարժվել բարեխղճորեն աշխատելուց, հարմարվել կայուն եկամուտներ ստանալուն՝ անկախ աշխատանքի վերջնական արդյունքներից: Դրանից մենք պետք է խուսափենք, այլապես առաջ չենք շարժվի: Այստեղ իրական ուղին անցումն է ըստ վերջնական արդյունքի վարձատրման: Սա միանգամից շատ բան կդնի իր տեղը:

Վարձակալման անցնելու հետ կապված բոլոր հարցերը մենք պետք է լուծենք՝ հիշելով անցյալի փորձը, խստիվ ղեկավարվելով լենինյան սկզբունքներով, նախ և առաջ կամավորության սկզբունքով: Առաջադրանքներ չենք սահմանի, ժամկետներ չենք որոշի:

Եթե պլենումը պաշտպանի քաղբյուրոյի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և կառավարության առաջարկությունները դրա վերաբերյալ, և մենք ընդունենք համապատասխան փաստաթղթեր, ապա դրանով իսկ իրավական և տնտեսական նախադրյալներ կստեղծվեն լայնորեն վարձակալման անցնելու համար: Այնժամ այդ պրոցեսը կընթանա բնականորեն, նորմալ հունով և վստահ եմ, շատ ավելի արագ, քան մինչև այժմ:

Այս առնչությամբ կկամենայի ընդգծել վարձակալման բազմապիսի ձևերն օգտագործելու անհրաժեշտությունը: Նրա պայմաններով կարող են աշխատել ոչ միայն կոլտնտեսություններն ու սովխոզները, գյուղատնտեսական ֆերմաներն ու գյուղատնտեսական կոմբինատները և նրանց ստորաբաժանումները, այլև առանձին գյուղացիական ընտանիքներ: Նրանք ի վիճակի են յուրացնել լքված հողերը, ագարակները, հատկապես Ռուսաստանի ոչ սևահողային գոտու, Բելոռուսիայի և Մերձբալթիկայի շրջաններում: Տնտեսական պրակտիկայում չպետք է բացառել նաև փայատիրական, բաժնետիրական հիմունքների կիրառումը, այլ խոսքով, այստեղ ամենալայն ասպարեզ կա ձեռներեցության համար:

Բայց ամեն դեպքում պետք է հստակորեն որոշել վարձատուների և վարձակալների իրավունքներն ու պարտականությունները, նրանց աշխատանքի սկզբունքները, կոլեկտիվ ու անհատական սեփականության շրջանակներում վարձակալական և բաժնետիրական հարաբերությունների ձևավորման սկզբունքները, սեփականության այդ ձևերի տեղն ու դերը սոցիալիստական արտադրահարաբերությունների ընդհանուր համակարգում:

Խոսքը հողը և մյուս արտադրամիջոցները վարձակալների տրամադրության տակ դնելու, այդ միջոցներն իրապես տնօրինելու մասին է, ներառյալ արտադրական կառուցվածքի ինքնուրույն կազմավորումը և վարձակալական եկամուտը տնօրինելու վարձակալի իրավունքը, որը վավերագրված լինի պայմանագրով և այլն: Վարձակալը պետությանը համապատասխան հարկ կվճարի հողից օգտվելու համար, խիստ պատասխանատվություն կկրի վարձակալվող հողամասի պահպանության ու որակի համար, հստակորեն կկատարի պայմանագրով ստանձնած պարտավորությունները:

Ներկայումս կարևոր է վարձակալությամբ աշխատող առանձին կոլեկտիվների ստեղծումից նոր, ես կասեի վճռական անցում կատարել վարձակալական հիմունք-

ներով տնտեսության բոլոր ստորաբաժանումների աշխատանքի, դրանց կողմից փոխկապակցված ներտնտեսական շրջափուլերի ընդգրկման:

Ընդ որում հույժ կարևոր է թույլ չտալ, որ գաղափարն աղավաղվի, որ փորձեր արվեն վարձակալական հարաբերությունները ներկայացնելու իբրև տնտեսավարման այնպիսի ձևեր, որոնցում ձևախեղված են կամ էլ առհասարակ բացակայում են վարձակալման բուն հիմունքները: Պետք է վճռականորեն բացառել կոոպերացիայի պետականացման և արտադրական կոլեկտիվների գործերին վարչարարական միջամտության ամեն տեսակ ձևերը:

Սեփականության ձևերի վերակառուցումը հանգեցնում է քաղաքի և գյուղի, ժողովրդական տնտեսության տարբեր ոլորտների տնտեսական կապերի փոփոխման՝ ապրանքադրամական հարաբերությունների հետագա ծավալման հիման վրա:

Առհասարակ, ընկերնե՛ր, մենք կողմնակից ենք այն բանին, որ վարձակալների հետ տնտհաշվարկային հարաբերությունները կառուցվեն արտադրանքի իրացման եղանակների ընտրության լիակատար ազատության վրա: Դրան մենք անպայման կհասնենք՝ վաղ թե ուշ:

Միանգամայն ակներև է, որ եթե կոլտնտեսություններն ու սովխոզները, վարձակալական կոլեկտիվները սկսեն ապրել վաստակած միջոցներով, ապա դա նրանց կհարկադրի արտադրել ավելի մեծ քանակությամբ, ավելի լավորակ գյուղատնտեսական արտադրանք՝ նվազագույն ծախսումներով:

Եվ այդ ժամանակ մենք հնարավորություն կստանանք գնելու այն արտադրատեսակները և այն քանակությամբ, որ անհրաժեշտ են պարենի պետական ֆոնդի գոյացման համար:

Բայց դա ապագայի խնդիր է: Մեր շարժմանը ձեռնամուխ լինելու ներկայիս կացության և այն ժամանակի միջև, երբ տնտեսական նոր մեխանիզմը կաշխատի ամբողջ ուժով, իհարկե, անխուսափելի է անցումային շրջանը, որի շրջանակներում պետք է օգտագործվեն տարբեր ձևեր, ներառյալ նաև պետական պատվերը:

Անցումային շրջանի խնդիրներից բխող միջոցառումները նշված են ձեզ բաժանված փաստաթղթերում:

Այստեղ ես կկամենայի ձեր ուշադրությունը հրավիրել պետպատվերի վրա: Ընդունելով նրա անհրաժեշտությունը արդի փուլում, պետք է հոգ տանել, որ պետպատվերը չվերածվի մթերումների հարկադրվող մեթոդների քողարկված ձևի, որոնք լավ են հայտնի անցյալի փորձից: Մենք, իհարկե, կողմնակից ենք գնումների կարգապահությանը: Բայց դա պետք է լինի փոխադարձ պայմանագրային պարտավորությունների կարգապահություն՝ թե՛ արտադրողի, թե՛ մթերողի կողմից պարտադիր տնտեսական պատասխանատվություն: Այստեղ իր դերն է կոչված խաղալու նաև կոնտրակտացիան, հասկանալի է՝ արտադրողի և մթերող կազմակերպության փոխադարձ շահագրգռության հիման վրա:

Բայց այդ ամենով հանդերձ այսօր մեզ հարկավոր է օրենքով վավերացրել հետևյալ սկզբունքը. ըստ կնքված պայմանագրի պարտավորությունները կատարելուց հետո արտադրանքի մնացած մասը արտադրողն իրացնում է իր ընտրությամբ՝ այդ նույն մթերող կամ առևտրական կազմակերպությունների, վերամշակող ձեռնարկությունների, սպառկոոպերացիայի, կոլտնտեսային շուկայի, հասարակական սննդի միջոցով:

Բնականաբար հարց է ծագում. ինչու՞ է անհրաժեշտ անցումային շրջանը, ի՞նչ խնդիրներ պետք է լուծվեն այդ ընթացքում: Նման, անցումային շրջանի կարիքը օբյեկտիվորեն պայմանավորված է թե՛ էկոնոմիկայի, թե՛ ֆինանսների, թե՛ դրամական շրջանառության ներկայիս վիճակով, թե՛ ներքին շուկայի դրությամբ: Այն կապված է նաև գնագոյացման ռեֆորմ անցկացնելու անհրաժեշտության հետ:

Մենք շատ բան պետք է անենք հասարակության կյանքի այդ բոլոր կարևոր ոլորտներում. պետք է բարեշրջենք իրադրությունը: Իսկապես ասած, հենց դրան է նպատակամղված արմատական տնտեսական ռեֆորմը: Այն ընդգրկում է նաև գնագոյացման ռեֆորմը:

Գների գոյություն ունեցող համակարգը ձևավորվել է տասնամյակների ընթացքում. ունի բազում շերտեր և այլևս չի համապատասխանում օբյեկտիվ տնտեսական պայմաններին: Փաստորեն չեն բարելավվում գյուղատնտեսության և արդյունաբերության գնահարաբերությունները, մեծացել է խզումը գնման, մեծածախ և մանրածախ գների միջև, ինչը բացասաբար է անդրադառնում տնտեսության վիճակի, կոլտնտեսությունների ու սովխոզների, արդյունաբերական ձեռնարկությունների և ամբողջությամբ վերցրած երկրի ֆինանսական վիճակի վրա: Շատ տնտեսու-



թյուններ առանց պետության օգնության ի վիճակի չեն ապահովել ընդլայնված վերարտադրությունը, առավել ևս՝ լուծել իրենց սոցիալական խնդիրները:

Մենք կանգնած ենք գնման, մեծածախ ու մանրածախ գների որակապես նոր, փոխկապակցված համակարգի ստեղծման օբյեկտիվ պահանջի առաջ, պահանջ, որը կողմնորոշված լինի դեպի ինտենսիվացում, բարձրորակ արտադրանքի արտադրման խթանում դրա համար առավել նպաստավոր գոտիներում, դեֆիցիտի վերացում, տնտհաշվարկի ամրապնդում: Գների նոր մեխանիզմը պետք է դառնա արտադրության և սպառման բնագավառում առաջադիմական համամասնությունների ձևավորման, կառուցվածքային տեղաշարժերի, վերջնական արդյունքների բարձրացման արդյունավետ գործիք: Սա մեր սկզբունքային գիծն է:

Մենք պետք է հստակորեն պատկերացնենք, որ առանց գների, գնագոյացման ամբողջ համակարգի ռեֆորմի անհնար է իրականացնել տնտեսության վերակառուցման խնդիրները, ներդնել տնտեսավարման նոր մեթոդներ, ստեղծել սոցիալիստական շուկա:

Լուրջ կատարելագործման կարիք ունեն գնման գները: Որոշ տեսակի բարձրորակ արտադրանքի համար դրանց մակարդակը այնքան ցածր է, որ չի խթանում մասնագիտացված բարձրապրանքային արտադրության զարգացումն ու նպատակահարմար տեղաբաշխումը: Ասենք, տավարի միսը մեծ պահանջարկ է վայելում, բայց շատ տնտեսությունների համար այն վնասաբեր է կամ ցածր շահութաբեր: Նույնն է վիճակը նաև մի շարք այլ մթերքների հարցում:

Այս ամենն ուշադիր տնտեսագիտական վերլուծություն և համապատասխան որոշումներ է պահանջում:

Ձեզ բաժանված փաստաթղթերով նախատեսվում է 1990 թվականի հունվարի 1-ից մտցնել գյուղատնտեսական մթերքի նոր գնման գներ: Նկատի է առնվում դրանց մեջ մտցնել ներկայումս գործող հավելագները, շեշտակիորեն կրճատել գնային գոտիների թիվը, առավելագույնս խթանել մթերքի արտադրությունը առավել նպաստավոր պայմաններ ունեցող ռեգիոններում: Նախատեսվում է նաև գնագոյացումը դարձնել ավելի ճկուն: Որպեսզի այն դադարի միայն գերատեսչությունների առանձնաշնորհը լինելուց, հարկավոր է կրճատել կենտրոնացված կարգով սահմանված գների շրջանակը: Եվ, ընդհակառակն, ավելի մեծ ասպարեզ տալ պայմանագրային գների կիրառմանը, հատկապես վաղահաս, սեզոնային, շուտ փչացող մթերքի՝ կարտոֆիլի, բանջարեղենի և մրգի գների, ինչպես դա վերջին ժամանակներս արվել է սոցիալիստական երկրների մեծ մասում:

Նման մոտեցումը, ինչպես ցույց է տալիս փորձը, կխթանի մթերքի արտադրության ավելացումն ու որակի բարելավումը: Իհարկե, առաջին փուլում դա կարող է հանգեցնել այդ մթերքների մանրածախ գների որոշ բարձրացման: Դրանց աճը զսպելու համար տեղական սովետներին իրավունք է տրվում սահմանել կարտոֆիլի, բանջարեղենի, մրգի առավելագույն մանրածախ գները:

Ինչ վերաբերում է այնպիսի հիմնական սննդամթերքների մանրածախ գներին, ինչպիսիք են հացը, ալյուրը, ձավարեղենը, միսը, ձուկը, ձուն, կաթը, շաքարը, կենդանական յուղն ու ձեթը, մանկական սննդամթերքը, ապա առաջիկա երկու-երեք տարում դրանց պետական մանրածախ գները կպահպանվեն ներկա մակարդակին:

Մեր էկոնոմիկայի բոլոր հատվածներն անցել են նոր մեխանիզմի, ինքնածախսածածկման, ինքնաֆինանսավորման և ինքնակառավարման սկզբունքներին: Դա հաճախ ուղեկցվում է խմբային եսասիրության դրսևորումներով, գների բարձրացման ձգտմամբ: Ագրարային հատվածի և ժողովրդական տնտեսության մյուս ոլորտների միջև համարժեք փոխանակությունը պահպանելու համար շատ կարևոր է արդյունաբերության կողմից մատակարարվող արտադրանքի գների շեղում թույլ չտալ: Այդ նպատակով հարկավոր է մշակել գնային զուգակշռություն և ստեղծել դրա պահպանման մեխանիզմ: Կառավարական մակարդակով, գուցե և իշխանության բարձրագույն մարմնի մակարդակով հարկավոր է պատշաճ վերահսկողություն սահմանել դրա նկատմամբ:

Իհարկե, գների որոշ փոփոխություններ կարող են տեղի ունենալ, հաշվի առնելով արդյունաբերական և գյուղատնտեսական նոր մթերատեսակների ի հայտ գալը և դրանց որակի իրական բարձրացումը: Բայց դա միշտ պետք է հաշվեկշռվի և փոխադարձաբար հաշվի առնվի:

Առանձնակի խոսակցության ու քննարկման առարկա են ցածր շահութաբեր և վնասաբեր կոլտնտեսությունների ու սովխոզների, վերամշակման ձեռնարկություն-

ների պրոբլեմները, երկրի հանդեպ նրանց պատասխանատվության բարձրացումը: Սա մեծ հարց է, որը շոշափում է շատ մարդկանց ճակատագրերը և մեր ագրարային հատվածի զգալի մասը:

Բոլորը համաձայն են, որ կոնկրետ մոտեցում է պետք յուրաքանչյուր այդպիսի տնտեսության նկատմամբ: Ըստ երևույթին, մեծամասնությանը հարմար կլինի Օրյոլի ընկերների կուտակած փորձը: Նրանք եռանդագին ձեռնամուխ են եղել գյուղի սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծմանը, տնտեսավարման արդյունավետության բարձրացմանը և այդ հիման վրա անհրաժեշտ պայմաններ են ստեղծել թույլ տնտեսությունները կադրերով ապահովելու համար: Ձեզանից շատերն իրենք են տեսել, որ իրավիճակը Օրյոլի մարզի գյուղատնտեսության մեջ բարեփոխվում է, ընդ որում բավական արագ: Այնպես որ այդ փորձը հարկավոր է ընդօրինակել:

Մենք պետք է հատուկ քննարկման առարկա դարձնենք նաև այն տնտեսությունների ճակատագիրը, որոնք գտնվում են լեռնային, հյուսիսային և այլ ծայրաստիճան աննպաստ բնական պայմաններում: Այստեղ, գոնե առաջին փուլում, առանց պետության լուրջ օգնության գործը գլուխ չի գա:

Հետ մնացող տնտեսությունների մեջ կան նաև այնպիսիք, որոնք կորցրել են ինքնուրույն զարգացման հեռանկարները: Եվ այստեղ, ըստ երևույթին, հարկավոր է արմատական միջոցների դիմել: Առանձին դեպքերում նպատակահարմար է այդ տնտեսությունների հողերը հանձնել ամուր կոլտնտեսություններին, սովխոզներին, այլ ձեռնարկությունների, կոլեկտիվ և ընտանեկան վարձակալների, իրապես գոյություն ունեցող հնարավորություններն օգտագործել օժանդակ զբաղմունքների զարգացման համար: Կարծում եմ, որ դրանով հարկավոր է զբաղվել անհետաձգելիորեն, որպեսզի արդեն առաջիկա երկու-երեք տարում այդ պրոբլեմները լուծվեն հօգուտ հասարակության և հաշվի առնելով նրանց շահերը, ովքեր աշխատում են այդ կոլտնտեսություններում ու սովխոզներում:

Ակնհայտ է նաև ագրարային հատվածի ֆինանսավարկային ապահովման անկատարությունը: Այն չի հասնում իրադարձությունների հետնից, առաջվա նման հակված է չափազանց մեծ կանոնակարգման, թույլ է խթանում ձեռներեցությունն ու արդարացված ռիսկը:

Հարկավոր է արմատապես վերանայել բանկերի, հատկապես ագրոարդբանկի գործունեությունը: Այնպես անել, որպեսզի դրանք իրապես շահագրգռված լինեն արտադրության զարգացմամբ, հանդես գան որպես գործարար պարտնյորներ:

Ազդակներ են պետք կոոպերատիվ բանկերի և բաժնետիրական ընկերությունների համակարգի զարգացմանը, նպատակ ունենալով ձեռնարկությունների ու տնտեսությունների տնտեսական գործունեության բարելավմանն ակտիվորեն ներգրավել դրանց աշխատողների անձնական խնայողությունները:

Ամեն ինչ չէ, որ բարվոք է նաև բյուջեի ու վերամշակման ձեռնարկությունների փոխհարաբերություններում: Հայտնի է, որ սննդի արդյունաբերության շատ ճյուղեր, անգամ այնպիսին, ինչպիսին է շաքարինը, ֆինանսական ծանր դրության մեջ են, միջոցներ չունեն սոցիալական ենթակառուցվածքի վերափոխման և նորմալ զարգացման համար: Ծախույթից նրանց մնացող մասհանումները հնարավորություն չեն տալիս նորմալ զարգանալու: Պետք է ուշադրությամբ խորամուխ լինեն այդ իրավիճակին:

Մենք պարտավոր ենք եկող հնգամյակ թևակոխել պետական բյուջեի հետ ձեռնարկությունների ֆինանսական փոխհարաբերությունների հղկված մեխանիզմով: Այս կապակցությամբ հարկ կլիներ արագացնել եկամտահարկի և բյուջե կատարվող մասհանումների գիտականորեն հիմնավորված նորմատիվների մշակումը՝ ռենտային վճարումների հիման վրա: Սկզբունքային նշանակություն ունի տեղական սովետների բյուջեներ միջոցների մուծման կարգի սահմանումը:

Ինքնաֆինանսավորման պայմաններում կարևոր է բյուջետային ներդրումների տեղի սահմանումը: Դրանք կիրառվում են բոլոր երկրներում և հնարավորություն են տալիս պահպանել արտադրողների ֆինանսական կայունությունը, հատկապես արտակարգ պայմաններում, նրանց օգնում են ձեռք բերել նոր տեխնիկա, յուրացնել նոր տեխնոլոգիաներ, լուծել սոցիալական պրոբլեմներ: Բյուջետային միջոցները նաև գիտության ու արտադրության զարգացման խոշոր ծրագրերի իրականացման վճռական աղբյուր են:

Թե՛ քաղաքական, թե՛ տնտեսագիտական առումով չի կարելի շրջանցել կոլտնտեսությունների, սովխոզների և ագրոարդյունաբերական համալիրի մյուս ձեռնարկությունների վարկերի գծով երկար տարիներ կուտակված հսկայական պարտքի հարցը: Անարդարացի կլիներ պարտքի այդ բեռը լիովին բարդել իրենց՝ տնտեսությունների ուսերին, քանի որ դա հետևանք է ոչ միայն տնտեսական գործունեության թերությունների, այլև անհամարժեք փոխանակության:

Այս հարցը պլենումի նախօրեին մանրամասնորեն քննարկեց թե՛ կառավարությունը, թե՛ Կենտկոմի քաղբյուրոն: Ռեալ իրավիճակն այնպիսին է, որ երկրի ներկա ֆինանսական դրությունը, որը բնութագրվում է պետական բյուջեի մեծ դեֆիցիտով, սահմանափակում է մեր հնարավորությունները գոյացած պարտքի վերացման գործում: Եվ այնուամենայնիվ, նպատակահարմար համարվեց գտնել այդ պրոբլեմի լուծում, ընդ որում ոչ թե հախուռն մոտեցման հիմքի վրա, այլ հաշվի առնելով առանձին վերցված յուրաքանչյուր տնտեսության տնտեսական դրությունը:

Ընկերնե՛ր: Մենք բոլորս լավ հասկանում ենք, որ ագրարային հարաբերությունների վերակառուցումը ենթադրում է ագրոարդյունաբերական համալիրի կառավարման համակարգի արմատական փոփոխություն, իսկ անկեղծորեն ասած՝ գյուղատնտեսության և ամբողջությամբ վերցրած էկոնոմիկայի ագրարային հատվածի ղեկավարման գոյություն ունեցող վարչական (գերատեսչական և տերիտորիալ) համակարգի վերացում:

Կառավարման տեսակետից գյուղատնտեսական ձեռնարկություններն այժմ աևս գտնվում են երկակի կախման մեջ: Մի կողմից նրանք ենթարկվում են գերատեսչական գծով իրենց վերադաս մարմիններին: Բայց ոչ պակաս, գուցեև անգամ ավելի մեծ չափով նրանք կառավարվում են տեղական կուսակցական և սովետական մարմինների կողմից, սկսած շրջանային մակարդակից:

Այս համակարգը վաղուց է ձևավորվել, սկսած կոլեկտիվացումից: Տեղական մարմինները խստորեն վերահսկել են գյուղատնտեսական ձեռնարկությունների ամբողջ գործունեությունը: Փաստորեն շրջանային իշխանություններն են սահմանել տնտեսությունների արտադրության ծավալի ու կառուցվածքի առաջադրանքները, աշխատանքների կատարման ժամկետները, միջամտել բոլոր ներտնտեսային գործերին: Ընդ որում նրանք ոչ մի տնտեսական պատասխանատվություն չեն կրել ընդունված որոշումների հետևանքների համար:

Վերակառուցումը ենթադրում է ագրարային հատվածի կառավարման համակարգի արմատական փոփոխություն՝ նրա բոլոր մակարդակներում

Ընդհանուր առմամբ ագրոարդյունաբերական համալիրի կառավարման արդի համակարգը պետք է հենվի մեր տնտեսական ռեֆորմի ընդհանուր սկզբունքների վրա:

Խոսքը էկոնոմիկայի հիմնական օղակների՝ տնտեսությունների ու ձեռնարկությունների իսկական զուգակշռության ապահովման, ղեկավարման տնտեսագիտական մեթոդների վճռական անցման, մեծածախ առևտրի սկզբունքների աստիճանական արմատավորման, ապրանքադրամական հարաբերությունների լծակներին տիրապետելու մասին է: Նոր համակարգը լիովին պետք է համապատասխանի նաև մեր քաղաքական ռեֆորմի պահանջներին: Ես նախ և առաջ նկատի ունեմ անցումը տերիտորիայի նկատմամբ սովետների լիակատար իշխանությանը, աշխատավորական կոլեկտիվների դերի շեշտակի բարձրացումը, բոլոր մակարդակներում կառավարման իսկական դեմոկրատացումը:

Պլենումի համար նախապատրաստված առաջարկություններում խոսվում է ամենուրեք շրջանային ագրոարդյունաբերական միավորումները (ՇԱԱՄ) լուծարքի ենթարկելու մասին: Ես նկատի ունեմ, որ ՇԱԱՄ-ները լուծարքի են ենթարկվում այնտեղ, որտեղ դրանք դեռ մնացել են:

Ընդ որում մենք ելնում ենք այն բանից, որ ոչ ոք չպետք է միջամտի կոլտնտեսությունների ու սովխոզների, առավել ևս գյուղացիական և անձնական օժանդակ տնտեսությունների օպերատիվ տնտեսական գործունեությանը:

Նկատի է առնվում նաև, որ տնտեսությունները կարող են խիստ կամավոր հիմունքներով, առևտրական հիման վրա, փոխշահավետության սկզբունքներով համապատասխան տնտհաշվարկային կազմավորումներ ստեղծել նորոգման-տեխնիկական, շինարարական և սպասարկման այլ տեսակների գործառնությունների կատարման, մթերքի փոխադրման և վաճառահանման, համատեղ ձեռնարկությունների կամ սոցիալական օբյեկտների շինարարության համար:

Շրջանում տնտեսությունների ու ձեռնարկությունների ներկայացուցիչների ժողովները կարող են դեմոկրատական հիման վրա ստեղծել փոխադարձ հետաքրքրություն ներկայացնող այս կամ այն հարցի լուծման ասպարեզում գործարար

համագործակցությունը կոորդինացնող խորհուրդ: Խորհուրդն ու նրա ապարատը վարչական-կարգադրական գործառույթներով չեն օժտվում:

Կարծում եմ, որ սա սկզբունքային նշանակություն ունի, քանի որ վերջին հաշվով մեր բոլոր առաջարկությունների ելակետը արտադրողների լիակատար ինքնուրույնությունն է: Աշխատավորական կոլեկտիվն ինքն է որոշում արտադրության կառուցվածքն ու բնույթը, լուծում բոլոր գործնական հարցերը և լիակատար պատասխանատվություն կրում իր տնտեսական գործունեության արդյունքների համար:

Ըստ էության, ագրոարդյունաբերական համալիրի կառավարման նոր ձևերի կազմավորման պրոցեսն արդեն ընթանում է, ընդ որում՝ մեծ բազմազանություն կա մոտեցումներում: Եվ դա հարկավոր է միայն ողջունել:

Գրեթե երկու հազար շրջաններում ՇԱԱՄ-ի վարչական ապարատի փոխարեն դեմոկրատական եղանակով, աշխատավորական կոլեկտիվների կամքի արտահայտման հիման վրա ստեղծվել են ընտրովի մարմիններ:

Մենք պետք է ուշադրությամբ վերաբերվենք ագրոկոմբինատների, ագրոֆիրմաների և միավորումների աշխատանքի փորձին: Արդեն այժմ երկրում դրանց թիվն անցնում է 300-ից, որոնցից 110-ը կոոպերատիվ ագրոարդյունաբերական միավորումներ են:

Կարծում եմ, որ հարկավոր է բացառել ամեն մի ճնշում կառավարման ձևի ընտրության գործում: Դրանց ամբողջ բազմազանությամբ հանդերձ, բոլորի համար ընդհանուր պետք է լինեն ինքնուրույնությունն ու ինքնակառավարումը, տնտեսական գործունեության ղեկավարման տնտեսագիտական մեթոդները, կոոպերատիվ հիմունքների զարգացածությունը, մթերքի արտադրության, վերամշակման և իրացման գործում միասնացման կապերի հաստատումը:

Կառավարման մարզային, երկրամասային և հանրապետական օղակներին վերաբերող առաջարկությունները շարադրված են փաստաթղթերում, որոնք նույնպես հիմնականում համապատասխանում են այն խնդիրներին, որոնք բխում են գյուղում տնտեսական հարաբերությունների արմատական վերակառուցումից:

Ըստ էության, այս դեպքում էլ ենք մենք հենվում այն փորձի վրա, որն արդեն իրապես գոյություն ունի: Ես նկատի ունեմ, որ մարզային մակարդակով նույնպես իրենց համար ճանապարհ են հարթում ագրոարդյունաբերական համալիրի կառավարման նոր ձևերը: Ագրոարդյունաբերական համալիրի կառավարման մինչև այժմ գործած մարմիններին, որոնք օժտված են դիրեկտիվ գործառույթներով, փոխարինելու են գալիս ներքևից բխող նախաձեռնությամբ ստեղծված տնտեսական կազմավորումները:

Արմատապես փոխվում են նաև նրանց գործառույթները: Այդպիսի կազմավորումների գործունեության իմաստն այն է, որ ռեալ օգնություն ցույց տրվի այն հարցերի լուծման գործում, որոնք դուրս են գալիս շրջանային կազմավորումների շրջանակներից և կոորդինացում են պահանջում ավելի բարձր մակարդակով:

Այս կապակցությամբ միանգամայն բնականորեն ծառանում է այն հարցը, թե մենք քաղաքական ռեֆորմի հաջորդ փուլում ինչպես պետք է նորովի կառուցենք մի կողմից սովետների ու նրանց գործադիր մարմինների և մյուս կողմից՝ շրջանային, մարզային և երկրամասային մակարդակի ագրարային նոր կազմավորումների փոխհարաբերությունները: Այժմ, երբ նախապատրաստվում է տեղական ինքնակառավարման և տեղական տնտեսության մասին օրենքը, այդ հարցերի ամբողջ համալիրը պետք է մանրամասնորեն կշռադատվի, հաշվի առնելով այն, որ փոխվելու է հենց սովետների վիճակը, ինչպես նաև արմատապես փոխվում է տնտեսական իրավիճակն ամբողջությամբ վերցրած գյուղում: Հետևաբար, պետք է մշակվեն փոխհարաբերությունների նոր մեխանիզմներ:

Միութենական հանրապետությունների մակարդակով ագրոարդյունաբերական համալիրի կառավարման հարցը հարկավոր է քննարկել միութենական հանրապետություններում տնտեսական և սոցիալական ոլորտի ղեկավարումը նրանց սուվերեն իրավունքների, ինքնակառավարման և ինքնաֆինանսավորման ընդլայնման հիման վրա վերակառուցելու ընդհանուր սկզբունքների մասին արդեն նախապատրաստված և հրապարակված նախագծի տեսանկյունից:

Սկզբունքորեն խոսքը ագրոարդյունաբերական համալիրի բոլոր պրոբլեմները լուծելիս միութենական հանրապետությունների իրավունքներն ընդլայնելու և իրենց ռեգիոնների բնակչության պարենավորման համար նրանց պատասխանատվությունը մեծացնելու մասին է: Բայց այս դեպքում էլ համապատասխան մարմինների ֆունկցիաները պետք է հաշվի առնեն գյուղում տնտեսական հարաբերությունների արմատական վերակառուցման էությունը: Դա նշանակում է, որ ագրոարդյունաբերական համալիրի հետ կապված կառավարման մարմինները հանրապետական մակարդակում ևս չեն կարող միջամտել կոլտնտեսությունների ու սովխոզների, ագրոարդյունաբերական համալիրների մյուս ձեռնարկությունների տնտեսական գործունեությանը: Հանրապետությունների ագրոարդները պետք է իրենց խնդիրները լուծեն տնտեսագիտական մոտեցումների և պրոցեսների կարգավորման տնտեսագիտական մեթոդների օգտագործման հիման վրա:



Ինչ վերաբերում է միութենական մակարդակով կառավարմանը, այդ հարցը ևս եղել է ամենաուշադիր քննարկման առարկա: Դրա հետևանքով ձևավորվեցին ՍՍՀՄ պետագրոարդը վերացնելու և որպես կառավարության մշտապես գործող մարմին ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի պարենի ու գնումների պետական հանձնաժողով ստեղծելու առաջարկություններ:

Նման քայլը համապատասխանում է ժողովրդական տնտեսության արմատական հարցերի լուծման մեջ կառավարության դերը մեծացնելու մեր գծին, ներառյալ նաև պատասխանատվությունը ագրոարդյունաբերական համալիրի զարգացման և երկրի պարենավորման համար:

Ընկերնե՛ր: Գյուղում տնտեսական հարաբերությունների վերակառուցումը մեզ համար ստեղծում է այդ խնդրի լուծմանը ձեռնամուխ լինելու ռեալ հնարավորություն, որը մեզ լրջորեն մտահոգում է վերջին տարիներին, բայց որտեղ մենք այդպես էլ չենք կարողացել ըստ էության շարժվել մեռյալ կետից: Ես նկատի ունեմ ագրարային հատվածում ստեղծված պոտենցիալի արդյունավետ օգտագործումը:

Իրոք, 1961—1988 թվականներին գյուղատնտեսությանը հատկացվեց 884 միլիարդ ռուբլի կապիտալ ներդրում: Այսօր ագրոարդյունաբերական համալիրի տրամադրության տակ կան վիթխարի արտադրական ֆոնդեր. մոտ 360 միլիարդ ռուբլի գյուղատնտեսության մեջ և 68 միլիարդ ռուբլի վերամշակող արդյունաբերության մեջ: Վերջին տասը տարում գյուղի էներգազինվածությունը, տեխնիկայի, պարարտանյութերի մատակարարումները ավելացել են մոտավորապես մեկուկես անգամ:

Եվ այդ վիթխարի պոտենցիալից, ինչպես ես արդեն ասացի, մենք անհրաժեշտ հատույց չենք ստանում: Դրա հետևանքով արտադրանքը թանկանում է, իսկ ֆոնդահատույցը և շահութաբերությունը գտնվում են ցածր մակարդակի վրա:

Առկա է ծախքային էկոնոմիկան իր բոլոր բացասական, հասարակության համար կործանարար հետևանքներով: Վստահ եմ, որ տնտեսավարման նոր տնտեսագիտական ձևերի անցնելու մասշտաբային աշխատանք ծավալելով, կարելի է գոյություն ունեցող նյութատեխնիկական բազայի հիման վրա (ըստ որում արդեն ամենամոտ ժամանակներս) զգալի արդյունքների հասնել գյուղատնտեսական արտադրության մեջ, ամբողջությամբ վերցրած ագրոարդյունաբերական համալիրում:

Մենք մեզ համար հենց այդպիսի հետևություն պետք է անենք ամբողջ վերլուծության հիման վրա: Գործնական աշխատանքում հենց դրանից մենք պետք է ելնենք արդեն այսօր:

Բայց, մյուս կողմից, գյուղում արտադրական հարաբերությունների վերակառուցումը, դա կարելի է վստահորեն ասել, կպահանջի նոր տեխնիկա, առաջադիմական տեխնոլոգիաների կիրառում:

Կարելի է հաստատապես կանխագուշակել. տնտեսավարման նոր ձևերը կուժեղացնեն ճնշումը էկոնոմիկայի այն ճյուղերի վրա, որոնք գյուղատնտեսությանը մատակարարում են տեխնիկա և ուրիշ ռեսուրսներ:

Առաջնագույն խնդիրը, որ հարկավոր է լուծել և լուծել անհապաղ, դա երկրագործության և անասնապահության մեքենաների համակարգերի ստեղծումն է, որպեսզի առաջիկա տարիներին ավարտվի գյուղատնտեսության կոմպլեքսային մեքենայացումը, գյուղացու աշխատանքը դարձվի ավելի արտադրողական, առավել ստեղծագործական և գրավիչ:

Մեքենայացման պրոբլեմները հատկապես սրությամբ են ծառացած այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են բանջարեղենի, ճակնդեղի, բամբակի, վուշի մշակումները: Վատ են գործերը նաև անասնապահական ֆերմաների, նախ և առաջ մանր ֆերմաների մեքենայացման բնագավառում, որտեղ ձեռքի աշխատանքի բաժինը կազմում է ավելի քան 80 տոկոս: Փաստորեն քիչ է տեխնիկան կերարտադրության մեջ, տնամերձ տնտեսությունում, լեռնային պայմաններում, մանրատված դաշտերում կատարվող աշխատանքներում, որոնց ընդհանուր մակերեսը երկրում անցնում է 30 միլիոն հեկտարից:

Տարիներ շարունակ մենք միայն արձանագրել ենք վերամշակող արդյունաբե-

րության նյութատեխնիկական բազայի թուլությունը, այդ առթիվ ընդունել որոշումներ, բայց էական բարեփոխումներ տեղի չեն ունեցել: Երկրի փաստորեն բոլոր ռեգիոններում վերամշակող ձեռնարկությունների ցանցը չի համապատասխանում գյուղատնտեսական արտադրության նույնիսկ ներկա մասշտաբներին: Իսկ չէ որ մենք պատրաստվում ենք այն ավելացնել:

Եվ բանը, ընկերներ, ոչ միայն այդ ցանցի զարգացած չլինելն է, այլև ձեռնարկությունների տեխնիկական ցածր մակարդակը, արտադրանքի խոր վերամշակման, դրա չափակշռման ու փաթեթավորման առաջադիմական տեխնոլոգիական սարքավորումների պակասը:

Հիմա մենք ի վերջո մշակել ենք, ինչպես ինձ թվում է, վերամշակող արդյունաբերության արդիականացման իրատեսական ծրագիր: Այդ նպատակով հատկացվել է 77 միլիարդ ռուբլի կապիտալ ներդրում: Այդ ծրագրի կատարմանը մասնակից են դարձել ոչ միայն քաղաքացիական մեքենաշինությունը, այլև պաշտպանական արդյունաբերության ճյուղերը, ծավալվում է համագործակցությունը սոցիալիստական և կապիտալիստական երկրների հետ:

Աշխատանքը տեղից շարժվել է, դրա մասշտաբները աճում են, և հիմա վստահություն կա, որ այդ խնդիրները կարելի է հիմնավորապես լուծել արդեն ամենամոտ ժամանակներս: Բայց այստեղ հարկավոր են պատվիրատուների, նախագծողների և մեքենաշինարարների համաձայնեցված ու զգալի ջանքեր: Իսկ առայժմ իրավիճակն այնպիսին է, որ 1986—1988 թվականներին նույնիսկ կոմպլեկտային ներմուծված սարքավորումների օգտագործմամբ կառուցված ձեռնարկությունների գծով կապիտալ ներդրումները իրացվել են ընդամենը 78 տոկոսով:

Հայտնի է, թե որքան սրությամբ է ծառացած պարենավորման պրոբլեմը այնպիսի խոշոր արդյունաբերական կենտրոններում, ինչպիսիք են Կրասնոյարսկը, Նովոկուզնեցկը, Նովոսիբիրսկը, Սվերդլովսկը, Յարոսլավլը: Բայց այստեղ էլ վերամշակող արդյունաբերության օբյեկտների շինարարության նկատմամբ գոյություն ունեցող վերաբերմունքը այլ կերպ չես անվանի, քան զայրացուցիչ: Դե, իսկ որտե՞ղ են տեղական սովետները: Որտե՞ղ են կուսակցական կազմակերպությունները և կոմունիստ ղեկավարները:

Ոչ, ընկերներ, գործի նկատմամբ նման վերաբերմունքի դեպքում մենք հեռու չենք գնա: Առաջ քաշելով մեքենաների, ըստ որում ամենատարբեր մեքենաների (թե՛ հողագործության, թե՛ անասնապահության համար, թե՛ վերամշակող արդյունաբերության, թե՛ վարձակալների ու կոոպերատորների համար, թե՛ անձնական օժանդակ տնտեսությունների համար և թե ե՛րկրի տարբեր գոտիների պայմանների համար) թողարկման, հետագա ավելացման խնդիրը, մենք պետք է սրությամբ դնենք տեխնիկայի, սարքավորումների և արտադրության մյուս միջոցների որակի ու հուսալիության հարցը:

Ագրարային հատվածի աշխատողները արդարացիորեն նշում են, որ մեքենաշինարարները, օգտվելով իրենց մենաշնորհ վիճակից, հաճախ գյուղին պարտադրում են հնացած կոնստրուկցիաներ, հուսալիության և արդյունավետության ցածր մակարդակ ունեցող թանկարժեք մեքենաներ: Դա քայքայիչ է ոչ միայն գյուղատնտեսության, այլև ամբողջ երկրի համար: Չէ՞ որ խոսքը վիթխարի չափերի հասնող արտադրության մասին է, որտեղ աշխատում են մեծ կոլեկտիվներ, գործում խոշոր կարողություններ, օգտագործվում է շատ մետաղ, վառելիք, էլեկտրաէներգիա: Եվ այս ամենը զգալի չափով արժեզրկվում է մեքենաշինական արտադրանքի ցածր որակի հետևանքով:

Անորակ տեխնիկան գյուղատնտեսությանը ստիպում է պահել նորոգման անչափ թանկ նստող ծառայություն, որտեղ հիմա զբաղված է ավելի քան մեկ միլիոն մարդ՝ ավելի շատ, քան ամբողջ գյուղատնտեսական մեքենաշինության մեջ: Ոչ մի ուրիշ երկիր իրեն թույլ չի տալիս նման շռայլություն:

Դա ինչի՞ է նման. մենք աշխարհում բոլորից շատ ենք տրակտոր թողարկում: Եվ միևնույն ժամանակ ամեն կողմից բողոքներ են լսվում դրանց պակասի վերաբերյալ: Դա արտադրության հետամնաց կառուցվածքի, մեքենաների ցածր որակի ուղղակի հետևանքն է:

Մեքենաշինարարները հաճախ ասում են, որ կոլտնտեսություններում ու սովխոզներում տեխնիկան արագորեն շարքից դուրս է գալիս կադրերի անբավարար մասնագիտական մակարդակի, շահագործման և նորոգման վատ ծառայության պատճառով: Կարծում եմ, սրանում ճշմարտության բաժին կա: Բայց, ընկերներ, չէ՞ որ առաջավոր տնտեսություններում նույնպես, որոնք ունեն թե՛ որակյալ կադրեր և թե՛



նորոգման անհրաժեշտ բազա, մեքենաների որակի առթիվ գանգատները պակաս չեն:

Մի՞թե մենք կարող ենք այսուհետև էլ համակերպվել այն բանին, որ հայրենական տեխնիկան շատ պարամետրերով զիջում է արտասահմանյան նմուշներին: Այժմ հարցն այսպես է դրված. ագրարային հատվածը տեխնիկայով ապահովել, նշանակում է՝ նախ և առաջ բարձրացնել դրա որակն ու հուսալիությունը:

Ըստ երևույթին, կառավարությունը, նրա մեքենաշինության բյուրոն, ՍՍՀՄ պետպլանը պետք է գիտնականների և մասնագետների, արտադրողների և սպառողների մասնակցությամբ արմատապես լրամշակեն այդ կարևորագույն պետական պրոբլեմը և գտնեն դրա լուծումը:

Այստեղ յոլա չենք գնա առանց տեխնիկական քաղաքականության հետագա կառուցվածքային ու որակական փոփոխությունների: Մեքենաշինարարները պետք է դրվեն այնպիսի տնտեսական պայմանների մեջ, որոնք կբացառեին վատ տեխնիկայի արտադրությունը:

Ինչպես ցույց է տալիս փորձը, անպետք և ոչ պիտանի մեքենաների պարտադրման դեմ, արտադրողների մենատիրության դեմ պայքարելու արդյունավետ միջոց է մեծածախ առևտուրը: Այն ավելի քան լավ է համապատասխանում նոր տնտեսական հարաբերություններին:

Խոսելով պարենային պրոբլեմի լուծման տեսանկյունից ագրոարդյունաբերական համալիրի արդիական բազայի ձևավորման մասին, չի կարելի շրջանցել նաև գյուղատնտեսական մթերքները հավաքելիս, փոխադրելիս, պահպանելիս ու վերամշակելիս թույլ տրվող կորուստների հարցը:

Հացահատիկի բերքահավաքի ու մշակման ժամանակ մեր կորուստները հասնում են 15, իսկ երբեմն 20 միլիոն տոննայի: Մոտավորապես նույնքան է կորչում պահպանության ու վերամշակման փուլում: Իսկ ամբողջությամբ վերցրած, ընկերներ, դա հավասար է արտասահմանում մեր գնումների ծավալներին:

Մսի կոմբինատների ցանցը զարգացած չլինելու և տեխնիկական ցածր մակարդակի, հումքի անարդյունավետ օգտագործման հետևանքով ամենահամեստ հաշվարկներով մսի կորուստները կազմում են մոտ մեկ միլիոն տոննա: Եվ դա սննդամթերքների սուր դեֆիցիտի պայմաններում: Այսպիսին են պրոբլեմի մասշտաբները:

Ընդգծելով վերամշակող արդյունաբերության արդիական բազայի ստեղծման կարևորությունը, պետք է նկատի ունենալ, որ շատ բան հիմնվում է տնտեսավարման մեթոդների վրա, գործի նկատմամբ մարդկանց վերաբերմունքի վրա, վերջնական արդյունքներով նրանց թույլ շահագրգռության վրա: Եթե մարդուն դնեին տնտեսական ուրիշ պայմանների մեջ, ապա նա չէր համակերպվի կորուստների, անտնտեսվարության և վատնողության հետ: Ուրեմն պետք է լուծել նաև այդ խնդիրը:

Ընկերնե՛ր: Հիմա, երբ մենք գյուղում արմատապես վերակառուցում ենք տնտեսական հարաբերությունները, բարենպաստ իրադրություն է ստեղծվում, որպեսզի գյուղատնտեսությունն օրգանապես միացնենք գիտատեխնիկական հեղափոխությանը, ապահովենք անցումը նոր տեխնոլոգիաների, կենսատեխնոլոգիայի, սելեկցիայի, ագրոքիմիայի, այն ամենի նվաճումների ակտիվ օգտագործման, ինչը պետք է զգալիորեն մեծացնի գյուղական աշխատանքի արդյունավետությունը: Ի՞նչ է վկայում համաշխարհային փորձը: Պարենային ռեսուրսների ավելացման գործում շատ երկրների խոշոր հաջողությունները զգալի չափով կախված են գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների յուրացման հետ՝ այն բանի հետ, ինչն ստացել էր «կանաչ հեղափոխություն» անվանումը:

Գիտական նվաճումների օգտագործման նկատմամբ ավելի մեծ ուշադրություն հանդես բերելու անհրաժեշտությունը թելադրվում է նաև այն կոնկրետ բնական պայմաններով, որոնցում մենք վարում ենք գյուղատնտեսությունը: Ինչպես հայտնի է, փոքր բացառությամբ, դրանք առանձնապես բարենպաստ չես անվանի: Բայց չէ՞ որ մենք եղանակն ու կլիմայական պայմանները չենք փոխի: Խնդիրն այն է, որ սովորենք գործել ռեալ իրավիճակում, ապահովել երկրի կայուն պարենավորումը նույնիսկ ամենաաննպաստ տարիներին:

Ինչո՞վ է կարևոր առաջավոր տնտեսությունների օրինակը: Նրանով, որ նա համոզում է գիտության նվաճումների նոր տեխնոլոգիայի օգտագործումը տնտեսավարման, աշխատողների խթանման նոր մեթոդների հետ զուգակցելու անհրաժեշտությունը:

Մի խոսքով, գիտությունը պետք է դառնա տնտեսական հարաբերություններում և ագրարային հատվածի նյութական բազայում արմատական վերափոխումների օրգանական բաղկացուցիչ մասը:

Գիտության դերը պետք է ուրիշ լինի, ձեռնարկությունների հետ նրա փոխգործողության սկզբունքները անհրաժեշտ է կառուցել փոխադարձ շահագրգռության վրա, տնտհաշվարկի վրա:

Կարծում եմ, որ հենց դա է, որ մեզ չի բավականացնում: Մենք անընդհատ մոտենում ու չենք հասնում: Շատ կենսունակ է եղել «գիտություն հանուն գիտության» գաղափարը, որը անտեսում է պրակտիկան, արտադրության արդյունավետության բարձրացման կոնկրետ խնդիրների լուծումը:

Խոսելով այս ամենի մասին, չեմ ուզում ինչ-որ կերպ նսեմացնել այն աշխատանքի նշանակությունը, որ կատարում են առաջավոր հողագետ գիտնականները: Բայց այս ավանդը շատ ավելի նշանակալի և արդյունավետ կլիներ, եթե գիտական կոլեկտիվները կարողանային լայնորեն անմիջական կապեր հաստատել արտադրության հետ:

Ուստի մեկ անգամ ևս կընդգծեմ, այստեղ հիմնական հարցը, այնուամենայնիվ, գիտահետազոտական կազմակերպությունների անցումն է տնտհաշվարկի, պայմանագրային հարաբերությունների:

Ինչպես մյուս բոլոր կոլեկտիվները, գիտական հիմնարկները նույնպես պետք է միջոցներ վաստակեն և դրանց հաշվին ֆինանսավորեն իրենց հետագա զարգացումը, ընդլայնեն գիտական հետազոտությունների խթանման, գիտնականների նյութական խրախուսման հնարավորությունները: Նման մոտեցումը անմիջապես ամեն ինչ իր տեղը կդնի, ցույց կտա, թե ով՝ ով է և ավելի արագ ու շոշափելի արդյունքներ կտա:

Իհարկե, դա գիտությունից կպահանջի իր աշխատանքի վճռական վերակառուցում, այնպիսի հետազոտությունների ծավալում, որոնք կապված են ամենից առաջ պարենային պրոբլեմի լուծման հետ:

Կարծում եմ, որ այստեղ շատ բան կարող են անել գիտաարտադրական միավորումները, արտադրական և գիտաարտադրական համակարգերը:

Բայց սա նույնպես, ընկերներ, մեծ վերակառուցում է: Եվ մեր ագրարային գիտությունը իրավունք ունի ակնկալելու, որ իրեն կհասկանան ու կպաշտպանեն կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները, մանավանդ այն հարցում, որ վերաբերում է նրա նյութատեխնիկական բազայի ձևավորմանը:

Կյանքը նոր խնդիրներ է առաջադրում նաև հասարակական գիտությունների բնագավառի հետազոտողներին: Անհրաժեշտ է սեփականության, կոոպերացիայի, վարձակալության, ապրանքադրամական հարաբերությունների, տարբեր սոցիալական խմբերի շահերի պրոբլեմների հետազոտումը: Ըստ էության «սպիտակ բիծ» է տնտեսական ու սոցիալական կանխատեսումը: Անբավարար են հետազոտված կառուցվածքային տեղաշարժերի, համամասնությունների և հաշվեկշռայնության օրինաչափությունները:

Ընկերնե՛ր, այսօր հասարակությունը ակտիվորեն ներգրավվել է էկոլոգիական խնդիրների լուծման մեջ: Սովետական հասարակայնության նման դիրքորոշումը պետք է ամեն կերպ ողջունել ու պաշտպանել: Իսկապես, խոսքը պետք է վերաբերի յուրաքանչյուր տնտեսական լուծման գիտական հիմնավորվածությանը, բազմակողմ հաշվեկշռվածությանը: Այստեղ ուրիշ մոտեցումներ անընդունելի են:

Մենք հենց այդպես էլ պետք է գործենք, լուծելով գյուղատնտեսության, ագրոարդյունաբերական համալիրի հետագա զարգացման հարցերը, հոգ տանենք, որ տնտեսական գործունեությունը ոչ թե վնաս հասցնի շրջակա միջավայրին, այլ, ընդհակառակը, նվազեցնի էկոլոգիական լարվածությունը և լուծի այդ բնագավառում կուտակված պրոբլեմները:

Վերջին ժամանակներս շատ են դիսկուսիաները, հաճախ՝ շատ զգացմունքային մելիորացիայի օգուտի ու վնասի մասին: Այս սուր հարցադրումների համար պատճառներ շատ կան. ոռոգվող հողերի թե՛ նախագծման և թե՛ շինարարության մեջ քիչ չեն վրիպումները:

Ասենք, մելիորացված հողերն էլ մի շարք դեպքերում անարդյունավետ են օգտագործվում: Դրանց մի զգալի մասը պարզապես դուրս է մնացել շրջանառությունից, ընդ որում անդառնալիորեն:

Բայց դրանից, մելիորացիայի՝ որպես այդպիսինի, անընդունելիության մասին հետևություն անելը ճիշտ չի լինի: Բնական պայմանները, որոնցում մենք վարում



ենք գյուղատնտեսությունը, բարդ են. մի դեպքում անհնար է առանց ոռոգման, ուրիշ դեպքում՝ առանց ցամաքեցման: Ամբողջ բազմադարյան փորձը վկայում է, որ մելիորացիան և ամենից առաջ ոռոգումը շատ երկրներում գյուղատնտեսական մթերքների կայուն, երաշխավորված արտադրության վճռական պայմանն են:

Լայն մասշտաբներով մելիորացիա է իրականացվում Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Չինաստանում, Հնդկաստանում, Եվրոպայի երկրներում, ըստ էության՝ ամենուրեք: Աշխարհում ոռոգվող հողերի ընդհանուր տարածությունը, միջազգային կազմակերպությունների գնահատմամբ, այսօր կազմում է ավելի քան 200 միլիոն հեկտար:

Այսպիսով, խոսքը ուրիշ բանի մասին է՝ այն մասին, որ մելիորացում իրականացնելիս վնաս չհասցվի բնությանը, թույլ չտրվի հողերի վատացում, ժողովրդական միջոցների վատնում:

Իսկ մեզ մոտ շատ ռեգիոններում հենց դա էլ տեղի է ունեցել. ծախսել են միլիարդների հասնող միջոցներ, բայց հարկ եղած հատույցը չեն ստացել: Ընդ որում, մի շարք դեպքերում էկոլոգիային քիչ վնաս չի պատճառվել:

Կարծում եմ, պետք է իմաստավորել ստեղծված իրավիճակը, ուշադրությամբ խորամուխ լինել դրանում և մշակել հստակ, գիտականորեն հիմնավորված մոտեցումներ: Բայց արդեն այժմ պարզ է, որ առաջին հերթին պետք է պատշաճ կարգուկանոն հաստատել մելիորացված հողերում, անհրաժեշտ միջոցառումներ անցկացնել հողի ու ջրի ռացիոնալ օգտագործման ուղղությամբ: Դրա հետ մեկտեղ, չհետաձգել կուտակված էկոլոգիական պրոբլեմների լուծումը:

Նման իրավիճակ է ստեղծվել նաև քիմիացման պրոբլեմների շուրջը: Ինչու՞: Պատճառը նույնն է. պատշաճ ուշադրություն չկա տեխնիկական և տեխնոլոգիական լուծումների նկատմամբ, որոնք բացառեին բնակության միջավայրի վրա քիմիական արգասիքների ինչպես արտադրության, այնպես էլ օգտագործման բացասական ներգործությունը: Ուրեմն, նորից խոսքը որոշումներ ընդունելիս կշռադատված մոտեցման մասին է:

Իհարկե, այսօր առանց քիմիայի անհնար է: Բայց մենք պետք է վճռականորեն բարձրացնենք արտադրության մեջ, փոխադրելիս, պահպանելիս և հատկապես հողը սնուցելիս քիմիայի միջոցների օգտագործման կուլտուրան և պատասխանատվությունը: Ասենք, մեր կադրերն էլ հաճախ անհրաժեշտ որակավորում չունեն: Այս ամենը հարկավոր է հմտորեն և արագորեն շտկել:

Եվ էլի մեկ բան: Մի շարք պատճառներով մենք դադարել ենք պատշաճ կերպով գնահատել հողը: Ռեգիոնների մեծ մասում նվազում է հողերի բերրիությունը: Մեծ հողատարածություններ անապատի են վերածվել, ենթարկվել են հողմային և ջրային էռոզիայի: Շատ շրջաններում անում են աղուտների ու թթվուտների զանգվածները:

Այլևս, ընկերներ, այսպես չի կարելի վարվել հողի հետ: Ժամանակն է նախապատրաստել և հաստատել օրենք հողի և հողօգտագործման մասին: Հարկավոր է հուժեղացնել մեր օրենսդրական միջոցառումները վատնողական օգտագործումից հողահանդակների պաշտպանության համար: Բայց դա էլ քիչ է: Հարկավոր է ավելի մեծ ուշադրություն նվիրել հողօգտագործման գիտական մեթոդներին, ցանքաշրջանառության, դաշտապաշտպան տեխնոլոգիաների արմատավորմանը: Եվ դա բոլոր հողօգտագործողների ուղղակի պարտականությունն է:

Էկոլոգիական պրոբլեմների բարդության և կարևորության ըմբռնումը մեզ հանգեցրել է ազգային էկոլոգիական ծրագիր ստեղծելու անհրաժեշտությանը, որի իրականացումը կվերացներ կուտակված հարցերը և նոր մոտեցումներ երևան կբերեր ժողովրդատնտեսական խնդիրները լուծելիս: Կարևոր է, որ ծրագրի մշակումը կատարվի հիմնավորապես, դեմոկրատական լայն հիմքի վրա, հրապարակայնության պայմաններում, հասարակայնության, պրակտիկ աշխատողների, գիտնականների մասնակցությամբ:

Մի քանի խոսք ինվեստիցիոն քաղաքականության մասին: Այստեղ նոր իրավիճակ է ստեղծվում: Ժամանակն է այնպես կառուցել ինվեստիցիոն քաղաքականությունը, որ այն արտացոլի ագրարային հատվածի զարգացման իրական պահանջմունքները, օգնի վերացնելու «նեղ տեղերը», ապահովի թե՛ նյութատեխնիկական բազայի, թե՛ սոցիալական ոլորտի համամասնական զարգացումը

Ձեզ բաժանված փաստաթղթերի նախագծերում առաջարկվում է կապիտալ ներդրումներն առաջին հերթին օգտագործել գյուղատնտեսության տեխնիկական մակարդակի բարձրացման, վերամշակող արդյունաբերության, փոխադրման և պահ-

պանման ոլորտի արմատական վերահանդերձավորման, կորուստների շեշտակի կրճատման համար:

Մենք պետք է ապահովենք գյուղատնտեսական մթերքի «արտադրություն-փոխադրում-պահպանում-վերամշակում-վաճառահանում-սպառում» ամբողջ շղթայի հաշվեկշռված զարգացումը:

Կապիտալ ներդրումների այսպիսի կառուցվածքը հնարավորություն կընձեռի ավելի պակաս ծախսերով ստանալ ավելի մեծ արդյունք, նախ և առաջ կորուստները կրճատելու և վերամշակումը խորացնելու հաշվին: Նախատեսվում է տասներեքերորդ հնգամյակում գյուղատնտեսության արտադրանքի 16 տոկոս աճի պայմաններում պարենային ապրանքների վերջնական ստացումը մեծացնել 26—30 տոկոսով:

Արդիական ինվեստիցիոն քաղաքականությունը պետք է հաշվի առնի նաև մի այլ բան՝ ֆինանսավորման աղբյուրների էական փոփոխությունը: Եթե նախկինում կապիտալ ներդրումները հիմնականում հատկացվում էին վերևից, բաշխվում էին կենտրոնից ըստ ռեգիոնների և ըստ ագրարային հատվածի զարգացման ուղղությունների, ապա հիմա անհրաժեշտ միջոցները պետք է վաստակեն ամենից առաջ իրենք՝ արտադրական կոլեկտիվները:

Մենք արդեն չենք կարող այնպես խստորոշ կանոնակարգել կապիտալ ներդրումների համամասնությունները: Չէ՛ որ յուրաքանչյուր ռեգիոնում և նույնիսկ յուրաքանչյուր տնտեսությունում իրավիճակը տարբեր է: Եվ տնտեսությունները պետք է իրենք լուծեն այն հարցը, թե ինչպես և ինչի վրա ծախսեն կապիտալ ներդրումները: Մի դեպքում շեշտը պետք է դրվի ճանապարհային շինարարության վրա, մի այլ դեպքում՝ վերամշակման, երրորդ դեպքում՝ սոցիալական ոլորտի վրա: Կարծում եմ, այսպիսի հարցադրումը հիմնավորված է և համապատասխանում է ինքնուրույնության զարգացման, տնտեսական որոշումներ կայացնելու ասպարեզում ապակենտրոնացման կուրսին:

Եվ այն, ինչի մասին մենք պետք է հոգանք, անհրաժեշտ ռեսուրսային բազայի ստեղծումն է, որպեսզի արտադրական կոլեկտիվների միջոցները կարողանային նյութականանալ հարկավոր մեքենաների, սարքավորումների և այլ ռեսուրսների ձեռք բերումով:

Այժմ, ընկերներ, անցնում եմ մի շատ ցավագին ու սուր հարցի, որը շոշափում է միլիոնավոր մարդկանց ամենօրյա կյանքը. դա գյուղի սոցիալական վերափոխումն է: Անհրաժեշտ է խոստովանել, որ այդ նպատակներին հատկացվող ռեսուրսները թույլ չեն տվել հաղթահարել գյուղի խոր և խրոնիկական հետ մնալը քաղաքից: Գյուղում անհամեմատ վատ վիճակում է բժշկական, առևտրական և կուլտուր-կենցաղային սպասարկումը, իսկ բնակարանային ֆոնդի տեխնիկական զինումը 2—5 անգամ զիջում է քաղաքայինին:

Գյուղացիական կացութաձևը կորցրել է իր գրավչությունը և հարգը: Մարդիկ, ամենից առաջ երիտասարդները, հեռանում են գյուղից: Գյուղական վայրերից բնակչության արտահոսքը երկար տարիներ գերազանցել է բնական աճին: Գյուղում աշխատունակ տարիքում մարդկանց մահացությունը 20 տոկոսով, իսկ երեխաներինը 50 տոկոսով ավելի է, քան քաղաքում:

Գյուղին մեծ վնաս հասցրեց արտադրողական ուժերի տեղաբաշխման այն սխալ քաղաքականությունը, որը հիմնականը դարձրել էր նորանոր արդյունաբերական ձեռնարկությունների կառուցումը խոշոր քաղաքներում: Բանն այնտեղ հասավ, որ գյուղատնտեսական արտադրանքի նույնիսկ վերամշակումը, որն անմիջականորեն կապված է իր նյութական բազայի հետ, զարգացվում էր արդյունաբերական կենտրոններում:

Գյուղում չքացել են կաթի, աղյուսի փոքր գործարանները, փռերը և հարկավոր այլ արտադրություններ: Վերջին տասնամյակներում անապարանքով փակվում էին տարրական դպրոցները, բժշկական հիմնարկները, գյուղական խանութները:

Գյուղի կարիքների մոռացումը, քաղաքների հիպերտրոֆիկ զարգացումը հանգեցրին սոցիալական մեծ շեղվածքների և բարդացրին ամբողջ ռեգիոնների էկոնոմիկայի բնականոն գործընթացը: Ի վերջո նեղացավ գյուղական բնակիչների աշխատանքի ներդրման ոլորտը, գյուղից կտրվեցին առանց այն էլ սահմանափակ աշխատանքային ռեսուրսները: Վերջին հաշվով դա գերլարվածություն ստեղծեց նաև քաղաքներում, խիստ բացասաբար ազդեց պարենավորման վրա:

Ամենատագնապալին այն է, որ, չնայած գյուղի ծանր կացությանը, սոցիալական շինարարության պլաններն այնտեղ սահմանվում են բացահայտորեն ցածր ցուցանիշներով: Խոսքով բոլորը հանդես են գալիս գյուղի սոցիալական վերափոխումն արագացնելու օգտին, իսկ գործնականում առկա են անտարբերությունը և ուղղակի ասեմ՝ անպատասխանատվությունն ու անհոգությունը:



Ձեր քննարկմանը, ընկերներ, ներկայացվում է որոշման նախագիծ, որը սահմանում է գյուղի սոցիալական զարգացումն արագացնելու միջոցառումներ: Գլխավոր առաջնությունները տրված են բնակարանային շինարարությանը և կոմունալ հարմարությունների ստեղծմանը: Պետք է ստեղծել գյուղական տնաշինության ժամանակակից բազա, լայնորեն մասնակից դարձնել քաղաքի շինարարներին, ըստ ամենայնի զարգացնել բնակարանների կառուցումը տնտեսական եղանակով, ինչպես նաև անհատական շինարարությունը: Գյուղում բնակարանների գործարկման տեմպերը տասներեքերորդ հնգամյակում պետք է առնվազն կրկնապատկվեն: Հենց սա էլ հարկավոր է ելակետ դարձնել:

Հարկավոր է լայնորեն ծավալել գազիֆիկացման, ջերմաֆիկացման, էլեկտրիֆիկացման, ջրամատակարարման աշխատանքները: Գյուղի բնակիչները արդարացիորեն հարց են դնում՝ ինչո՞ւ այսպիսի հսկայական ռեսուրսների պայմաններում, որպիսիք ունի երկիրը, գյուղը պահում են սովաբաժնով և գյուղացուն իր բոլոր պրոբլեմների հետ թողնում են միայնակ:

Մեզ ըստ էության սկզբունքորեն նոր մոտեցում է հարկավոր գյուղի կոմունալ բարեկարգման հարցերի լուծման նկատմամբ: Զարգացած երկրների մեծ մասում այդ հարցերը լուծվում են կենսապահովման ինքնավար համակարգերի միջոցով: Մի խոսքով՝ հարկավոր է այս ամենին ուշի-ուշով խորամուխ լինել:

Պետք է նոր հայացքով նայել գյուղական տանը և գյուղական տնամերձին: Նախ և առաջ պետք է վերացնել շինությունների չափերի, դրանց հարկայնության և ճարտարապետության ամեն կարգի սահմանափակումները: Թող մարդիկ կառուցեն այնպես, ինչպես իրենք են ուզում: Գեղեցիկ, հաստատուն, հարմարավետ տունը, որը կառուցվել է՝ նկատի ունենալով գյուղի բնակիչների բազում սերունդների, իրոք կդառնա հայրենի տուն: Հենց այդպիսի տներն կկերպարանափոխեն գյուղը:

Անհետաձգելի խնդիրներից մեկը ճանապարհների կառուցումն է: Մենք այս ելակետն ենք ունեցել նոր պլանները մշակելիս: Հնգամյակի նախագծով 1991—1995 թվականներին երկրում պետք է կառուցվի 226 հազար կիլոմետր պինդ ծածկույթով միայն ներտնտեսային ճանապարհ, իսկ կոլտնտեսությունների ու սովխոզների բոլոր կենտրոնական դաստակերտները, հարմարավետ ճանապարհներով միացվելու են շրջկենտրոնների հետ: Ստեղծվելու են կանոնավոր տրանսպորտային կապեր: Ինչպես հայտնի է, ընդունվել է ՌՍՖՍՀ-ի ոչսևահողային գոտում ճանապարհաշինության արմատական բարելավման հատուկ ծրագիր: Այդ նպատակներին հատկացված է ավելի քան 35 միլիարդ ռուբլի կապիտալ ներդրում:

Գյուղի սոցիալական վերափոխումն ընդգրկում է դպրոցների, հիվանդանոցների, մշակութային, մարզական հիմնարկների, ինչպես նաև առևտրի ու կենցաղսպասարկման ձեռնարկությունների լայն շինարարություն: Բնակչության սեզոնային պարապությունը կարելի է զգալի չափով թուլացնել օժանդակ արտադրությունների և տնայնագործության զարգացման, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղերի բացման հաշվին՝ հատկապես ժողովրդական սպառման ապրանքներ թողարկելու համար: Պետական նշանակության հարց է գյուղի աշխատավորուհու աշխատանքի ու կենցաղի պայմանների արմատական բարելավումը, որովհետև նրա ուսերին է ընկած թե՛ հանրային և թե՛ տնային տնտեսությունը: Այս ամենը հարկավոր է անել, ընկերներ: Ընդ որում՝ անհետաձգելիորեն և լուրջ ծավալումով:

Պլենումի նախապատրաստման ընթացքում կուսակցության գյուղական շրջանային կոմիտեների քարտուղարները, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարները սրությամբ էին առաջադրում կոլտնտեսականների սոցիալական ու կենսաթոշակային ապահովությունը բարելավելու հարցը: Այժմ ավարտվում է կենսաթոշակների մասին նոր օրենքի նախագծի մշակումը, և նրանում հարկավոր է գտնել այդ հարցերի արդարացի լուծումը:

Հատուկ հոգատարության առարկա է լքված շրջանների և այն տարածքների ապագան, որտեղ միգրացիայի պրոցեսները առայժմ չի հաջողվում կանգնեցնել: Այստեղ հավանաբար անկարելի է յոլա գնալ առանց այնպիսի նպատակամետ պետական ծրագրի, որը խթաներ աշխատավորների տեղափոխվելը այլ ռեգիոններից և նրանց համար ստեղծեր նոր վայրում նորմալ կյանքի անհրաժեշտ պայմաններ:

Դուք հավանաբար ուշադրություն եք դարձրել, որ նախագծերում այս առթիվ

արվում են կոնկրետ առաջարկություններ: Դրանք ընդգրկում են այնպիսի հարցեր, ինչպիսիք են բարեկարգ բնակարանների ու տների կառուցումը և հետագայում արտոնյալ գներով դրանց վաճառքը՝ որպես անձնական սեփականություն, սեփական տների կառուցման խրախուսումը, դրա համար շինանյութերի և արտոնյալ վարկերի հատկացումը, միանվագ նպաստները տնտեսական օժանդակ շինարարության համար, եկածների անհատույց ապահովումը անասուններով և թռչուններով: Առաջադրվում է քաղաքներում բնակարանները նրանց թողնելու հարցը, ովքեր որոշել են աշխատել գյուղում:

Կարծում ենք՝ նման մոտեցումը արձագանք կգտնի քաղաքների ու գյուղերի բնակիչների շրջանում, հատկապես այն ռեգիոններում, որտեղ աշխատանքային ռեսուրսների ավելցուկ կա:

Գյուղում սոցիալական վերափոխումների այսպիսի մասշտաբային և նպատակամետ ծրագիրը կպահանջի հսկայական ջանքեր ամբողջ հասարակությունից, ուշադրություն և հաստատակամ աշխատանք կուսակցական կազմակերպություններից, ժողովրդական դեպուտատների սովետներից:

## IV

Այսպիսով, ընկերներ, ձեր քննարկմանն են առաջարկվում այնպիսի միջոցառումներ, որոնք արմատական շրջադարձ են նախատեսում ՍՄԿԿ-ի ագրարային քաղաքականության մեջ: Խոսքը վերաբերում է քաղաքական ու սոցիալ-տնտեսական այնպիսի մասշտաբային վերափոխումների, որոնք համապատասխանում են գյուղի ու քաղաքի, գյուղացու, բանվորի ու մտավորականի կենսական շահերին, այլ խոսքով՝ մեր ամբողջ հասարակության շահերին:

Երկիրը կանգնած է գյուղում կատարվելիք խոր վերափոխումների առջև: Եվ միամտություն կլիներ կարծել, թե դրանք կարելի կլինի իրագործել հեշտ ու հանգիստ, ասես ինքնիրեն:

Ո՜չ, կպահանջվի աշխատանք, ընդ որում՝ մեծ, լարված, համբերատար աշխատանք թե՛ ագրարային նոր քաղաքականության իմաստն ու նշանակությունը պարզաբանելու, մեր կադրերի վճռական վերակողմնորոշման ուղղությամբ և թե՛ կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների գործունեության մեթոդների ու մոտեցումների արմատական փոփոխման ուղղությամբ:

Այդ աշխատանքի կարևորագույն քաղաքական հատկանիշը լիակատար հրաժարումն է ուժի ու ճնշման մեթոդներից, գյուղում վերակառուցման արհեստական արագացումից: Մենք լուրջ սխալ թույլ կտանք, եթե դույզն իսկ շեղվենք դեպի վարչարարություն: Ղեկավարման այդպիսի մոտեցումը լիովին վարկաբեկվել է և հանգեցրել ճգնաժամային երևույթների ագրարային հատվածում, պարենավորման այժմյան վիճակին:

Նոր քաղաքականության ելակետը պետք է լինի գյուղում տնտեսական հարաբերությունների վերակառուցման, տնտեսության ինքնուրույն վարման գիծը, այնպիսի ձևերի բազմազանությունը, որոնք լիակատար ազատություն տան մարդու նախաձեռնությանը: Եվ, անտարակույս, այս գիծը պետք է ուղեկցվի անդուլ ուշադրությամբ գիտատեխնիկական առաջադիմության նկատմամբ, գյուղացու աշխատանքի ու կենցաղի պայմանների, գյուղի սոցիալական վերափոխման նկատմամբ:

Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է ղեկավարել չհրամայելով, գործել մարդկանց հետ տարվող հմուտ աշխատանքի միջոցով, ձգտելով, որ նրանք գիտակցեն վերափոխումների անհրաժեշտությունը, ամրապնդելով այն վստահությունը, որ միայն նրանք իրենք կարող են և պետք է տնօրինեն իրենց բախտը: Դա կօգնի թե՛ տնտեսական պրոբլեմի լուծմանը և թե՛ հետագա քայլ կդառնա սովետական հասարակության դեմոկրատական զարգացման ուղղությամբ:

Նոր ագրարային քաղաքականությունը պետք է իրավական կայուն հիմք ստանա, որպեսզի կոլտնտեսականները, սովխոզների, մյուս ձեռնարկությունների աշխատողները, կոոպերատորները, վարձակալները, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր աշխատավորները վստահ լինեն նոր քաղաքականության կայուն և երկարաժամկետ լինելուն:

Այս ամենի հետևում կանգնած են քաղաքական, սոցիալական, տնտեսական, կազմակերպական, կուլտուր-կրթական լուրջ պրոբլեմներ, որոնք հարկավոր է իմաստավորել և ձեռնամուխ լինել դրանց գործնական լուծմանը:



Միանգամայն օրինաչափ է այսպիսի հարցը՝ իսկ ինչի՞ց սկսել, առաջին հերթին ինչի՞ն ձեռնամուխ լինել: Կարծում եմ՝ հապճեպություն կցուցաբերեինք, եթե այստեղ՝ պլենումում սկսեինք դեղատոմսեր տալ կյանքի բոլոր դեպքերի համար: Չէ՞ որ նոր ագրարային քաղաքականության իրագործումը տեղի է ունենալու այս կամ այն ռեգիոնի, այս կամ այն տնտեսության կոնկրետ պայմաններում:

Որոշ կոլեկտիվներ արդեն կուտակել են տնտհաշվարկային աշխատանքի փորձ, կիրառել են ընտանեկան կապալ և վարձակալական ձևեր: Որոշ տնտեսություններ էլ դեռ նոր են հարմարվում նոր խնդիրներին: Միանգամայն այլ իրավիճակ է վնասաբեր տնտեսություններում, լքված գյուղերում, որտեղ սրությամբ ծառացած է կադրերի պրոբլեմը:

Եվ, այնուամենայնիվ, հավանաբար բոլոր կուսակցական կազմակերպություններին, աշխատավորական կոլեկտիվներին կարելի է խորհուրդ տալ՝ հարկավոր է հավաքվել և հանգամանորեն քննարկել նոր ագրարային քաղաքականության հիմնական դրույթները, պլենումի փաստաթղթերը, որոշակիություն մտցնել տեղական պայմանները մանրակրկիտ կերպով հաշվի առնելու հիման վրա տնտեսավարման ձևերի ընտրության հարցում:

Հասկանալի է, թե այս գործում որքան մեծ ու անփոխարինելի է կուսակցական կազմակերպությունների դերը: Նոր ագրարային քաղաքականության իրագործման ընթացքում պետք է բացահայտվի կուսակցական աշխատանքի, կուսակցական կոմիտեների գործունեության ոճի, մեթոդների ժամանակակից բովանդակությունը: Նրանք պետք է մարդկանց համոզեն տնտեսավարման նոր ձևերի առավելություններին:

Մի խոսքով՝ հարկավոր է գործել ամենալայն դեմոկրատիզմի հիման վրա: Այլ ուղի չկա:

Առաջարկվող քաղաքականության լուրջ իմաստավորման համար ժամանակ կպահանջվի: **Այստեղ շատ կարևոր է չշտապելը, հապճեպ դատողություններից և** մակերեսային հետևություններից խույս տալը: Եվ, իհարկե, անթույլատրելի է խուճապի **մատնվելը, շփոթվելը անսովոր իրավիճակների,** ոչ սովորական և խոր վերափոխումների դեմ-հանդիման: Չի կարելի բացառել նաև նորին ցույց տրվող դիմադրությունը՝ հին սովորույթների, դոգմատիկ մտածողության, աշխատանքի գոյացած ոճի, տասնամյակներով կայունացած կացութաձևի բերումով: Այնպես որ անկարելի է յոլա գնալ, եթե լրջորեն չվերակառուցվի գյուղական աշխատավորների, այդ թվում նաև ղեկավար կադրերի հոգեբանությունը:

Պակաս կարևոր չէ, որ կուսակցության նոր ագրարային քաղաքականության իրագործման մեջ նաև լիովին բացահայտվեն ժողովրդական դեպուտատների սովետների բոլոր օղակների նոր ֆունկցիաները: Ագրարային կազմավորումների, գյուղական աշխատավորների հետ նրանց փոխհարաբերությունները պետք է կառուցվեն ճշմարտացի, նորմատիվ կայուն հիմքի վրա:

Հողային և մյուս բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման նկատմամբ հոգատարությունը, վարձակալների իրավունքների պաշտպանությունը, գյուղի սոցիալ-կուլտուրական բազայի զարգացումը՝ այս ամենի մեջ անփոխարինելի է սովետների դերը: Նոր հնարավորությունները նրանց թույլ են տալիս ավելի արդյունավետորեն ազդել բնակչության պարենավորումը բարելավելու վրա:

Գյուղում տնտեսական հարաբերությունների վերակառուցման հզոր և արդյունավետ շարժիչ ուժ է արդեն կուտակված փորձի յուրացումը, դրա ստեղծագործական կիրառումը:

Քաղաքականության նորությունը պետք է թե՛ կուսակցական, թե՛ սովետական աշխատողներին, թե՛ մասսայական ինֆորմացիայի միջոցներին և թե՛ իհարկե, գիտական հիմնարկներին մղի ամենայն ուշադրությամբ ուսումնասիրել գյուղատնտեսության մեջ տեղի ունեցող նորարարական պրոցեսները, դրանք դարձնել լայն զանգվածների սեփականությունը:

Նոր ագրարային քաղաքականությունը որպես բացառիկորեն հրատապ խնդիր առաջադրում է կադրերի տիրապետումը տնտեսագիտական գիտելիքներին, ընտնհաշվարկային ձևերն ու մեթոդները ակտիվորեն օգտագործելու, ինքնուրույնաբար և նախաձեռնողաբար գործելու հմտությանը:

Կարծում ենք, մենք պետք է լիովին գիտակցենք պրակտիկ աշխատանքի նաև մի այսպիսի հայեցակետ: Ագրարային քաղաքականության իրագործումը հսկայական ջանքեր կպահանջի ոչ միայն գյուղի աշխատավորներից, թեպետև հենց նրանց ուսերին կընկնի աշխատանքի հիմնական մասը, այլև մեր ամբողջ ժողովրդից:

Այս համաժողովրդական գործի մեջ իրենց ավանդը պետք է ներդնեն մեքենաշինարարները, քիմիագործները, շինարարները, վառելիքաէներգետիկ ճյուղերի աշխատողները, ըստ էության ամբողջ ժողովրդական տնտեսության աշխատավորական կոլեկտիվները: Նախ և առաջ անհրաժեշտ է ժամանակին և որակով կատարել ագրարային հատվածի պատվերները, որպեսզի պայմանագրային հարաբերությունների հիման վրա իրական օգնություն ցույց տրվի գյուղի սոցիալական վերակառուցմանը:

Գյուղի զարգացման մեջ մեծ է նաև սովետական մտավորականության բոլոր ջոկատների՝ ուսուցիչների, բժիշկների, գիտության աշխատողների, կոնստրուկտորական ու նախագծային կազմակերպությունների դերը:

Ինչպես արդեն ասացի, նոր ագրարային քաղաքականության բաղկացուցիչ մասն է շրջանների, օկրուգների, մարզերի, երկրամասերի, հանրապետությունների դերի ու պատասխանատվության կտրուկ բարձրացումը պարենավորման հարցերի լուծման համար: Այստեղ մեզ հարկավոր է, նորից եմ կրկնում, վճռականորեն հաղթահարել խնամառությունը:

Գլխավորն այն է, որ ղեկավար կադրերը լավ գիտակցեն նոր իրավիճակը և այն խնդիրները, որ նրանց առաջադրում է կյանքը: Իսկ տեղական մատակարարումը բարելավելու համար ռեզերվներ, ընկերներ, կան բոլոր ռեգիոններում: Բայց ահա դրանց օգտագործումը միանգամայն տարբեր է:

Ոմանք այժմյան տնտեսական իրավիճակում էլ կարողացել են աշխատանքն այնպես կազմակերպել, որ հաջողությամբ են կատարում մատակարարումները կենտրոնացված ֆոնդերին և էապես բարելավում են սեփական պարենավորումը: Ընդ որում խոսքը վերաբերում է ոչ թե մի երկու-երեք մարզի: Նման տեղաշարժեր կատարվել են ՌՍՖՍՀ-ի կենտրոնական սևահողային գոտում, Հյուսիսային Կովկասում, Պովոլժիեի, Սիբիրի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ղազախստանի որոշ մարզերում:

Ցավոք, հարկ է լինում բախվել պարենային գործերի նկատմամբ, ամբողջությամբ վերցրած գյուղի զարգացման նկատմամբ նաև այլ վերաբերմունքի: Ասենք՝ Չելյաբինսկի մարզը, որն ունի հսկայական հողային ռեսուրսներ, այնպիսի շեղումներ է թույլ տվել տնտհաշվարկի մեջ, որ ագրարային հատվածը պարզապես գտնըվում է բարձիթողի վիճակում:

Կամ էլ վերցրեք Գորկու և Կույբիշևի մարզերը: Սրանք շատ հարուստ ռեգիոններ են, պոտենցիալ մեծ հնարավորություններ ունեն ամենաբազմազան արտադրանքի արտադրության համար, բայց այդ ռեսուրսները անչափ վատ են օգտագործվում: Եվ այդ պատճառով էլ այնտեղ լուրջ դժվարություններ կան պարենավորման հարցում:

Կաթնամթերքով ինքնապահովման համար ռեզերվները շատ թույլ են օգտագործվում Պերմի, Կեմերովոյի, Դնեպրոպետրովսկի մարզերում:

Նոր ագրարային քաղաքականության իրագործման աշխատանքը հարկավոր է սկսել կուսակցական, սովետական և տնտեսական կադրերի հայացքների ու մտածողության վերակառուցումից, խնամառուական հոգեբանության հաղթահարումից, որը, ինչպես երևում է, խոր արմատներ է գցել: Խնամառության հոգեբանությունը չպետք է տեղ գտնի նոր ագրարային քաղաքականության մեջ:

Ընկերնե՛ր, մեր հասարակությունը որակական խոր վերափոխումներ է ապրում: Վերակառուցումը զորեղանում է, մեծացնում իր սեփական պոտենցիալը, որն արդեն դրսևորում է իրեն և անխուսափելիորեն ավելի ու ավելի շոշափելի ազդեցություն կգործի սովետական հասարակության սոցիալ-տնտեսական և հոգևոր զարգացման վրա:

Նորացման պրոցեսը օրգանապես ներառել է տնտեսական ու քաղաքական ռեֆորմները, իսկ հիմա էլ ներառում է նաև ագրարային հարաբերությունների ռեֆորմը:

Մեր առջև ծառացած են հիրավի վիթխարի խնդիրներ: Դրանց լուծումը հսկայական ջանքեր կպահանջի ամբողջ կուսակցությունից, ամբողջ ժողովրդից: Առջևում դեռ կան շատ լեռնանցքներ, որոնք պետք է հաղթահարվեն:

Բոլորը պետք է պատրաստ լինեն այն դժվարին աշխատանքին, որ կուսակցությունը գիտակցաբար առել է իր ուսերին: Կանգ չառնել ճանապարհի կեսին, իրատեսորեն, ազնվորեն և բաց ճակատով նայել կյանքին՝ ահա թե մեզ ինչ է հարկավոր հիմա:

Բայց գլխավորը համառորեն առաջ ընթանալն է, ամեն մի քայլը համադրելով մեր ժողովրդի շահերին, սոցիալիզմի շահերին:

---

# Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԵԶՐԱՓԱԿՄԱՆ ԽՈՍՔԸ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ

## 1989 թվականի մարտի 16-ին

Ընկերնե՛ր:

Ես կարծում եմ, որ կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումում կայացած դիսկուսիան, պլենումի նախապատրաստման շրջանակներում կատարված հըսկայական աշխատանքի հետ զուգակցված, թույլ է տալիս մեկ անգամ ևս խոսել այն մասին, որ մենք իրոք քննարկում ենք և մոտեցել ենք որոշումների ընդունմանը մեր հասարակության զարգացման խոշորագույն և, թերևս, ամենահիվանդագին պրոբլեմի առթիվ:

Դատելով ելույթներից, ագրարային քաղաքականության գլխավոր ուղղվածությունը, որը շարադրված է զեկուցման մեջ և այս կամ այն կերպ հարաբերակցվում է ձեր տրամադրության տակ եղած փաստաթղթերի հիմնական դրույթների հետ, արժանացել է Կենտրոնական կոմիտեի անդամների, բոլոր նրանց հավանությանը, ովքեր մասնակցում են պլենումի աշխատանքին

Այստեղ արտահայտված քննադատական շատ դիտողություններ ու դատողություններ, ցանկություններ զգալի չափով արդարացի են: Կան մի շարք մասնավոր, կոնկրետ հարցեր: Դրանք հարկավոր է լրամշակել, բայց դրանք չեն վերացնում գլխավորը. մեր ագրարային հատվածին զարգացման իսկական ազդակներ տալու համար մենք պետք է դիմենք արմատական քաղաքական միջոցների: Այս ուղղությունը կապված է գյուղում տնտեսական հարաբերությունների արմատական վերակառուցման հետ:

Շատ կարևոր են գյուղի նյութական բազան և սոցիալական բարեկարգումը: Այս բոլոր հարցերը պետք է լուծել կոմպլեքսայնորեն: Մենք պետք է ձեռնարկենք և իրականացնենք մի շարք փոխկապակցված, խոշոր, արմատական միջոցառումներ: Բայց այս ամբողջության մեջ այնուամենայնիվ վճռական դիրքը, ելակետը, ընկերներ, սեփականության հարաբերությունների վերակառուցումն է, արտադրական հարաբերությունների վերակառուցումը, ամենաբազմապիսի ձևերի օգտագործումը, որոնք հնարավորություն են տալիս իրացնել կոլտնտեսային կարգերի մեջ, սոցիալիստական սեփականության մեջ առկա պոտենցիալը: Եվ միաժամանակ՝ ագրարային համալիրի կառավարման հրամայական մեթոդներից հրաժարումը, ինչը կկազմի գյուղում տնտեսական հարաբերությունների վերակառուցման կարևորագույն տարրը:

Սա, ըստ իս, նոր ագրարային քաղաքականության միջուկն է: Սա արմատական շրջադարձ է, որը հնարավորություն է տալիս մարդուն որպես տեր հողին վերադարձնել: Եթե դա չլինի, այդ դեպքում, ուղղակի ասենք, ոչինչ չի ստացվի: Եվ առհասարակ հարկավոր է բարձրացնել գյուղացիական աշխատանքի վարկը, բարեփոխել գյուղացիության, գյուղատնտեսության աշխատողների վիճակը: Պետք է քաղաքի և գյուղի միջև հաստատվեն ավելի ներդաշնակ հարաբերություններ, որոնք կհամապատասխանեին սոցիալիզմի լենինյան կոնցեպցիային, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման կուրսին: Հենց այս կարևորագույն քաղաքական նպատակը պլենումի որոշումներին տալիս է, ես կասեի, շրջադարձային բնույթ:

Մեկ անգամ ևս ուզում եմ ընդգծել. գյուղը մեծ հոգատարության, մեծ ու բազմապիսի օգնության կարիք ունի: Բայց նախ և առաջ նա այն բանի կարիքն ունի, որ հնարավորություններ ստեղծվեն մարդկանց նախաձեռնողական աշխատանքի համար, որոնք իրենց կզգային իսկական տերեր: Սա՝ առաջին:

Երկրորդ: Ինքնըստինքյան փաստաթղթերը, նույնիսկ ամենալավերը, դեռ ոչինչ չեն վճռում: Այստեղ հարկավոր է վիթխարի աշխատանք: Բայց, ես կարծում եմ, մենք այսօր դնում ենք նոր ագրարային քաղաքականության ամուր հիմքը: Եվ հարկավոր է անհետաձգելիորեն աշխատանք սկսել այդ ուղղությամբ:

Չէինք ուզենա, որ ընկերները հեռանան ափսոսանքի զգացումով, թե ահա բոլոր հարցերը չէ, որ պատասխան ստացան: Պլենումը պետք է առաջին հերթին տա քաղաքական հիմնադրույթներ, քաղաքական կողմնորոշիչներ: Այս կապակցությամբ ուզում եմ ասել, որ, հավանաբար, պլենումի գլխավոր փաստաթուղթը ևս պետք է ազատել այն բանից, ինչը իր վրա կրում է, այսպես ասած, ուղղակի տնտեսական դիրեկտիվների բեռը, դրան տալ քաղաքական, կողմնորոշիչ բնույթ: Դա պետք է ձևակերպել քաղաքական հիմնադրույթների ձևով, որոնց հետևելով պետք է հետագայում գործեն թե՛ կառավարությունը և թե՛ մեր բոլոր գերատեսչությունները:

Կուզենայինք, որ պլենումի բոլոր մասնակիցները տոգորվեն այն բանի գիտակցությամբ, որ մենք իրոք ագրարային պրոբլեմների ըմբռնման ուրիշ մակարդակի, մեր ագրարային հատվածի վերակառուցման աշխատանքի սկզբունքորեն այլ մակարդակի ենք հասնում նախ և առաջ գյուղում արտադրական ու տնտեսական հարաբերությունների արմատական նորացման հիման վրա:

Երրորդ: Կան հարցեր, որոնք դիսկուսիա առաջացրին: Դրանք վերաբերում են Միության և հանրապետությունների, հանրապետությունների և մարզերի փոխհարաբերություններին, այն հարցին, թե ինչպես են իրար հետ հարաբերակցվում պետպատվերը և կոլտնտեսությունների, սովխոզների, ձեռնարկությունների ինքնուրույնությունը: Ես կարծում եմ, սրանք ռեալ կերպով նկատված բաներ են, որոնք, ինչպես ասում են, դեռ մինչև վերջ չեն պարզված: Դրանք դեռ պետք է լրամշակվեն:

Կարծում եմ, որ եթե ելնենք կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական ինքնուրույնության ճանաչումից, եթե որոշումներ ընդունենք հրամայական համակարգի ապամոնտաժման մասին, որը ագրարային հատվածում գործում էր շրջանի, մարզի, հանրապետության մակարդակով, ապա դա արդեն կլինի շրջադարձ, որն ստեղծում է միանգամայն նոր իրավիճակ, այդ թվում նաև պետպատվերի հարցում: Դա նշանակում է, որ պետության պահանջմունքները պետք է լուծվեն կոնտրակտացիայի, պայմանագրերի հիման վրա, ինչպես որ դա տեղի է ունենում, օրինակ, Չեխոսլովակիայում:

Այնտեղ մանրակրկիտ կերպով պարզում են հասարակության բոլոր պահանջմունքները, այն, թե ինչպես պետք է դրանք հաշվի առնել, բավարարել ագրարային հատվածի գծով: Սրանք ամենահիմնարար հարցերն են: Պլենումի փաստաթղթերը, մեր ստեղծելիք նոր իրավիճակը հենց այն բանի հուսալի բազան են, որ վերակառուցվեն մեր մոտեցումները ագրարային քաղաքականության մեջ:

Այդ փաստաթղթերի լրամշակման ընթացքում կարող են ծագել ինչ-ինչ հարցեր, որոնք կոնկրետ բնույթ կկրեն. չէ՞ որ մենք պլենումում ամեն ինչ լուծում ենք սկզբունքային առումով: Այդ կոնկրետությունը հարկ կլինի կշռադատել:

Կան բաներ, որոնք հարկավոր է լուծել հատկապես ուշադիր և կշռադատված կերպով: Ահա, օրինակ, ընկեր Բրազաուսկասը ասաց, որ գյուղմթերքների գները պետք է սահմանեն հանրապետական մարմինները: Բայց ճի՞շտ կլինի արդյոք, ընկերներ, եթե մեզ մոտ՝ Միությունում գները «անվերահսկելի դառնան»: Ոչ մի հասարակություն իրեն թույլ չի տալիս նման բան: Ոչ մեկը: Բոլորը կարգավորում են. բոլորի մոտ մշակված են անչափ հստակ մեխանիզմներ:

Մի խոսքով, կան հարցեր, որոնք չի կարելի լուծել հապճեպորեն: Դա չի նշանակում, թե տեղական մարմինները պետք է անմասն մնան որոշ արտադրատեսակների, ասենք կարտոֆիլի, պտուղների և բանջարեղենի գների սահմանմանը: Արևմըտյան երկրների և սոցիալիստական երկրներում մեր բարեկամների փորձը ցույց է տվել, որ սեզոնային արտադրանքի գները նպատակահարմար է սահմանել տեղերում: Բայց այդ դեպքում էլ պետք է, որ մեր մարդիկ երաշխավորված լինեն գների անարխիայից:

Մանրածախ գներին առնչվող ամեն ինչին, ընկերներ, հարկավոր է մոտենալ շատ պատասխանատու կերպով: Այդպիսի սկզբունքային առումով էլ ես հասկացա ակադեմիկոս Լուկինովի ելույթը: Հասարակության մեջ դիսկուսիաներից հետո մի որոշակի փուլում մենք բոլորս հանգեցինք այն հետևությանը, որ հիմա գներին պետք չէ ձեռք տալ: Քանզի դա կլիներ իրոք գոյություն ունեցող հարցերը միայն գների



հաշվին, նույնիսկ թերևս մարդկանց շահերի հաշվին լուծելու փորձ: Մարդիկ նման քայլը չէին հասկանա:

Մենք շուկան դեռ չենք հագեցրել ապրանքներով, պարենով: Դեռ արմատական միջոցներ չենք ձեռնարկել երկրի ֆինանսական վիճակի մեջ կարգուկանոն հաստատելու նպատակով: Նման միջոցները հիմա պատրաստ են: Դրանց մշակմանը մասնակցել են բոլոր հանրապետությունների ներկայացուցիչները: Բոլորս միասին էլ դրանք կիրականացնենք: Հարկավոր է երկու-երեք տարի աշխատել իրավիճակն առողջացնելու համար. դա վերաբերում է էկոնոմիկային, ֆինանսական վիճակին, առհասարակ շուկային: Եվ միայն այդ ժամանակ մենք կարող ենք առաջադրել գների հարցը:

Կարծում եմ, դա դժվար դիսկուսիա էր, այն հասարակության մեջ վարվում էր շատ կրքոտ կերպով և ապարդյուն չանցավ: Մենք՝ թե՛ հասարակությունը, թե՛ գիտությունը, թե՛ քաղաքական ղեկավարությունը և թե՛ կառավարությունը հանգեցինք ընդհանուր միասնական հետևության: Կուզենայի, որ մեզ մոտ՝ այստեղ պարզություն լինի: Երբ գա գների ռեֆորմի ժամանակը (իսկ գնագոյացումը մեզ մոտ, այնուամենայնիվ, հիմնավորապես խճճված է), մենք այն ժամանակ պնդայման առաջարկությունները կներկայացնենք ամենալայն քննարկման: Դա այնպիսի հարց է, որը հարկավոր է լուծել ամբողջ հասարակությամբ: Սովետական մարդիկ պետք է վստահ լինեն, որ առանց իրենց այդ որոշումները չեն ընդունվի:

Պլենումում ծառանում էր ևս մեկ հարց, որը սրությամբ դրված է նաև կյանքում. գյուղը, գյուղական կացութաձևը, գյուղի մարդկանց, գյուղի աշխատավորների կյանքի հարմարությունները: Սա կենսական հարց է: Կարծում եմ, այն, ինչ մենք արդեն սկսել ենք անել այդ ուղղությամբ և այն, ինչ սկսում ենք անել, ինչն արտացոլվում է գյուղի սոցիալական վերակառուցմանն առնչվող մեր նախագծերում՝ այդ ամենը արդեն հսկայական առաջընթաց քայլ է:

Ես միայն կարծում եմ, որ թերևս գյուղում կոմունալ բարեկարգման հարցերի լուծումը դեռ լրամշակում է պահանջում: Ըստ երևույթին, դուք ուշադրություն դարձրել եք զեկուցման այդ մասին: Կարծես թե պրոբլեմը տեխնիկական բնույթ ունի, բայց այն ուղղակի առնչվում է սոցիալական քաղաքականությանը: Օրինակ, աշխարհում ագրարային հատվածում գնացել են ոչ թե կենտրոնացած ջերմացանցերի, ուրիշ հաղորդակցությունների կառուցման ուղիով, այլ ինքնավար համակարգերի ստեղծման ուղիով: Եվ դա արվում է ոչ միայն մեծ, այլև փոքր երկրներում, որտեղ կարծես թե մեզ հետ համեմատած ավելի հեշտ է նման հաղորդակցություններ ստեղծելը: Ես կարծում եմ, մենք պետք է ուսումնասիրենք համաշխարհային փորձը: Դրանց պետք է ուշադրություն դարձնի մեր պետշինը:

Մենք արդեն սխալվել ենք, երբ շատ մեթոդներ արդյունաբերությունից մեխանիկորեն փոխադրել ենք գյուղ, և ժամանակին շատ կոպիտ սխալ թույլ կտանք, եթե ինքնաբերաբար գյուղի բնակարանային շինարարության, սոցիալական բարեկարգման, կոմունալ հարցերի լուծման ասպարեզ փոխադրենք այն ամենը, ինչ անում ենք քաղաքում: Քաղաքում օգտակար բան շատ կա, բայց այնուամենայնիվ գյուղում պահանջվում են սեփական մոտեցումներ: Եվ այս առումով պետշինը հետ է մնում: Ամեն տեսակ նախագծերն ու նկարները շատ են, բայց կշռադատված, հեռանկարային լուծումներ դեռ չկան: Հարկավոր է աշխատել:

Բարձրացվեց անհատական շինարարության վարկերի շատ կարևոր հարցը: Այս տարի դրանք կրկնապատիկ ավելացել են անցյալ տարվա համեմատությամբ. 40 միլիարդ է հատկացվել 20-ի դիմաց: Դա ի՞նչ ցույց տվեց: Դա ցույց տվեց պրոբլեմի չափերը և բացահայտեց այն իրական շահագրգռությունը, որ գյուղական բնակիչն ունի անհատական տուն, տնամերձ ձեռք բերելու հարցում: Եվ այդ շահագրգռությունը հարկավոր է միայն ողջունել: Ճիշտ է, եղել է և այսպիսի բան. տան համար վարկ են վերցրել, բայց գնել են ավտոմեքենա, հեռուստացույց... Ոմանք խորամանկել են: Բայց գտնվել են այդ գործի ֆինանսական վերահսկման միջոցներ: Սակայն բանի էությունը նույնիսկ այնքան էլ վարկերը չեն: Հարկավոր է մատակարարել աղյուս, ցեմենտ, բնափայտ: Մենք հիմա մտածում ենք այդ պրոբլեմի մասին, որպեսզի շինանյութերը տանք նույնիսկ շուկայի միջոցով. դա նաև ապրանքային զանգվածի շրջանառությունը կհարստացնի: Այս ուղղությամբ կաշխատենք: Ես ողջունում եմ նման մոտեցումները:

Հիշում եմ վերջերս Ուկրաինա կատարած ուղևորությունս: Գնացինք Դոնեցկի լեռնահանքային սարքավորումների գործարան: Այնտեղ վատ է, սուր է բնակարանի հարցը: Դիրեկտորը մտածեց, կարելի է, իհարկե, գանգատվել, գնալ արցունք թա-

փել: Կիև մեկնել, այնտեղ պաղատել: Դա մի բան է, դա էլ կարելի է, դա շատերն են օգտագործում. այսպես ասած, լիցքաթափում են նյարդային համակարգը: Բայց դիրեկտորը մտածեց, մտածեց և այլ կերպ վճռեց: Չէ՞ որ մենք մեքենաշինարարներ ենք, կարող ենք ինքներս կաղապարներ պատրաստել: Եվ գործարանում սկսեցին զարգացնել միաձույլ շինարարությունը: Կառուցեցին մեկ տուն, ևս երկուսը, և գործն առաջ գնաց:

Իսկ մի՞թե ուսանելի չէ Ղազախստանի ընկերների փորձը, որոնք գործի դրեցին այն ամենը, ինչ կարելի է, մարդկանց աշխատեցրին երրորդ հերթափոխով, արտաժամյա կարգով, հանգստյան օրերին, որպեսզի ավելի շատ շինանյութ, ցեմենտ ստանան: Մասնակից դարձրին գործարաններին, որոնք նույնպես իրենց ավանդը ներդրին: Եվ գործը տեղից շարժվեց: Իսկ, օրինակ, Լվովում միավորվեցին և սկսեցին կառուցել, վերականգնել լքված աղյուսի գործարանները: Ի հայտ եկավ սեփական շինանյութ: Եկեք, ընկերներ, այսպես նախաձեռնողաբար գործենք ամենուրեք:

Կան բաներ, որոնք առանձին կոլեկտիվի ուժերից վեր են. այստեղ պետք է վճռել պետության և պետական միջոցառումների գծով: Բայց եկեք ձերբազատվենք և առաջ մղենք նախաձեռնությունը, աջակցենք մարդկանց:

Կարելի է, իհարկե, վիճել, որի՞ն ավելի շատ փող տալ՝ քաղաքի՞ն, թե՞ գյուղին: Բայց բանը դարձյալ փողը չէ: Ես այստեղ մեկ անգամ էլ կհիշեցնեի և կառաջարկեի օգտագործել օրյոլցիների փորձը: Ընկերներ, բան դուրս չի գա առանց տեղում բանվոր դասակարգի, գյուղացիության հետ իրավիճակը քննարկելու և պայմանավորվելու. եկեք առայժմ երկու-երեք տարում կարգավորենք գյուղը: Եվ ժողովուրդը կարձագանքի: Դա հասկանում եք, հարկավոր է լուծել ոչ թե Մոսկվայում, այլ տեղերում, մարզում, հանրապետությունում, հենվելով պլենումի քաղաքական հանձնարարականների վրա:

Չէ՞ որ ինչ-որ ժամանակ, ասենք, ամբողջ Լիտվան այդպես է վերակառուցվել: Սգնել են քաղաքները, ամեն ինչ ներգրավվել է: Չէ՞ որ դա խուտորներից և այն էլ ինչպիսի խուտորներից բաղկացած հանրապետություն էր, իսկ հիմա հիանալի ավաններ կան: Եվ խուտորներն էլ միանգամայն ուրիշ են: Հիշում եմ ընկեր Սնեչկուսին, որը կանգնած էր այդ շարժման ակունքների մոտ: Միանգամայն ուրիշ հանրապետություն է, միանգամայն ուրիշ կենցաղ: Կարծում եմ, քաղաքներից գնում են գյուղում ապրելու, այնքան հիանալի են լուծված այստեղ գյուղական կենցաղի հարցերը: Ուրիշ տեղերում ևս նման մոտեցումներ կան: Եկեք, ընկերներ, տուն վերադառնալով այդպես անենք ամեն տեղ: Մարդիկ մեզ կաջակցեն:

Ուղղակի կասեմ, որ մենք չենք կարող քաղաքներում շինարարությունը դադարեցնել և ամեն ինչ շրջել դեպի գյուղը: Մենք բազմաթիվ աղաղակող պրոբլեմներ ունենք, որոնք վերաբերում են բանվոր դասակարգի կենցաղային, կենսական պայմաններին: Դա ես տեսա քաղաքներում: Ամենուրեք այդ պրոբլեմները կան:

Այնպես որ, հարցի նման առաջադրումը, թե եկեք քաղաքում դադարեցնենք շինարարությունը և ամեն ինչ գյուղ ուղարկենք, երևի ճիշտ չի լինի: Մեզ մոտ, ընկերներ, գյուղի առաջնությունը քաղաքի պրոբլեմների լուծման հետ համադրելու հնարավորություններ կան շահերի խելամիտ զուգակցման հիման վրա:

Առաջին ելույթ ունեցողից՝ ընկեր Պոտապովից սկսած, պլենումում խոսվեց այն մասին, որ հարկավոր է հաստատակամորեն առաջադրել մեր խոշոր ծրագրերի իրականացման հարցը, համաձայնության գալ այդ առնչությամբ: Մեզ մոտ շատ ծրագրեր հայտնվել են չկատարվելու սպառնալիքի տակ: Մեքենաշինության հայրենական խոշորագույն ծրագիրը ևս կատարվում է թերացումով: Զգձգումներ կան սոցիալական հարցերի լուծման մեջ, թեև որոնք շատ առաջ են գնացել: Իսկ չէ՞ որ մենք մեծ միջոցներ ենք տրամադրել մեր էկոնոմիկան դեպի մարդը շրջելու, ծախսերի կրճատման հաշվին լուծելու համար: Ռազմական ծախսերի կրճատման հաշվին շահեցինք և վեց միլիարդ ռուբլի տվեցինք առողջապահությանը: Բայց այդ միջոցները ամենուրեք չէ, որ իրացվում են:

Եթե մենք այդպես լուծենք դեպի գյուղի սոցիալական վերակառուցում, արտադրական շինարարություն կատարվող վիթխարի շրջադարձի գործնական խնդիրները, ապա այն ժամանակ, ես ձեզ կասեմ, կսնանկանանք մեր ժողովրդի առջև: Եվ դա կհարվածի վերակառուցմանը: Ուստի և ագրարային ծրագրի կատարման հարցը դնում եմ առաջին տեղում: Սա ամենակարևորն է, ամենագլխավորը: Այստեղ ոչ ոք չպետք է անմասն մնա: Եթե հիմա սկսեն խորամանկել այս փաստաթղթերի առումով, գյուղացուն, գյուղի աշխատավորներին, կոլտնտեսություններին, սովխոզներին մենակ թողնեն իրենց պրոբլեմների հետ, ապա գրոշի արժեք կունենան թե՛ պլենումը, թե՛ ամբողջ դիմկուսիան, և թե՛ այն բոլոր փաստաթղթերը, որ մենք այստեղ կընդունենք: Այդ մասին հարկավոր է հաստատ պայմանավորվել:



Պլենումի որոշումների կատարումը համաժողովրդական գործ է: Եվ չպետք է սպասել, որ քեզ հրելով առաջ տանեն: Ամեն ոք պետք է գործ անի, հարցեր լուծի, որոնք իր համար բխում են պլենումի փաստաթղթերից: Գործել խղճի մտոք, հասկանալով, որ նոր ագրարային քաղաքականության իրագործումը մեր ներքին քաղաքականության գլխավոր, արմատական հարցն է:

Կուսակցությունը պետք է հսկայական աշխատանք կատարի այդ քաղաքականությունը պարզաբանելու, մեր կադրերի կողմից այն ամենի յուրացմանը նպաստելու համար, ինչ մատնանշում են պլենումի որոշումները: Վերջապես (և դա ես ուզում եմ հատկապես ընդգծել) մենք պարզապես պարտավոր ենք գործն այնպես առաջ տանել, որ գյուղի աշխատավորները, մեր գյուղացիությունը զգան, որ կուսակցությունը իրենց կողքին է, իրենց հետ է հիմա, այս դժվարին փուլում: Որ նա գիտակցել, իմաստավորել է իրավիճակը, որ նա առաջարկել է նոր ագրարային քաղաքականություն և ամբողջ հասարակությանը ոտքի է հանում նոր բնագծերի հասնելու համար: Սա շատ կարևոր է, ընկերներ:

Ահա այսօր ելույթ ունեցավ ընկեր Մալկովը՝ Չիտայի մարզկոմի քարտուղարը: Կարելի է խոսել մարզի հաջողությունների և անհաջողությունների մասին: Բայց չէ՞ որ հենց վերջերս մարզը, ինչպես ասում են, պառկած էր զույգ թիակների վրա: Իսկ հիմա մարզը դինամիկա է ձեռք բերում: Սկսում են բարելավվել գործերը, փոխվում է նաև մարդկանց տրամադրությունը: Եվ բոլոր առումներով դժվարագույն մարզում այդ բոլոր գործերի, փոփոխությունների ոգին կոմունիստներն են, մարզային կուսակցական կազմակերպությունը:

Այսօր իրավական, քաղաքական, տնտեսական մեծ նախադրյալներ են ստեղծվում ստեղծարար աշխատանքն առաջ մղելու համար: Կուսակցությունը պետք է իր վրա վերցնի ագրարային քաղաքականության թե՛ վիթխարի կազմակերպչական գործունեությունը և թե՛ գաղափարախոսական ապահովումը:

Թույլ տվեք, ընկերներ, բոլորիդ հաջողություն մաղթել այդ գործում:

**(Ծափահարություններ)**

---

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ 1989 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 15-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԻՑ ՍՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻՆ ՏՐՎՈՂ ՊԱՏՎԻՐԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*1. Կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեի դիմումի մեջ սահմանված խնդիրներն ու միջոցառումները դիտել որպես Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատներին տրվող ընդհանուր պատվիրան։*

*2. ՍՄԿԿ-ից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածուների հետ կայացած նախընտրական հանդիպումներում կոմունիստների և աշխատավորների արած կոնկրետ առաջարկությունները որպես Սովետական Միության կոմունիստական կուսակցությունից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատներին ուղղված պատվիրաններ (ներկայացվում են առդիր) հանձնել ՍՍՀՄ Գերագույն սովետի քննարկմանը։*

*3. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին ու մարզկոմներին՝ ՍՄԿԿ-ից ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների հետ համատեղ միջոցներ ձեռնարկել իրագործելու դեպուտատության թեկնածու կոմունիստների և կուսակցական ակտիվի հետ կայացած հանդիպումներում, աշխատավորական կոլեկտիվներում և մամուլի միջոցով արտահայտված այն ցանկությունների ու քննադատական դիտողությունները կատարելու համար, որոնք մտնում են տեղական մարմինների իրավասության մեջ։*

---

## ՀԱՆՈՒՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ, ՀԱՆՈՒՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ

### ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ելույթը 1989 թվականի մարտի 23-ին Լենինականի տեքստիլագործների մշակույթի պալատում ընտրողների հետ կայացած հանդիպման ժամանակ

Ընկերնե՛ր։

Չեմ թաքցնի, հուզմունքի մեծ զգացումով եմ եկել ձեզ հետ հանդիպելու։ Եվ դա հասկանալի է։ Ամբողջ հանրապետությունը, մեր ողջ ժողովուրդը, մենք բոլորս համակված ենք ավերիչ երկրաշարժի հետևանքների խոր դրամատիզմով, մեզ բաժին ընկած անլուր դժվարություններով ու փորձություններով։

Աղետին հաջորդած առաջին իսկ ժամերին ես այստեղ էի, ձեզ հետ։

Անհնար է բառերով արտահայտել այն ամենը, ինչ բացվեց մեր աչքերի առջև Լենինականում, Սպիտակում, Կիրովականում, տուժած գոտու շրջկենտրոններում ու գյուղերում։ Անհնար էր առանց սոսկումի նայել երկրի երեսից ջնջված բնակելի թաղամասերին, ձեռնարկություններին, դպրոցներին ու հիվանդանոցներին։ Անհնար էր չընցվել ցավից, տեսնելով որդեկորույս մայրերի և որբացած երեխաների անափ մորմոքը։ Կարծում եմ, որ շատ տասնամյակներ անց էլ մեր սերունդները անհուն կսկիծով կվերհիշեն 1988 թվականի դեկտեմբերի 7-ի ճակատագրական օրը, որն այդքան խոր հետք թողեց մեր հինավուրց հողում։

Ես լիովին գիտակցում եմ այն մեծագույն պատասխանատվությունը, որ որպես Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, Սովետական Միության կոմկուսի Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի անդամ, որպես ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատության ձեր թեկնածու՝ կրում եմ տուժած քաղաքների, ավանների ու գյուղերի վերածննդի համար, անցյալ տարերքի պատճառած ավերածությունների արագ վերացման համար։

Իմ նախընտրական ծրագրի առանցքը մարդն է, մեր հայրենակիցն ու ժամանակակիցը և այն ոչ դյուրին հարցերը, որոնք նրան հուզում են այսօր. մեր հասարակության, Սովետական Հայաստանի զարգացման ուղիները, հայ ժողովրդի վաղվա օրը, հայրենի բնության նկատմամբ, մայրենի լեզվի, մշակույթի, պատմական անցյալի նկատմամբ հոգատար վերաբերմունքը և, իհարկե, երկրաշարժից տուժած քաղաքների ու գյուղերի ապագան, մեր երեխաների ապագան։

Իմ նախընտրական ծրագիրը էկոնոմիկայում, սոցիալական ոլորտում կուտակված լճացման երևույթների հաղթահարման և հանրապետությունում տիրող գաղափարաքաղաքական մթնոլորտի առողջացման ամբողջական ծրագիրն է, որը մշակվել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումի կողմից, արժանացել կոմունիստների, աշխատավորների լայն պաշտպանությանը։

Իմ, որպես քաղաքացու, որպես դեպուտատության թեկնածուի, նպատակն է անել ինչ անել Հայաստանի, մեր հանրապետության վերածննդի համար։

Այսօր՝ երկրաշարժից երեքուկես ամիս անց, մեզանից յուրաքանչյուրը ավելի խորությամբ և նորովի է ընկալում ամբողջ ողբերգությունը և աղետի աննախադեպ չափերը։

Երկրաշարժը խլեց 25 հազար մարդկային կյանք: Մի ակնթարթում մենք կորցրեցինք տասնամյակներով ստեղծած մեր ազգային հարստության մեկ երրորդը, ավելի քան կես միլիոն մարդ զրկվեց ապրուստի բոլոր պայմաններից: Իսկ որքան ֆիզիկական ու հոգեբանական խեղումներ, որքան փշրված ճակատագրեր, որբացած երեխաներ: Ճակատագիրը կարծես նորից է փորձում մեր կամքի ուժը, հոգու տոկունությունը: Այս անգամ էլ մենք պետք է դիմանանք փորձությանը:

Մեզ հասած ողբերգությունը ցնցեց ամբողջ աշխարհը: Կարճ ժամանակամիջոցում մարդկությունը դրսևորեց մինչ այդ չտեսնված կարեկցանք ու գթասրտություն: Մեր դժբախտությունը, հիրավի, դարձավ համամարդկային դժբախտություն: Մեր հայրենիքի ազգերի ու ազգությունների խոր կարեկցանքը մեզ օգնեց վերականգնելու ոգու կորովը, անսասան վճռականություն հաղորդեց վերածնելու հանրապետության տուժած քաղաքներն ու գյուղերը:

Մենք պետք է դա անենք, պարտավոր ենք դա անել: Մենք պետք է ոչ միայն վերականգնենք ավերվածը, այլև վերածնենք հանրապետության լիարյուն կյանքը: Մենք պարտավոր ենք դա անել հանուն ներկա և գալիք սերունդների, հանուն մեր ժողովրդի վաղվա օրվա: Դժբախտության մեջ մենք միայնակ չենք: Հայ ժողովրդին բաժին ընկած փորձությունը դարձել է փորձություն սովետական բոլոր մարդկանց համար, մեր հոգսերը դարձել են համընդհանուր հոգսեր: Հայաստանն այսօր ամբողջ երկրի, ամբողջ աշխարհի թե ցավն է, թե սերը: Եվ մենք լիովին զգացել ենք դա:

Մարդկությունն այսօր ավելի ու ավելի է գիտակցում, որ առաջնայինը համամարդկային արժեքներն են: Երկրաշարժի էպիկենտրոնը վերածվեց մարդկային համերաշխության էպիկենտրոնի: Մենք դա ընկալում ենք իբրև միջազգային բարոյական մթնոլորտի բարեփոխման արդյունք, աշխարհում քաղաքական նոր մտածողության հաստատման արդյունք: Դրա մեջ մենք տեսնում ենք որակապես նոր վերաբերմունք մեր երկրի հանդեպ, վերակառուցման հանդեպ:

Ողբերգության առաջին իսկ րոպեներից երկրի բոլոր ուժերն ու միջոցները նպատակամղվեցին մարդկանց շուտափույթ փրկության ապահովմանը: Գործի դրվեցին ռազմական ու փոխադրական ավիացիան, երկաթուղային և ավտոմոբիլային տրանսպորտը: Հանրապետություն ուղարկվեց մեկուկես հազար վերամբարձ կռունկ, մոտ 900 բուլդոզեր, գրեթե 6 հազար ավտոմեքենա: Մոսկվայից, Լենինգրադից, երկրի մյուս քաղաքներից արագորեն աղետի գոտի ժամանեցին 130 բժշկական բրիգադներ, բարձր որակավորում ունեցող 1200 բժիշկներ՝ իրենց հետ բերելով դեղորայք և սարքավորում: Աշխատանքները տարվում էին օր ու գիշեր և բոլոր ուժերը առաջին հերթին նպատակամղված էին մարդկանց փրկությանը: Գրեթե ամեն օր լինելով աղետյալ գոտում, ես տեսնում էի իրավիճակի ամբողջ ողբերգականությունը, մարդկանց տառապանքը: Բոլորը հարկադրված էին գործել ծայրահեղ բարդ, արտակարգ պայմաններում, ամբողջ աշխատանքը ընթանում էր նյարդային տենդի մեջ: Բայց մեր հազարավոր հայրենակիցները, եղբայրական բոլոր հանրապետություններից և արտասահմանյան երկրներից ժամանած փրկարարները հանդես բերեցին իսկական հերոսություն ու խիզախություն, փլատակներից հանելով ավելի քան 40 հազար մարդու, փրկելով մոտ 16 հազար կյանք:

Եվ ճիշտ կլիներ, եթե Հայաստանի կոմկուսի Կենտկոմը երկրաշարժից տուժածներին փրկելու ժամանակ խիզախություն և արիություն ցուցաբերած սովետական և արտասահմանյան քաղաքացիներին Սովետական Միության պետական պարգևներ շնորհելու առաջարկություն ներկայացներ: Արդեն ընդունվել է նաև հատուկ հուշամեդալ հիմնելու մեր առաջարկը: Այն հանրապետության Գերագույն սովետի նախագահության անունից կհանձնվի երկրաշարժի գոտում փրկարար և վերականգնման աշխատանքի ակտիվ մասնակիցներին:

Երկրաշարժը ցույց տվեց մեր ժողովրդի տոկունությունը, արհավիրքին արիաբար դիմակայելու նրա ընդունակությունը: Կույր աղետի դաժան հարվածը չընկճեց հայ ժողովրդին: Ես արդեն ասել եմ և ցանկանում եմ կրկնել, որ ամենաբարդ իրավիճակում մեր ժողովուրդը հանդես բերեց իմաստնություն, համախմբվածություն, կենսադիմացկունություն, կարողացավ ուժերն ու կամքը նպատակամղել տուժածներին գործուն ու անհապաղ օգնություն ցույց տալուն:

Ողբերգության մասշտաբներն ու հետևանքները թերևս նմանը չեն ունեցել: Ուստի հարկ եղավ հսկայական աշխատանք կատարել ամբողջ երկրի հնարավորությունները ու ռեսուրսները մոբիլիզացնելու համար: Մենք բոլորս գիտենք, թե երկրաշարժի հետևանքները վերացնելու գործում մեզ ինչպիսի անգնահատելի օգնություն ցույց տվեցին և ցույց են տալիս երկրի ղեկավարությունը, Սովետական Միության կոմկուսի Կենտկոմի քաղբյուրոն, Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովը, Կենտկոմի քաղբյուրոյի՝ երկրաշարժի հետևանքների վերացման հանձնաժողովը և նրա նախագահ Նիկոլայ Իվանովիչ Ռիժկովը:



Կարճ ժամկետներում հաջողվեց հունի մեջ դնել փրկարար և վերականգնողական աշխատանքները, կարգաբերել մարդկանց կենսապահովման համակարգը: Աղետի գոտուց տեղափոխվեց 120 հազար մարդ՝ կանայք, երեխաներ, ծերունիներ: Նրանցից 75 հազարը տեղավորվեց երկրի առողջարաններում, հանգստյան տներում, տուրիստական բազաներում և պանսիոնատներում: Այդ մարդկանց կարիքները հոգալու համար կծախսվի ավելի քան 250 միլիոն ռուբլի: Երկրաշարժի գոտում անօթևան մնացածներին տրամադրվեց 80 հազար վրան ու յուրտ, տաք հագուստ ու սնունդ: Երկրաշարժից ընդամենը մեկուկես շաբաթ հետո Սովետական Միության Մինիստրների խորհուրդը որոշում ընդունեց տուժած բնակչությանը անհապաղ նյութական օգնություն ցույց տալու մասին: Մարդիկ արդեն ստացել են 178 միլիոն ռուբլու միանվագ օգնություն և 764 միլիոն ռուբլու փոխհատուցում՝ կորցրած ունեցվածքի դիմաց: Ավելի քան 70 միլիոն ռուբլու օգնություն է հատկացվել արհմիությունների գծով:

Դեկտեմբերի 27-ին ընդունվեցին ավերված քաղաքների ու գյուղերի, արտադրական ու սոցիալական օբյեկտների վերականգնման միջոցառումների մասին Սովետական Միության կոմկուսի Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումները, որոնք բախտորոշ նշանակություն ունեն մեր հանրապետության համար: Այդ որոշումներում խնդիր է դրված երկու տարում իրացնել գրեթե ութ միլիարդ ռուբլու կապիտալ ներդրում, լիովին վերականգնել ավերված բնակարանները, դպրոցներն ու մանկապարտեզները, հիվանդանոցներն ու պոլիկլինիկաները, ամբողջ արտադրական ու սոցիալական ենթակառուցվածքը: Նորովի, տեխնիկական նոր մակարդակով կվերականգնվեն կորստի մատնված ավելի քան 170 հազար աշխատատեղերը: Երկիրն ամեն ինչ անում է, որպեսզի մեզ օգնի ոտքի կանգնելու, գոտեպնդվելու, հաղթահարելու այս ողբերգությունը:

Այսօր մեզանից յուրաքանչյուրը, հանրապետության ամեն մի բնակիչ պետք է ամենայն խորությամբ գիտակցի, թե ինչ վիթխարի չափերի օգնություն է մեզ ցույց տրվում: Եթե ի մի բերվեն Հայաստանում տեղի ունեցած երկրաշարժի հետևանքների վերացմանը հատկացված միջոցները, ապա դրանք հավասար կլինեն երկրի ազգային եկամտի միջին տարեկան հավելաճին: Մենք բոլորս վերստին ականատես ենք լինում, թե ինչ մեծագույն նվաճում է հայ ժողովրդի համար եղբայր ժողովուրդների մեծ ընտանիքի իրավահավասար անդամ լինելը:

Մեծ փորձության ենթարկվեցին Շիրակի աշխատավորները, ողջ բնակչությունը: Լենինական քաղաքին, Ախուրյանի, Ղուկասյանի, Ամասիայի, Անիի, Արագածի, Արթիկի և Թալինի շրջաններին է բաժին ընկել երկրաշարժի պատճառած ընդհանուր կորուստների մոտ երկու երրորդը: Այստեղ անօթևան է մնացել մոտ 50 հազար ընտանիք, այդ թվում միայն Լենինականում՝ 37 հազար: Քաղաքում լրիվ կամ մասամբ ավերվել է մոտ 2,5 միլիոն քառակուսի մետր բնակտարածություն, 23 դպրոց, 12 մանկապարտեզ, 23 հիվանդանոց և պոլիկլինիկա, բոլոր վարչական շենքերի, կոմունալ և կենցաղային օբյեկտների գրեթե 80 տոկոսը:

Կասկած չկա, որ մենք կկառուցենք, փլատակներից կբարձրացնենք մեր քաղաքներն ու գյուղերը: Սակայն գլխավորը մարդու վերածնունդն է, նրա հավատի, հոգեկան հավասարակշռության վերականգնումը: Մենք առանձնակի հոգատարությամբ պետք է շրջապատենք տուժածներին, երեխաներին ու մայրերին, հաշմանդամներին, որբերին: Ամեն ինչ անենք մարդկանց ծանր հոգեվիճակից դուրս բերելու, հուսալքվածներին լավատեսությամբ տոգորելու համար: Այստեղ միայն կարեկցանքը քիչ է, հարկավոր են գործնական քայլեր: Ավելին, հարկավոր է վերածնության համազգային ծրագիր, որն ընդգրկի երկրաշարժի բոլոր հետևանքների վերացումը:

Այսօր գլխավորը շինարարական և վերականգնման աշխատանքների ամբողջ համալիրին նոր ազդակ հաղորդելն է: Մեզ այդ գործում հսկայական, անգնահատելի օգնություն են ցույց տալիս եղբայրական միութենական հանրապետությունները, երկրի մինիստրություններն ու գերատեսչությունները: Երկու տարում աղետի գոտում պետք է կառուցվի 6,3 միլիոն քառակուսի մետր բնակտարածություն, 112,7 հազար աշակերտական տեղով դպրոցներ, 48,1 հազար տեղով մանկապարտեզներ, 6,7 հազար մահճակալով հիվանդանոցներ, մեկ հերթափոխում 12,4 հազար հաճախման կարողությամբ պոլիկլինիկաներ: Շարք կմտնեն մեծ քանակությամբ ակումբ-

ներ ու մշակույթի տներ, առևտրի, կենցաղային և կոմունալ օբյեկտներ, արդյունաբերական և գյուղատնտեսական ձեռնարկություններ:

Աղետի գոտում արդեն աշխատում է 67 հազար շինարար: Միայն Լենինականում ներգրավված կազմակերպությունները, որոնց կազմում արդեն կա 12 հազար մարդ, անցած երկու ամսում իրացրել են ավելի քան 40 միլիոն ռուբլու կապիտալ ներդրում: Օրական կատարվում է մեկ միլիոն ռուբլու աշխատանք: Այդ ծավալը կմեծանա շինարարության ճակատի ընդլայնմանը զուգընթաց: Կցանկանայի նշել Սովետական Միության Հարավշին, Ուրալսիբիրշին, Հյուսիսարևմուտքշին, Ռուսաստանի Ֆեդերացիայի քաղբնակշին և ուրիշ շատ մինիստրությունների ու գերատեսչությունների աշխատավորական կոլեկտիվների անձնվեր աշխատանքը: Նրանց աշխատանքային թափը գրավականն է այն բանի, որ արդեն առաջին կիսամյակում քաղաքում կկառուցվի 200 հազար քառակուսի մետր բնակտարածություն կամ 3,5 հազար բնակարան, իսկ մինչև սեպտեմբերի 1-ը շուրջ 11 հազար աշակերտ հնարավորություն կստանա ուսումը շարունակելու ոչ թե վրաններում, այլ նորակառույց դպրոցներում:

Ախուրյանի շրջանում մինչև տարվա կեսը կկառուցվեն 46 հազար քառակուսի մետր բնակտարածություն, 1222 աշակերտական տեղով դպրոցներ, Արթիկի շրջանում՝ համապատասխանաբար 11,5 հազար քառակուսի մետր և 542 աշակերտական տեղ, Ղուկասյանի շրջանում՝ 7,5 հազար քառակուսի մետր և 100 աշակերտական տեղ: Նոր բնակելի տներ ու դպրոցներ կգործարկվեն Ամասիայի, Անիի, Թալինի և Արագածի շրջաններում:

Մենք բարձր ենք գնահատում ուկրաինացի շինարարների նախաձեռնությունը, որոնք ղուկասյանցիներին ծանր վիճակից դուրս բերելու գործն արագացնելու նպատակով պարտավորվել են մեկ տարում կատարել բնակարանների շինարարության և վերականգնման իրենց երկամյա ծրագիրը:

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի, հանրապետության կառավարության, ամբողջ հայ ժողովրդի անունից կցանկանայի այսօր անկեղծ շնորհակալության ու երախտագիտության խոսք ուղղել շինարարներին, նախագծողներին, բանվորներին ու մասնագետներին, որոնք աղետյալ գոտի են եկել բոլոր միութենական հանրապետություններից, Մոսկվայից ու Լենինգրադից, տարբեր երկրամասերից ու մարզերից, որպեսզի մասնակցեն երկրաշարժի հետևանքների վերացմանը: Ինչպիսի՜ խոր կարեկցանքով, ինչպիսի անշահախնդրությամբ երկրի բոլոր եղբայր ժողովուրդներն արձագանքեցին մեր դժբախտությանը, ինչպիսի՜ հոգևոր պոռթկումով ու պատասխանատվության զգացումով են այսօր մեզ մոտ աշխատում նրանց զավակները: Այդ ամենը համոզիչ կերպով ցույց է տալիս, թե սովետական մարդկանց մեջ որքան շատ է բարությունն ու հոգատարությունը, թե մենք միասին ինչպիսի՜ վիթխարի բարոյական ուժով ենք օժտված: Կանցնեն տարիներ, բայց հայ ժողովուրդը երբեք չի մոռանա այն մարդկանց սխրալից աշխատանքը, ովքեր իր հետ ուս ուսի տված դիմակայեցին արհավիրքին, անձնվիրաբար վերածնեցին քաղաքներն ու գյուղերը, ջանք չխնայեցին, որպեսզի հայ մարդը հնարավորին չափ արագ վերստանա ընտանեկան օջախի ջերմությունը: Այսօր ցանկանում եմ շնորհակալություն հայտնել ՍՍՀՄ մինիստր Վ. Ի. Ռեշետիլովին, որը գլխավորում է Լենինականում երկրաշարժի հետևանքների վերացման շտաբը և շատ ուժ ու եռանդ է ներդնում առաջադրված խնդիրները ժամանակին կատարելու համար:

Օգտվելով առիթից, որ հանդիպմանը մասնակցում են զինվորական ստորաբաժանումների ներկայացուցիչներ, ուզում եմ առանձնակի երախտագիտության խոսքերով դիմել նաև սովետական ռազմիկներին: Մեր հիշողության մեջ առհավետ կմնան երկրաշարժին հաջորդած դժվարին ժամերին ձեր ցուցաբերած կազմակերպվածությունը, գործողությունների հստակությունը և անձնվիրությունը: Սովետական բանակի ռազմիկները, քաղաքացիական պաշտպանության, ներքին ծառայության և սահմանապահ զորքերի ստորաբաժանումներն իրենց վրա կրելով փրկարար աշխատանքների առաջին ծանրությունը, անում էին հնարավորն ու անհնարինը, փլատակների տակ մնացած մարդկանց հանելու, նրանց առաջին բուժօգնությունը ցույց տալու, կերակրելու, տաքացնելու համար: Արհավիրքի ժամը, փորձության ժամը նոր ուժով հավաստեց, որ մեր բանակն ու ժողովուրդը միասնական են:

Ընկերնե՛ր: Այսօր մեզ բոլորիս մտահոգում է այն հարցը, թե ինչպիսին կլինեն վերականգնված քաղաքներն ու գյուղերը: Որքանով նրանց ենթակառուցվածքն ու ճարտարապետությունը կհամապատասխանեն քաղաքաշինության արդի պահանջներին և հայ ճարտարապետության ավանդույթներին: Մենք առանձնակի ուշադրություն ենք նվիրում այս հարցերին: Գլխավոր հատակագծերի, առանձին նախագծերի մշակմանը ներգրավված են հանրապետության ու երկրի նախագծային կազմակերպությունների լավագույն ուժերը: Մենք ամեն ինչ անում ենք այդ աշխատանքին լայն հրապարակայնություն հաղորդելու համար, որպեսզի քաղաքների ու բնակավայրերի գլխավոր հատակագծերի նախագծերը քննարկվեն տեղերում՝ հասարակայնության մասնակցությամբ:

Մենք լավ ենք գիտակցում աղետի գոտում ստեղծված իրավիճակը: Հազարավոր մարդիկ չունեն օթևան, աշխատանք, լուծված չեն նրանց կենսաապահովման մյուս հարցերը: Հատկապես ծանր է կանանց, երեխաների, կերակրողին կորցրած ընտանիքների դրությունը: Այս բոլոր հարցերը մենք մշտապես կպահենք մեր ուշադրության կենտրոնում, գործնական միջոցներ ենք ձեռնարկում դրանց շուտափույթ լուծման համար:

Մենք պետք է կառուցենք և՛ ավելի լավ, և՛ ավելի ամուր, և, անկասկած, պետք է ապահովենք կատարվող աշխատանքների որակի խստիվ վերահսկողությունը: Ոչ ոք իրավունք չունի կրկնելու անցյալի սխալները, քամահրական վերաբերմունք ցուցաբերելու շինարարության որակի հանդեպ: Դա հաշվի առնելով՝ պետք է վերանայվի մեր ամբողջ ճարտարապետական-շինարարական ստրատեգիան: Բայց միևնույն ժամանակ մենք պարտավոր ենք ամեն ինչ անել, որպեսզի ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումներում նշված ժամկետներում, այսինքն՝ երկու տարում, ապահովվի նախատեսված ամբողջ ծրագրի կատարումը և տուժածների համար ստեղծվեն կյանքի ու աշխատանքի բնականոն պայմաններ: Երբ հանդիպում ես մարդկանց և խորամուխ լինում նրանց խիստ ծանր վիճակի մեջ, ապա խորապես զգում ես, որ այդ խնդրի լուծումը չի կարելի հետաձգել թեկուզ մեկ օրով:

Ինչպիսի՞ն պետք է լինի ապագա Լենինականը: Կկառուցվի 2,1 միլիոն քառակուսի մետր նոր բնակտարածություն՝ սոցիալ-կենցաղային բոլոր օբյեկտներով հանդերձ: Ընդ որում, նախատեսվում է պահպանել քաղաքի կազմավորման ամբողջականությունը, համակողմանիորեն հաշվի առնելով նրա տարածքի սեյսմիկությունը և ինժեներաերկրաբանական կառուցվածքը: Հատակագծման լուծումներն ընտրված են այնպես, որպեսզի խույս տրվի միապաղաղությունից ու միակերպությունից: Կձևավորվեն առևտրական և հետիոտնի համար նախատեսված փողոցներ, ճեմուղիներ, հրապարակներ, զբոսայգիներ ու պուրակներ, ինչպես նաև կիրականացվեն բարեկարգման այլ հնարավորություններ՝ այդ թվում շարք կմտնեն շատրվաններ, խաղահրապարակներ և այլն: Ինչպես Լենինականում, այնպես էլ մյուս վայրերում շինարարությանը զուգընթաց կվերականգնվեն մշակույթի և ճարտարապետության հուշարձանները: Խոսքն առաջին հերթին Կումայրի պատմաճարտարապետական արգելոցի, Ջաջուռ գյուղում Մինաս Ավետիսյանի տուն-թանգարանի, Լենինականի մի շարք ձեռնարկություններում և Ախուրյանի շրջանի Վահրամաբերդ գյուղի ակումբում նրա նշանավոր որմնանկարների և այլ հուշարձանների մասին է:

Արդիական ոգով կկառուցապատվեն Կիրովականի, Սպիտակի, Ստեփանավանի, ինչպես նաև տուժած շրջկենտրոնների և բոլոր գյուղական բնակավայրերի նոր թաղամասերը:

Առանձնակի կարևորության խնդիր է տուժած գյուղերին նոր բովանդակություն և արդիական տեսք տալը: Կարծում եմ, համաձայն կլինեք ինձ հետ, որ դրանք ծանր տպավորություն են թողնում: Այստեղ տարիներ շարունակ անտեսված են եղել մարդկանց ամենակենսական պահանջմունքները, նրանց տարրական կարիքները: Ինչպե՞ս կարելի է հանդուրժել, երբ շատ գյուղեր պարզապես բարձիթողի վիճակում են, չունեն ջուր, կոյուղի, գազ, ճանապարհներ, առևտրի, կոմունալ և կենցաղսպասարկման անհրաժեշտ օբյեկտներ, էլ չենք խոսում կուլտուրական հանգստի կազմակերպման մասին: Բանն այնտեղ է հասել, որ անգամ գյուղերում սկսել են ստեղծել խմելու ջրի վաճառքի կոոպերատիվներ:

Մենք պետք է վճռականորեն, արմատապես փոխենք մեր վերաբերմունքը գյուղական բնակչության հոգսերի նկատմամբ, նրան շրջապատենք ամենօրյա հոգատարությամբ և ուշադրությամբ: Վերականգնման ընթացքում կկառուցվեն որակապես նոր գյուղեր: Գյուղերում հիմնականում կկառուցվեն ժամանակակից բոլոր հարմարություններով օժտված առանձնատներ՝ հաշվի առնելով հայկական ավանդական կացութաձևը: Դրա համար անհրաժեշտ է նորովի լուծել գյուղերի հատակագծման, ճանապարհների և ինժեներական կոմունիկացիաների շինարարության, ինչպես նաև գյուղատնտեսական օբյեկտների տեղաբաշխման հարցերը:

Հսկայական անելիքներ կան, բայց մենք պետք է իրագործենք դրանք: Իրադրությունը բարդանում է նաև նրանով, որ մասնագետների գնահատմամբ Շիրակի ռեգիոնի 11 գյուղ, այդ թվում Ախուրյանի շրջանի վեց գյուղ (Հայկավանը, Առափին, Ոսկեհասկը, Գետքը, Ջրառատը, Կրաշենը), Անիի շրջանի չորս գյուղ (Հայկաձորը, Անիպեմզան, Լուսաղբյուրը, Սարակապը) և Ղուկասյանի շրջանի մեկ գյուղ (Արտենին) կառուցվելու են նոր տարածքներում:

Այժմ արդեն ավարտվում է քաղաքացիական-բնակարանային և արտադրական օբյեկտների ավելի քան 100 տիպային նախագծերի մշակումը, այնպես որ մոտ ժամանակներս շինարարությունը ավելի բուռն թափ կստանա: Մենք արդեն ունենք գյուղերի վերականգնմանը նոր մոտեցում ցուցաբերելու օրինակ: Ախուրյանի շրջանի Լեռնուտ և Կարմրաքար գյուղերն, օրինակ, երկրաշարժից առաջ գտնվում էին վերացման եզրին: «Հայգազարդ» արտադրական միավորման կոլեկտիվը պարտավորվել է ոչ միայն լիովին շենացնել դրանք, այլև դարձնել ապագայի գյուղեր: Հարմարավետ բնակարանների կողքին կկառուցվեն սոցիալական և արտադրական բոլոր անհրաժեշտ օբյեկտները: Վերածնված Լեռնուտն ու Կարմրաքարը կարող են տեղավորել մինչև 2000 բնակիչ: Այդպիսին պետք է լինեն մեր բոլոր գյուղերը:

Առանձնակի ուշադրություն է պահանջում ժամանակակից ագրոքաղաքների ստեղծման հարցը: Դրանով հարկավոր է զբաղվել հաստատակամորեն և ավելի մեծ եռանդով:

Մենք լավ ենք հասկանում, որ այսօր շատ դժվար վիճակ է ստեղծվել մարդկանց տեղավորման գործում: Դեռևս այլ վայրերում է մոտ 120 հազար մարդ, որոնք պետք է վերադառնան: 115 հազարը ապաստան է գտել ազգականների, ծանոթների կամ էլ պարզապես բարի մարդկանց մոտ: Շուրջ 65 հազար մարդ, այդ թվում երեխաներ, կանայք ու ծերունիներ, այս ամիսներն անցկացրել են վրաններում, անգամ Ղուկասյանի, Ամասիայի, Արագածի շրջանների խստաշունչ ձմռան պայմաններում: Աղետյալ գոտու անօթևան մնացած մարդկանցից ներկայումս միայն 27,5 հազարն է տեղավորված տնակներում ու վագոններում:

Տուժած բնակչության բնակարանային հարցի արագ լուծումը, մինչև հաջորդ ձմեռ նրանց բնակության պայմանների կարգավորումն այսօր սուր, անհետաձգելի սոցիալ-քաղաքական խնդիր է և դրա լուծման վրա կենտրոնացվում են բոլոր ջանքերն ու հնարավորությունները:

Այդ հարցի լուծման հիմնական ուղղություններից մեկը համարում ենք անհատական բնակարանային շինարարության ընդլայնումը:

Հայ ժողովրդին միշտ հատուկ է եղել արարելու, կառուցելու ձգտումը: Դարերի ընթացքում նրա տունը շատ անգամ է փլատակների վերածվել: Նա զրկվել է օթևանից, սակայն ամեն անգամ հայ շինարարի բազկի ուժով նորից ծխացել է հանգած օջախը: Այսօր ևս աղետի գոտում հազարավոր ընտանիքներ ցանկություն են հայտնել կառուցել և վերականգնել իրենց տները: Մենք ամեն կերպ պետք է աջակցենք նրանց, դրա համար ստեղծենք բոլոր անհրաժեշտ պայմանները:

Օրերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն քննության առավ երկրաշարժի գոտում անհատական բնակարանային շինարարության ընդլայնման միջոցառումները: Խնդիր դրվեց ամենակարճ ժամկետներում վերացնել այդ գործում եղած թերությունները: Դա առաջին հերթին վերաբերում է հողամասերի հատկացմանը, բարձր սեյսմակայունության նախագծերի մշակմանը, բնակչությանը շինանյութերի վաճառքի կազմակերպմանը:

Հանրապետության պետպլանին, պետշինին, պետագրոարդին հանձնարարված է ամենասեղմ ժամկետներում ավարտել քաղաքներում ու շրջաններում անհատական բնակարանային շինարարության համալիր ծրագրի մշակումը: Բնականաբար յուրաքանչյուր շրջանում կծագեն իրենց առանձնահատուկ խնդիրներն ու հոգսերը: Ուստի տեղական սովետները պետք է ուշադրությամբ հաշվի առնեն այս ամենը և ստեղծեն այդ աշխատանքի լայն ծավալման ամենանպաստավոր պայմաններ: Միաժամանակ բոլոր միջոցները ձեռնարկվում են մարդկանց արտոնյալ պայմաններով մինչև 30 հազար ռուբլի երկարաժամկետ վարկ տրամադրելու, նրանց անհրաժեշտ շինանյութերով, ինչպես նաև տեխնիկայով ապահովելու համար:

Այս տարվա ընթացքում բնակարանային հարցի լրիվ լուծումը իրոք անհնար է: Ուստի առանձնապես կարևոր նշանակություն ենք տալիս բնակչության համար ժամանակավոր կացարանների ստեղծմանը: Այսօր աղետի գոտուն տրամադրված է ավելի քան 14 հազար վագոն, 2 հազար 100 հավաքովի տնակ: Բայց դա խիստ անբավարար է: Այժմ երկրի ռեզերվները մոբիլիզացվում են մեզ օգնելու համար:



Միաժամանակ օգտագործվում են հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների հնարավորությունները տնակների արտադրություն կազմակերպելու համար: Վագոններն ու տնակները կարելի է տեղադրել հատկացվող հողամասերում, դրանք դարձնելով ժամանակավոր կացարաններ՝ հետագայում օգտագործելով որպես այգետնակներ: Այդ նպատակով տեղերում անհրաժեշտ է արագացնել հողամասերի հատկացումը, կազմակերպել նոր այգեգործական ընկերություններ:

Բնակարանային հարցը այսօր բարդացել է նաև նրանով, որ բազմիցս կրկնվող ցնցումների հետևանքով շարքից դուրս են եկել զգալի քանակությամբ տներ ու շենքեր: Եթե երկրաշարժի առաջին օրերին չավերված օբյեկտների ու կառուցվածքների միայն վերականգնման և նորոգման աշխատանքների ծավալը գնահատվում էր մոտ 300 միլիոն ռուբլի, ապա այսօր մանրամասն ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այն նախնական հաշվարկներից ավելի է 4—5 անգամ: Միայն Լենինականում այսօր պահանջվում է կատարել գրեթե 350 միլիոն ռուբլու վերականգնողական աշխատանք: Այսինքն՝ ստեղծվել է այնպիսի վիճակ, երբ միայն վերականգնման աշխատանքների իրականացումը կպահանջեր օգտագործել երկրաշարժի գոտում ներկայումս գտնվող շինարարների բոլոր ուժերը, լիովին դադարեցնելով նոր շինարարությունը: Բայց այդ բանը, իհարկե, մենք անել չենք կարող:

Հարկ է լրացուցիչ հնարավորություններ գտնել վերականգնման աշխատանքների համար, ներգրավել նոր ուժեր ու միջոցներ: Մեր խնդրանքին առաջինն արձագանքեցին լենինգրադցիները: Նրանք ձեռնամուխ են եղել Լենինականի կենտրոնական թաղամասերից մեկի վթարային շենքերի նախագծերի կազմմանն ու վերականգնմանը:

Մենք գիտենք, որ այժմ Լենինականում լարված դրություն է ստեղծվել բուժսպասարկման և ուսումնական պրոցեսի կազմակերպման առումով: Քիչ են շենքերն ու շինությունները: Ելնելով դրանից, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը որոշում ընդունեց կուսակցության Մոսկովյան շրջկոմի նոր շենքը վերածել հիվանդանոցի, որը սարքավորվելու է Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության ֆիրմաների հետ համատեղ: Իսկ կուսակցության Շիրակի շրջկոմի շենքը որոշվել է իբրև ուսումնական շենք տրամադրել մանկավարժական ինստիտուտին, որը մինչև օրս տեղավորված է վրաններում:

Այսօր պետք է առավելագույնս օգտագործենք մեր հանրապետության հնարավորությունները, ցույց տանք բարձր կազմակերպվածության ու կարգապահության օրինակ, աշխատենք որակով և բոլորից լավ: Դրան պետք է նպատակամղել ամբողջ կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը, կուսակցական կոմիտեների, սովետական ու տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների գործունեությունը: Մենք պետք է առավելագույնս համախմբենք բոլորին, Հայաստանը վերածենք այնպիսի ռեգիոնի, որը չունենա ոչ մի պարապ ձեռք: Միայն այս կերպ կկարողանանք կատարել մեր բարոյական ու մարդկային պարտքը սեփական ժողովրդի հանդեպ:

Չպետք է հույս դնել այն բանի վրա, թե մեր փոխարեն ամեն ինչ կանեն, ամեն ինչ կկառուցեն: Հանրապետության վերածնումը նախ և առաջ մեր հոգսը պետք է լինի: Մեր ժողովուրդը տոկունության ու արիության օրինակ ցույց տվեց երկրաշարժի առաջին օրերին, ակտիվորեն մասնակցեց փրկարար աշխատանքներին: Այսօր մենք պետք է լինենք վերականգնման առաջին շարքերում: Չէ՞ որ մենք շինարար ժողովուրդ ենք և պետք է ցուցաբերենք ոչ միայն պատասխանատու, այլև ստեղծագործ, ոգեշունչ աշխատանքի օրինակ:

Ներկայումս աղետի գոտում աշխատանքի տեղավորված չէ ավելի քան 46 հազար աշխատունակ մարդ, այդ թվում Լենինականում՝ 7 հազար 200, Ախուրյանի շրջանում 6 հազար 750, Արթիկի շրջանում՝ 5 հազար, Արագածի շրջանում՝ 1400, Թալինի շրջանում՝ 2 հազար 500 մարդ: Դեռևս աշխատանքի չտեղավորված ոչ քիչ թվով մարդիկ կան Անիի, Ամասիայի և այլ շրջաններում: Մարդկանց աշխատանքի տեղավորման, շինարարական և վերականգնման գործում նրանց ակտիվ ներգրավման հարցը մեր ամենօրյա ուշադրության կենտրոնում է: Միայն վերջին 15 օրում աշխատանքի չտեղավորվածների թիվը կրճատվել է ավելի քան 10 հազարով: Այսօր արդեն շինարարական կազմակերպություններում 35 հազար մարդ է ներգրավվել: Բայց դա դեռևս խիստ անբավարար է: Մինչև տարեվերջ աղետի գոտում շինարարների թիվը պետք է հասնի 200 հազարի: Նրանց թվում առաջին հերթին պետք է լինեն բոլոր նրանք, ովքեր կորցրել են աշխատանքը և այսօր աշխատանքի կարիք ունեն:

Մենք առանձնակի ուշադրություն ենք նվիրում քանդված ու կիսաքանդ արդյունաբերական ձեռնարկությունների վերականգնմանը։ Բայց այստեղ էլ բարդ խնդիրների լուծման առաջ ենք կանգնել։ Տուժած գոտու արտադրական կարողությունների ավելի քան երկու երրորդը շարքից դուրս է եկել։ Մինչև երկրաշարժը Լենինականն, օրինակ, ամսական տալիս էր ավելի քան 50 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք։ Երկրաշարժից հետո փաստորեն բոլոր ձեռնարկությունները դադարեցին գործել։ Այսօր աշխատանքը մասամբ վերականգնվել է և փետրվարին արդեն թողարկվել մոտավորապես 5 միլիոն ռուբլու արտադրանք։ Առաջին կարևոր քայլն է արվել բնականոն աշխատանքի անցնելու համար։ Արդեն աշխատում է Լենինականի բամբակագործվածքային միավորման կոլեկտիվի ավելի քան մեկ երրորդը, Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկայում՝ մոտ կեսը։ Արտադրությունը կարգավորվում է նաև մի քանի այլ ձեռնարկություններում։

Կորսված աշխատատեղերի վերականգնումը ինքնանպատակ չէ։ Մենք պետք է ստեղծենք որակապես նոր արտադրություններ, որոնք աչքի կընկնեն տեխնիկական բարձր հագեցվածությամբ, նորագույն տեխնոլոգիայով, բանվորների աշխատանքի և կենցաղի կազմակերպման ժամանակակից մակարդակով։

Այժմ, երբ մենք մշակում ենք բոլոր ուղղություններով երկրաշարժի հետևանքների վերացման համընդհանուր, բազմակողմանիորեն կշռադատված, հեռանկարային ծրագիր, հարկավոր է բացառել նախատեսվածից ամեն մի շեղում, հրաժարվել ժամանակավոր լուծումների ու կիսամիջոցների գայթակղությունից, որպեսզի մեր սերունդները մեզ հանդիմանելու առիթ չունենան։ Բայց դժվար է հասնել դրան։ Իրադրությունն այսօր էլ շարունակում է մնալ չափազանց բարդ։ Մեզ չի բավարարում, օրինակ, շինարարական և վերականգնման աշխատանքների թափը Լենինականում։ Մինչև հիմա դեռ ավարտված չէ 58-րդ թաղամասի դպրոցների, մանկապարտեզների, սոցիալական, կուլտուր-կենցաղային այլ օբյեկտների շինարարության նախագծերի վերջնական տեղակցումը։ Դեռևս չի սկսվել կառուցապատվող նոր տարածքի համակողմանի ֆրացումը, լիովին հետազոտված չէ քաղաքի պետական բնակարանային ֆոնդը։ Էլ ավելի բարդ է մասնավոր հատվածի տների վերականգնման վիճակը։ Լուրջ անհանգստություն է պատճառում նաև այն, որ բուն քաղաքում շինարարական աշխատանքները դեռևս ձգձգվում են։

Երկրաշարժի առաջին ամիսներին վերականգնման և շինարարության աշխատանքները դանդաղ են ընթանում ոչ միայն ավերածությունների աննախադեպ մասշտաբների, այլև հանրապետական և տեղական մի շարք մարմինների անճարակության պատճառով։ Արտակարգ իրավիճակում ի հայտ եկան թե՛ հանրապետական, թե՛ շրջանային օղակի առանձին ղեկավար աշխատողների, մասնագետների անձեռնհասությունը, նրանց գործիմացության և մասնագիտական ոչ բավարար մակարդակը։

Մենք մի շարք կոնկրետ միջոցներ ենք ձեռնարկել կառավարման կառուցվածքների կատարելագործման, կադրերի նորացման ուղղությամբ, ներառյալ հանրապետության Մինիստրների խորհուրդը, պետշինը, կառավարման այլ օղակներ։ Տեղերում ստեղծված են կոորդինացիոն շտաբներ, որոնց մեջ ընդգրկվել են երկրի փորձառու մասնագետներ։

Շինարարական և վերականգնման աշխատանքների ծավալները մեր առջև ոչ պակաս կարևոր այլ խնդիր են դրել՝ ապահովել անհրաժեշտ քանակությամբ շինանյութերի և հատկապես տուֆի ու բազալտի և դրանցից պատրաստվող շինարարկաների արտադրությունը։

Պետք է ասել, որ այս հարցում մենք մեծ բարդությունների ենք հանդիպել։ Չէ՞ որ մինչև հիմա հանրապետությունում տարեկան արտադրվել է ընդամենը մոտ մեկ միլիոն խորանարդ մետր քար։ Արտադրության կազմակերպման գործում եղած թերությունները, քարի արդյունահանման ձեռնարկությունների նյութատեխնիկական թույլ բազան, քարհանքերում բանվորների աշխատանքի ու կենցաղի պայմանների կազմակերպման հարցերի նկատմամբ ղեկավար աշխատողների անպատասխանատու վերաբերմունքը փաստորեն ճյուղը բարձիթողի վիճակի են հասցրել։ Երկրաշարժից հետո առավել սրությամբ զգալ տվեցին այդ թերությունները։

Վերջերս հատուկ քննության առնվեցին քարի արտադրությունը կտրուկ կերպով ավելացնելու հետ կապված միջոցառումները։ Նախատեսված են և արդեն իրականացվում են քարհանքային տնտեսության արդիականացման, պակասող տեխնիկայով, մեքենաներով ու մեխանիզմներով նրա զինման, բարձրարտադրողական աշխատանքի համար բոլոր անհրաժեշտ պայմանների ստեղծման միջոցառումներ։ Այս



ուղղությամբ հանրապետության կառավարությունը համապատասխան ծրագիր է հաստատել, հաշվի առնելով բնապահպանության խնդիրները։ Կատարելագործվում է նաև ճյուղի կառավարման համակարգը։

Կուսակցության քաղաքային, շրջանային կոմիտեները, ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմները պետք է հասնեն շինանյութերի արտադրությունն ավելացնելու վերաբերյալ ընդունված որոշումների անվերապահ կատարմանը, տեղերում լրացուցիչ հնարավորություններ գտնեն դրանց թողարկումն ավելացնելու համար։ Դա առանձնապես վերաբերում է Ախուրյանի, Արթիկի, Թալինի, Անիի շրջաններին, որտեղ կան տեղական շինանյութերի մեծ պաշարներ։

Այսօր մենք լարված աշխատանք ենք տանում օտարերկրյա ֆիրմաների ու պետությունների, սփյուռքի մեր հայրենակիցների հետ, որոնք առաջարկել են իրենց օգնությունը։ Ստացվել է բնակելի տների և սոցիալ-կենցաղային օբյեկտների շինարարության ավելի քան 150 առաջարկություն։ Մենք ամեն ինչ կանենք, որպեսզի այդ առաջարկություններն անհապաղ կենսագործվեն։ Այսօր իտալացիներն արդեն ձեռնամուխ են եղել 204 ընտանիքի համար նախատեսված բնակելի ավանի շինարարությանը, նորվեգացիներն ու չեխերը՝ Սպիտակում հիվանդանոցի ու դպրոցի կառուցմանը։ Մինչև սեպտեմբեր անգլիացիները շահագործման կհանձնեն մեկ հիվանդանոց, ավստրիացիները մինչև տարեվերջ Լենինականում կգործարկեն 100 ընտանիքի համար նախատեսված բնակելի ավան։ Մոնղոլները տարվա ընթացքում Թալինում կկառուցեն մեկ դպրոց և մեկ մանկապարտեզ, իսկ բուլղարներն առաջին կիսամյակում՝ 300 ընտանիքի համար բնակելի ավան Կիրովականում։ Բացի այդ, Ֆինլանդիայի և Կարմիր խաչի միջազգային լիգայի մասնագետների ուժերով երկու տարում Սպիտակում կկառուցվի 300 մահճակալով վերականգնողական կենտրոն։

Ինչպես ձեզ հայտնի է, Լենինականում արդեն բացվել է ախտորոշման հանրապետական կենտրոնի մասնաճյուղը, որի կահավորումը ստանձնել է «Սահմաններ չճանաչող բժիշկներ» միջազգային հումանիտար կազմակերպությունը։

Կարևոր է արդյունավետ, խելամիտ և, որ գլխավորն է, հեռանկարով օգտագործել այն հսկայական օգնությունը, որ մեզ տրամադրում են մեր երկիրը, արտասահմանյան ֆիրմաներն ու հասարակական կազմակերպությունները։ Այն պետք է ծառայի ոչ միայն այսօրվա խնդիրների լուծմանը, այլև անհրաժեշտ նախադրյալներ ստեղծի արտադրողական ուժերի խելամիտ զարգացման, որակապես նոր հիմքի վրա հանրապետության առաջընթացի համար։

Ընկերնե՛ր։

Երկրաշարժից հետո Հայաստանում ստեղծված նոր իրադրությունը թելադրում է ունենալ հանրապետության զարգացման, նրա վերածնության խորապես մտածված ծրագիր։ Այդ ծրագիրը պետք է համակողմանիորեն քննության առնվի լայն հասարակայնության, գիտական ու ստեղծագործական մտավորականության կողմից։ Նրանում պետք է ընդգրկվեն ոչ միայն երկրաշարժի գոտում ծագած բոլոր սուր պրոբլեմները։ Այսօր պահանջվում է նորովի իմաստավորել մեր ժողովրդական տնտեսության զարգացման, արտադրողական ուժերի տեղաբաշխման հեռանկարները։ Անհրաժեշտ է նոր վերաբերմունք մշակել արտաքին տնտեսական կապերի, էկոլոգիական պրոբլեմների լուծման նկատմամբ։

Այդ ծրագիրը պետք է ընդգրկի հասունացած բոլոր սոցիալական պրոբլեմները, հատկապես բնակչության սոցիալական ռեաբիլիտացման, ազգային մշակույթի պահպանման ու զարգացման, գաղափարաբարոյական մթնոլորտի առողջացման, ազգամիջյան հարաբերությունների կատարելագործման հարցերը։

Այն մշակելիս պետք է ելնել մեր զարգացման արդի փուլի կոնկրետ առանձնահատկություններից։

Առաջին պլան մղված հանրապետության գլխավոր ցավոտ խնդիրը՝ նրա ավերված քաղաքների ու գյուղերի կենսագործունեության վերականգնումը, պետք է լուծվի ոչ թե մեկուսի, այլ այն կենսական խնդիրների հետ համատեղ ու փոխկապակցված, որոնք ընդհանուր են հանրապետության ամբողջ ժողովրդատնտեսական համալիրի զարգացման համար։

Հանրապետության ժողովրդական տնտեսությունն այսօր ոչ թե առանձին ու սովորական պատվաստումների, այլ արմատական վիրահատության և լուրջ բուժման կարիք ունի։ Այլապես նա չի կարողանա գործել նոր պայմաններում, կդատապարտվի փլուզման։ Լճացման վիհը, որից մենք դուրս ենք գալիս, ավելի խորն ու գահավեժ գտնվեց, քան մեզ թվում էր։ Ձեռնարկությունները և ամբողջական ճյուղեր

ոտքից գլուխ կաշկանդված են հին, անարդյունավետ կապերով և չեն կարողանա նոր ճանապարհ դուրս գալ, մինչև չթոթափեն այդ կապանքները:

Տարիներ շարունակ հանրապետության տնտեսական իրադրության վատթարացումը լրացվել է մարդկանց սոցիալական անբավարարվածության խորացմամբ: Պարենային հարցի սրման, շատ ապրանքների և ծառայությունների դեֆիցիտի պատճառով հանրապետության սպառողական շուկան շարունակում է մնալ անհավասարակշռված: Բնակչության ավելի քան կեսմիլիարդանոց չբավարարված պահանջարկը ապակայունացնում է դրամաշրջանառությունը, հող ստեղծում բացասական երևույթների համար: Ցավոք, դրանց դեմ մղվող պայքարը երկար ժամանակ մեզ մոտ հաճախ փոխարինվել է մերկապարանոց հայտարարություններով ու կոչերով: Իսկ իրականում ամեն ինչ ընթացել է առաջվա պես. բարգավաճել են սպեկուլյացիան, կաշառակերությունը, խաբեությունը, դրամաշորթությունը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը խիստ անհանգստացած է բնակչության սպասարկման և ամենից առաջ առևտրի ոլորտում տիրող վիճակից: Մենք այդ ճյուղերի աշխատանքը գնահատում ենք անբավարար: Առևտրի ոլորտում արմատացած այլանդակ երևույթների դեմ պայքարելու հարցը օրերս սուր, սկզբունքային խոսակցության առարկա դարձավ Կենտկոմի բյուրոյում: Առևտրի մինիստրության, Հայկոոպի, ինչպես նաև Մինիստրների խորհրդի այն պաշտոնատար անձինք, ովքեր ղեկավարում ու վերահսկում են սպասարկման ոլորտը, պետք է լավ գիտակցեն, որ իրենք անձնական պատասխանատվություն են կրում այդ ճյուղերի վիճակի համար:

Առևտրի, սպասարկման ամբողջ ոլորտի աշխատանքի բարելավումը այսօրվա գլխավոր քաղաքական խնդիրներից է, և կուսակցության քաղկոմները, շրջկոմները պետք է ամենայն պատասխանատվությամբ վերաբերվեն աշխատանքի այդ տեղամասին, առավելագույն ջանքեր գործադրեն դրությունը շտապփույթ շտկելու համար: Եվ այդ խնդիրը մենք պետք է լուծենք համատեղ, ամենուրեք սահմանելով ներգործուն հասարակական, բանվորական վերահսկողություն, ընդսմին ապահովելով նաև լայն հրապարակայնություն: Ոչ պակաս տագնապալի վիճակ է ստեղծվել նաև բնակարանով մարդկանց ապահովելու գործում: Վերջին տարիներին նվազել են բնակարանային շինարարության տեմպերը: Ավելին, շահագործման է հանձնվել ավելի քիչ բնակմակերես, քան քսան տարի առաջ: Եվ դա այն դեպքում, երբ զգալիորեն ավելացել է կարիքավորների թիվը:

Սոցիալական ոլորտում կուտակվել են նաև այլ բնույթի սուր պրոբլեմներ: Տարիներ շարունակ հարկ եղած զարգացում չի ստացել կրթության, առողջապահության, մշակույթի, կոմունալ-կենցաղային սպասարկման ճյուղերի նյութատեխնիկական բազան: Քիչ չեն պրոբլեմները բնապահպանության ասպարեզում, որոնց լուծումը հսկայական ջանքեր է պահանջում:

Ընդմիշտ անցյալի գիրկն անցավ աշխատավորների մտահոգությունը, որ Հայաստանի ատոմակայանը տեղավորված է խտաբնակ Արարատյան դաշտում՝ մեծ սեյսմիկության գոտում, Երևանի կողքին: Ատոմային էներգետիկայի համաշխարհային պրակտիկայում առաջին անգամ փակվեց մեծ հզորություն ունեցող գործող կայանը: Այդ որոշումը հայ ժողովրդի բախտի նկատմամբ կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ցուցաբերած հոգատարության ևս մի համոզիչ դրսևորում է: Հանրապետության աշխատավորները, մեր երիտասարդները ջերմ շնորհակալության ու երախտագիտության զգացումով ընկալեցին այդ որոշումը:

Ընկերնե՛ր:

Մենք հաստատակամորեն կկենսագործենք էկոնոմիկայի սոցիալական վերակողմնորոշումն արագացնելու կուրսը: Մարդկանց բնակարանային պայմանների բարելավման, սննդամթերքներով, արդյունաբերական ապրանքներով ու սպասարկումներով ապահովման, տրանսպորտային և բժշկական սպասարկման, էկոլոգիական իրադրության առողջացման հարցերը մշտապես կգտնվեն Կենտկոմի, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, կուսակցական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում:

Մեր սրբազան քաղաքացիական պարտքն է համընդհանուր ուշադրություն նվիրել մայրության և մանկության պահպանությանը, առանձնակի հոգատարությամբ շրջապատել հաշմանդամներին և միայնակ, զառամյալ քաղաքացիներին, ուժեղացնել նյութական և բարոյական աջակցությունը երիտասարդ ու հատկապես բազմազավակ ընտանիքներին: Անհետաձգելի հարց է վերականգնողական բուժկենտրոնների, տրավմատոլոգիական-օրթոպեդիկ և առողջարարական բուժհիմնարկների ստեղծումը: Կարևոր է նաև վերականգնման աշխատանքների ամբողջ ժամանակա-



շրջանում ապահովել նորմալ համաճարակային իրադրությունը:

Վերջերս հանրապետությունում տեղի ունեցած իրադարձությունները, ինչպես նաև նոր, դեռևս մինչև վերջ չգիտակցված սոցիալ-ժողովրդագրական պրոցեսները մեզանից հրամայաբար պահանջում են մշակել և իրականացնել այնպիսի համալիր միջոցառումներ, որոնք հնարավորություն ընձեռեն մեղմացնելու երկրաշարժի դեմոգրաֆիկ բացասական հետևանքները:

Հանրապետության սոցիալական կյանքի որակական վերափոխումների հիմքը արդյունավետ էկոնոմիկան է: Իսկ ի՞նչ պետք է անել նրա ամրապնդման համար: Առաջնահերթ խնդիր է առավելագույն ջանքեր գործադրել, որպեսզի հանրապետության էկոնոմիկան դառնա դինամիկ և արդիական, որպեսզի զգալիորեն արագանա գիտատեխնիկական առաջընթացը, էապես վերափոխվեն արտադրողական ուժերը:

Պետք է հետևողականորեն նորացվի արդյունաբերական պոտենցիալը, առանձնապես մեքենաշինական համալիրը, ապահովվի կտրուկ անցում տնտեսական աճի ինտենսիվ գործոններին:

Օրակարգի հարց է հանրապետության գիտության, մասնավանդ հիմնարար հետազոտությունների արագացված զարգացումը, սոցիալական և բնագիտական գիտելիքների իրական հատույցի մեծացումը: Էկոնոմիկայում, կառավարման մեջ և էկոլոգիայում ոչ մի խոշոր որոշում չպետք է ընդունվի առանց գիտական լուրջ հիմնավորման, գիտնականների անաչառ փորձաքննության, առանց համաժողովրդական քննարկման և հասարակական ճանաչման:

Բնականաբար, այսօր հանրապետության էկոնոմիկայի զարգացման մեջ արմատական փոփոխությունների հասնել հնարավոր չէ՝ պահպանելով հարցերի լուծման տեխնոկրատական և զուտ ճյուղային մոտեցումները: Մենք պետք է խորապես բացահայտենք փոփոխված արտադրական հարաբերությունների էությունը և մեր քաղաքականությունը կառուցենք հենց այդ հիմքի վրա:

Իսկ այստեղ գլխավորն այն է, որ մեր շահերը զուգակցելով ամբողջ երկրի զարգացման խնդիրների հետ, հանդես բերենք ավելի մեծ նախաձեռնություն, ինքնուրույնություն և պատասխանատվություն, ավելի լրիվ օգտագործենք մեր սուվերեն իրավունքները տնտեսական ու սոցիալական զարգացման հարցերի լուծման գործում: Ինքնակառավարման և ինքնաֆինանսավորման, արտադրության կազմակերպման տնտհաշվարկային հիմունքների խորացման սկզբունքներով էկոնոմիկայի և սոցիալական ոլորտի ղեկավարումը կդառնա հանրապետության տնտեսական վերափոխման մեր քաղաքականության ամուր օղակը:

Էկոնոմիկայի զարգացման գրավականը մենք համարում ենք տնտեսական ռեֆորմի բոլոր տարրերը կոմպլեքսայնորեն ներդնելը, լրիվ տնտհաշվարկի սկզբունքները յուրաքանչյուր աշխատատեղ հասցնելը: Մեզ մոտ տնտեսական ռեֆորմը դեռևս ինչպես հարկն է գործի չի դրվել: Դանդաղ է ընթանում տնտեսավարման արդյունավետ մեթոդների յուրացումը և ամենից առաջ անցումը վարձակալական, կոլեկտիվ կապալի:

Բոլորը չէ, որ լիովին գիտակցում են այս պրոցեսները: Շատերին հանկարծակիի բերեցին արտադրության մեջ մարդու նոր դիրքը, սեփականության հետ նրա կապի նոր բնույթը:

Իհարկե, մեզ համար ամենասուրը և ամենացավոտը մնում է պարենային պրոբլեմը: Սովետական Միության կոմկուսի Կենտկոմի 1989 թ. մարտյան պլենումում հստակ խնդիր դրվեց. մշտապես հոգ տանել գյուղի աշխատավորի մասին, նրա համար արտադրական ու սոցիալ-կենցաղային որակապես նոր պայմանների ստեղծման մասին: Այսօր ոչ պակաս նորարարական ջանքեր է պահանջում նաև գյուղի տնտեսական հարաբերությունների վերակառուցումը: Այդ պրոցեսն արդեն սկսվել է:

Ձևավորվում են կոոպերատիվներ, զարգանում են տնտհաշվարկը, կապալի և վարձակալության զանազան ձևերը: Սակայն հանրապետությունում գյուղատնտեսության մեջ տնտեսական հարաբերությունների վերակառուցումը առայժմ դանդաղ է ընթանում: Սպասել և կողքից դիտել, թե վարձակալությունը, կոոպերացիան, տնտհաշվարկը, կապալը երբ կհասնեն մեր դաշտերն ու ֆերմաները, պարզապես անթույլատրելի է: Հարկ է խորապես գիտակցել, որ պարենային պրոբլեմը մեր փոխարեն ոչ ոք չի լուծի: Սա համակուսակցական, համաժողովրդական գործ է:

Հանրապետության առջև ծառացած խնդիրների լուծման համար անհրաժեշտ է կադրերի նոր մտածողություն: Տարիներ ի վեր դրսևորված պահպանողականությունը ոչ միայն հանգեցրել է տնտեսական ու սոցիալական լճացման, այլև շատ

ղեկավար աշխատողների, ասենք նաև՝ ոչ միայն նրանց մեջ, մեթոդաբար բթացրել է ստեղծագործական նախաձեռնության զգացումը:

Այս ամենը, ինչպես նաև գոյություն ունեցող կադրային «վակուումը» այսօր, ինչպես երբեք, լրջորեն արգելակում են մեր առաջընթացը: Ելքը մեկն է՝ ավելի վճռականորեն վարել հանրապետության կադրային առողջացման քաղաքականությունը, որը կոչված է ապահովելու կառավարման բոլոր օղակների մեծ գործունակությունը: Այն մարդկանցից, ովքեր չեն արդարացնում վստահությունը, չեն ապրում մարդկանց ամենօրյա շահերով, առանց երկմտելու կազատվենք, անկախ այն բանից, թե նրանք վաղուց են առաջ քաշված, թե վերջերս:

Հանրապետությունում քիչ չեն գործիմաց, տաղանդավոր, իրենց աշխատանքին նվիրված մարդիկ, ընդունակ երիտասարդներ: Վստահ եմ, որ նրանք կարող են իրենց գիտելիքներն ու եռանդը պատվով և արժանապատվությամբ ի սպաս դնել հանրապետության համար բախտորոշ աշխատանքների ակտիվ ծավալմանը: Կադրային պոտենցիալի հետագա ամրապնդումը, թարմ ուժերի ներհոսքը, մասնագետների օգտագործման բարելավումը, նրանց քաղաքական կուլտուրայի բարձրացումը, մարդկանց հետ աշխատելու և նրանց ղեկավարելու լիարողության դաստիարակումը պետք է դառնան մեր ամենակարևոր և ամենապատասխանատու խնդիրներից մեկը:

Էկոնոմիկայի առողջացումը, սոցիալական հարցերի լուծումը մարդու կյանքը ավելի բարվոք և վերջին հաշվով ավելի երջանիկ դարձնելու նպատակ են հետապնդում: Բայց մարդը իսկապես երջանիկ կարող է լինել միայն այն դեպքում, երբ բավարարվում են նրա ոչ միայն նյութական, այլև հոգևոր պահանջմունքները: Հենց դրա համար էլ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումը նախատեսեց հոգևոր ոլորտի վերակառուցման միջոցառումների ամբողջական ծրագիր: Լեզվի, պատմական անցյալի, մշակույթի, կրթության, գիտության հարցերը առանձնակի հրատապություն են ստանում մեր օրերում, երբ մենք բոլորս ազգային ինքնագիտակցության արթնացման վկաներն ենք դառնում:

Մենք սրբությամբ պետք է պահպանենք այն ամենը, ինչ ստեղծվել է հայ ժողովրդի տաղանդով ու ներշնչանքով, ինչ մեզ է հասել դարերի խորքից: Եվ ոչ թե սոսկ պահպանենք, այլ մեր ավանդն ավելացնենք ու փոխանցենք գալիք սերունդներին:

Մեր ժողովուրդը իր պատմության նույնիսկ ամենաողբերգական օրերում նյութականը իմաստնաբար զոհաբերել է հանուն հոգևորի, թողել է դժվարին աշխատանքի վաստակը, իր հետ տարել մագաղաթը, փրկել մշակույթը, փրկել իր հիշողությունը, քանզի հիշողության մեջ է ժողովրդի հարատևման ու նրա վերածննդի զորությունը, քանզի առանց հիշողության չկա պատմություն, չկա բարոյականություն, չկա ինքնագիտակցում:

Մենք պետք է համաժողովրդական հոգատարությամբ շրջապատենք մշակույթի, ճարտարապետության այն հուշարձանները, թանգարանները, որոնց վերքեր են հասցրել ժամանակները, իսկ հիմա նաև տարերքը:

2 հազար 338 հուշարձաններից լրիվ ավերվել է 155-ը, կիսավեր է 1199-ը և մասնակիորեն ավերվել է 984-ը:

Լրջորեն վնասված է հայ միջնադարյան ճարտարապետության մարգարիտը՝ Երերույքի 4-րդ դարի բազիլիկ եկեղեցին: Երկրաշարժը չխնայեց Զարնջայի 6-րդ դարի գմբեթավոր եկեղեցին: Վթարային վիճակում են Մարմաշենի, Մայիսյանի, Պեմզաշենի, Արթիկի, Գյուլագարակի, Թալինի մի շարք հուշարձաններ: Լրիվ ավերված են Լենինականի 19-րդ դարի վերջի Ամենափրկիչ և Սուրբ Նշան եկեղեցիները: Առանձնակի ուշադրություն է պահանջում Կումայրի պետական պատմամշակութային արգելոցը, Գյումրիի հին բնակարանային ֆոնդը:

Վերջերս հանրապետության Մինիստրների խորհուրդը քննարկեց տարերային աղետի գոտում գտնվող պատմության և մշակույթի հուշարձանների վերականգնման ու կոնսերվացման աշխատանքների կազմակերպման հարցը: Կոնկրետ միջոցներ ձեռնարկվեցին հանրապետության վերականգնողական կազմակերպությունների նյութատեխնիկական բազայի ամրապնդման համար: Կառավարության որոշմամբ ստեղծվել են «Հայվերականգնում» մասնագիտացված տրեստը, շինանյութերի կոմբինատ, հատուկ միջնակարգ պրոֆտեխուսումնարան, որը պատրաստելու է քարտաշներ, դարբիններ, փայտափորագրիչներ:



Մենք անցյալի համար ապագայի հանդեպ մեր պատասխանատվության զգացումով պետք է ծավալենք մշակույթի հուշարձանների գիտական հաշվառման, դրանց վերականգնման ու կոնսերվացման, թանգարանային գործի կատարելագործման, թանգարանների ու պահոցների ավելի խելացի տեղաբաշխման մեծ, բարդ ու քրտնաջան աշխատանքը:

Քայլեր են արվում դժնի ժամանակներում մոռացության մատնված ազգային գրականության ու արվեստի ստեղծագործությունները ժողովրդին վերադարձնելու, նրա պատմական հիշողության սպիտակ էջերը վերացնելու, անցյալի մի շարք հասարակական ու մշակութային գործիչների գիտական գնահատականը տալու նպատակով: Դա, իհարկե, մեկ օրվա գործ չէ, հարկավոր է գիտնականների, հասարակայնության լուրջ վերաբերմունք: Այդ գործին մենք հետևողականորեն հետամուտ կլինենք:

Տարերային աղետը նորից ի հայտ բերեց սփյուռքահայության անկեղծ զգացմունքները հայրենիքի հանդեպ: Այսօր ամրապնդված մշակութային, գործարար, բարեգործական կապերը մենք պետք է հետևողականորեն զարգացնենք, հարստացնենք նոր բովանդակությամբ:

Կրթության կարևոր գործոններից մեկը մայրենի լեզվով խոսելն է: Հայոց լեզուն սահմանադրորեն վավերացված է որպես մեր հանրապետության պետական լեզու: Ուստի դրա նկատմամբ հոգատար վերաբերմունքը, կյանքի բոլոր ոլորտներում լայն ու անկաշկանդ գործածությունը, լեզվի սոցիալական հարգի նկատմամբ հոգատարությունը մարդու քաղաքացիական պարտքն է, նրա հոգևոր հարստության, քաղաքակրթվածության անհրաժեշտ պայմանը:

Շուտով լայն քննարկման կդրվի մի նախագիծ, որով նախատեսվում է հանրապետությունում հայոց լեզվի գործառությունն ու բազմակողմանի կիրառությունը բարելավելու միջոցառումների ընդարձակ ծրագիր:

Այսօր հաջողվել է մշակել Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի նկատմամբ կշռադատված, բուն իրադրությունից բխող մոտեցում: Այդ ուղին դյուրին չէր, պահանջեց մեծ և լարված աշխատանք:

Լեռնային Ղարաբաղում կառավարման հատուկ ձև մտցնելը ստեղծված իրավիճակում ռեգիոնում ազգամիջյան հարաբերությունների կարգավորման բանալի է տալիս:

Բարենպաստ պայմաններ են ստեղծված Լեռնային Ղարաբաղի հետ մեր կապերի հետագա զարգացման ու խորացման համար: Այս հարցերը համակողմանիորեն քննարկվեցին վերջերս Լեռնային Ղարաբաղի ստեղծագործական մտավորականության ներկայացուցիչների հետ Հայաստանի կոմկուսի Կենտկոմում կայացած հանդիպման ժամանակ: Մշակվել է մեր հանրապետության և Լեռնային Ղարաբաղի միջև փոխադարձ կապերի ամրապնդման ծրագիր:

Այսօր մարդկանց հուզում է գաղթականների պրոբլեմը:

Ներկայումս մեր հանրապետությունում նրանց թիվը հասել է 195 հազարի: Նրանք ժամանակավորապես բնակվում են հարազատների ու ծանոթների մոտ, տեղավորված են պանսիոնատներում, հանրակացարաններում, հանգստյան տներում: Պետք է ասել, որ նախկին բնակավայր մարդկանց վերադարձի պրոցեսը դանդաղ է ընթանում, իսկ շատերն էլ ընդհանրապես հրաժարվում են վերադառնալուց: Ժամանակ և հաստատակամ ջանքեր են պահանջվում ծագած հակասությունները կարգավորելու, իրենց անվտանգության երաշխիքների հանդեպ մարդկանց հավատը վերականգնելու համար: Բայց դա չի նշանակում, թե մենք անօթևան մնացած մարդկանց նկատմամբ անուշադիր կլինենք: Մենք պետք է ամենօրյա հոգատարությամբ շրջապատենք գաղթականներին, լուծենք նրանց հուզող հարցերը:

Ընկերնե՛ր:

Ներկա ընտրական կամպանիայով սկիզբ դրվեց մեր հասարակության քաղաքական համակարգի բարեփոխմանը: Դրա նպատակն է ապահովել ժողովրդի լիիշխանությունը, որը հիրավի դեմոկրատիայի դպրոց է ամենքիս համար: Այս խնդիրների լուծումը մտնում է նաև մեր նախընտրական պլատֆորմի մեջ: Այն բխում է Սովետական Միության կոմկուսի Կենտկոմի կողմից «Կուսակցությանը, սովետական ժողովրդին» ուղղված դիմումի ծրագրային նպատակներից, ընդգրկում է մեր հասարակության առջև կանգնած բոլոր առաջնահերթ խնդիրները՝ տնտեսական, սոցիալական, ազգային, էկոլոգիական պրոբլեմները, առաջարկում է դրանց լուծման բազմակողմանիորեն հիմնավորված միջոցառումներ:

Այսօր մեր կուսակցությունը բացեիբաց խոսում է նորացման ճանապարհին ե-ղած դժվարությունների մասին, չի թաքցնում վրիպումները, բացթողումները. ճշմարտության դասը, XXVII համագումարի դասը շարունակվում է: Եվ մենք մեր ոչ դյուրին հարցերը պետք է լուծենք, հենվելով ճշմարտության վրա, ժողովրդի լայն աջակցության վրա:

Մենք պետք է տոգորվենք այն գիտակցությամբ, որ մեր այսօրվա մտավոր, հոգևոր, տնտեսական մակարդակից, քաղաքական կուլտուրայից է կախված, թե հայ ժողովուրդը ինչպիսին կլինի XXI դար թևակոխելիս: Եկեք միշտ հիշենք դա և այդ գիտակցությամբ էլ ապրենք ու աշխատենք:

Հետադարձ հայացք գցելով դեկտեմբերի 7-ից հետո անցած օրերի ու գիշերների վրա, մենք անչափ մեծ ցավի ու հպարտության զգացումով ենք համակվում: Դրանք վշտի ու եղբայրության, ողբի ու արիության, մարդկային համերաշխության ու գթասրտության օրեր էին:

Այն ճակատագրական ժամին մեր հայրենի լեռներն ասես ըմբոստացել էին մեր դեմ: Բայց մարդիկ իրենք լեռնացան ընդդեմ տարերքի: Վիրավոր, բայց կանգուն է մեր հնադարյան Հայաստանը: Նա ապրում է ու պայքարում է ի դեմս իր մանուկների, որոնց աչքերի դարավոր վշտին մի մեծ ողբերգության ստվեր ևս ընկավ: Բայց Հայաստանի մանուկների աչքերում առկայծում է նաև մեծ հույսը: Անխորտակ է մեր հույսը: Այն ապրում է մեր հնադարյան, բայց նույնքան էլ երիտասարդ ոգու մեջ, այն ապրում է մեր ծրագրերում ու երազանքներում:

Հենց դրա համար էլ ես վստահ եմ, որ մենք մեր ամբողջ երկրի օգնությամբ կվերականգնենք մեր ավերված քաղաքները ու գյուղերը: Հայոց քաղաքներն ու գյուղերը: Մենք կվերականգնենք ոչ միայն տներն ու ձեռնարկությունները, ոչ միայն ճարտարապետական հուշարձանները... Մենք կվերականգնենք ժողովրդի հոգու ավերված տաճարը, կվերականգնենք նրա հավատը, նրա լավատեսությունը:

Սա դժվարին խնդիր է: Բայց մենք այն կիրագործենք: Դրա առհավատչյան մեր դարավոր պատմությունն է և մեր ժողովրդի ճակատագիրը, ապրելու և հարատևելու նրա անկոտրում կամքը:

---



# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

**Հ. ՍԻՄՈՆՅԱՆ**

ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ սկզբից իսկ պարզ դարձավ, որ երկրորդ ինտերնացիոնալի մեջ համախմբված բանվորական, սոցիալ-դեմոկրատական կուսակցություններն ըստ էության խզված են մարքսիզմից և, մասնավորապես, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներից: Ինտերնացիոնալը քայքայվեց, որովհետև նրա ղեկավար մարմիններում, ինչպես նաև այնտեղ ներկայացված կուսակցությունների ղեկավարության մեջ գերակշռում էին ռեֆորմիստները, որոնք հրաժարվելով բուրժուազիայի դեմ հեղափոխական պայքար մղելուց, քարոզում էին խաղաղ ճանապարհով պրոլետարիատի օգտին կապիտալիզմի աստիճանական վերափոխման գաղափարը:

Կյանքը, բանվոր դասակարգի պայքարի շահերը թելադրում էին նոր հիմքի, հետևողական մարքսիզմի ամուր սկզբունքների վրա համախմբել միջազգային պրոլետարիատի հեղափոխական ուժերը, միավորել նրա ազգային բոլոր ջոկատները կապիտալիզմի դեմ ընդհանուր գրոհ նախապատրաստելու համար:

Նոր ինտերնացիոնալի ստեղծման կարևորագույն նախադրյալներից մեկը Վ. Ի. Լենինի կողմից կոմունիստական շարժման գաղափարական, քաղաքական և տեսական սկզբունքների հետագա մշակումն էր: Իր մի շարք աշխատություններում նա բացահայտեց առաջին համաշխարհային պատերազմի պատճառներն ու բնույթը, ցույց տվեց, որ իմպերիալիզմը պրոլետարական հեղափոխության նախադուռն է և որ այդ հեղափոխությունը կարող է հաղթանակել սկզբնապես մի քանի կամ նույնիսկ մեկ առանձին վերցրած կապիտալիստական երկրում: Լենինը հիմնավորեց սեփական երկրի բուրժուազիայի դեմ զենքի դիմելու, իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու պահանջը, առաջ քաշեց իմպերիալիստական պատերազմում «իր» կառավարության պարտության լոզունգը: Նա ցույց տվեց, որ այդ խնդիրները կատարելու համար բանվոր դասակարգը պետք է վճռականապես հե-
րևս թեքի սոցիալ-դեմոկրատական օպորտունիստական կուսակցություններից, հե-
տևողական պայքար մղի դրանց ղեկավարների դավաճանական գծի դեմ, որը II ինտերնացիոնալը հասցրեց քաղաքական կրախի (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 26, էջ 253—323, հ. 27, էջ 120—158):

Վ. Ի. Լենինը անողոք քննադատությամբ մերկացրեց բոլոր երկրների սոցիալ-շովինիստներին ու ցենտրիստներին, որոնք բացահայտորեն անցել էին «իրենց» ազգային բուրժուազիայի կողմը և սոցիալ-պատրիոտիզմի դիրքերից պահանջում էին իմպերիալիստական պատերազմը հասցնել մինչև հաղթական վախճան: Միաժամանակ Լենինը բացահայտեց II ինտերնացիոնալի կրախի պատճառները, ցույց տվեց այն հիմնական խնդիրները, որ պատմությունն առաջադրել է բանվորական շարժմանը հավատարիմ ձախ սոցիալիստներին:

---

*ՍԻՄՈՆՅԱՆ ՀՐԱՉԻԿ ՌՈՒԲԵՆԻ— ՀԿԿ Կենտկոմի կուսպատմության ինստիտուտի, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի մասնաճյուղի դիրեկտոր, ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ:*

Բոլշևիկները շարունակում էին մնալ միջազգային բանվորական շարժման վճռական հեղինակավոր ուժը: Հենց նրանց՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի ամենահավատարիմ մարտիկներին էր վիճակված պայքար ծավալելու սոցիալ-դեմոկրատական կուսակցություններում ձախ, ինչպես հեղափոխական խմբերին և ինտերնացիոնալիստական տարրերին համախմբելու համար: Ուստի առաջինը նրանք խնդիր դրեցին օպորտունիզմից ձերբազատված պրոլետարական նոր ինտերնացիոնալ ստեղծելու մասին: Վ. Ի. Լենինն այդ հարցն առաջին անգամ առաջ քաշեց 1914 թ. օգոստոս-սեպտեմբերին «Հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի խնդիրները եվրոպական պատերազմի ժամանակ» թեզիսներում (ԵԼԺ, հ. 26, էջ 1—8), ապա նույն տարվա սեպտեմբեր-հոկտեմբերին գրած «Պատերազմը և Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիան» մանիֆեստում (նույն տեղը, էջ 17—26): «Սոցիալիզմը և պատերազմը» աշխատությունում (նույն տեղը, էջ 375—429) Լենինն առաջադրեց օպորտունիստների և սոցիալ-շովինիստների հետ կապերը լիովին խզելու, հեղափոխական պրոլետարական կազմակերպությունները մանրբուրժուական-օպորտունիստական կուսակցություններից անջատելու պահանջը: Նոր, III ինտերնացիոնալը,— ասում էր Լենինը,— պետք է ստեղծվի հենց այդպիսի հեղափոխական հիմքի վրա: «II ինտերնացիոնալը մեռավ, պարտվելով օպորտունիզմի կողմից,— գրում էր նա:— Կորչի՛ օպորտունիզմը և կեցցե՛... օպորտունիզմից մաքրված III ինտերնացիոնալը» (նույն տեղը, հ. 26, էջ 47):

Բոլշևիկների նախաձեռնությամբ Ցիմմերվալդում (1915 թ.) և Կինտալում (1916 թ.) կայացած միջազգային սոցիալիստական կոնֆերանսներում առաջին քայլերն արվեցին նոր ինտերնացիոնալի ստեղծման ուղղությամբ.

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում դասակարգային պայքարի հուժկու ալիք առաջացրեց ամբողջ աշխարհում: Ամենուրեք պրոլետարիատն իր համակրանքը և աջակցությունն էր արտահայտում առաջին բանվորագյուղացիական իշխանության նկատմամբ, պատրաստակամություն հայտնում ընթանալու Ռուսաստանի պրոլետարիատի բացած ուղիով: Հեղափոխական պայքարի հզոր վերելքի հողի վրա տարբեր երկրներում տեղի էր ունենում ձախ սոցիալիստական խմբերի բոլշևիկացում: Օրակարգում դրվեց ինքնուրույն կոմունիստական կուսակցությունների ստեղծման հարցը:

1918 թ. կոմունիստական կուսակցություններ ստեղծվեցին Արգենտինայում, Լեհաստանում, Ավստրիայում, Հունգարիայում, Ֆինլանդիայում, Հոլանդիայում: 1918—1919 թթ. կոմունիստական խմբեր առաջացան նաև Գերմանիայում, Ֆրանսիայում, Անգլիայում, Չեխոսլովակիայում, Ռումինիայում, Իտալիայում, ԱՄՆ-ում, Շվեյցարիայում և այլուր:

1918 թ. սկզբներին ստեղծվեց նաև Հայաստանի կոմունիստական կուսակցությունը: Սկզբից ևեթ նկատենք, որ այն ժամանակ Հայաստան ասելով հասկանում էին Արևմտյան Հայաստանը կամ այսպես կոչված «Թուրքահայաստանը»: Ուրեմն խոսքը Արևմտահայաստանի կոմունիստական կուսակցության ստեղծման մասին է:

Դեռևս 1917 թ. աշնանը Անդրկովկասի հայ բոլշևիկների շրջանում ծագել էր Հայաստանի սոցիալ-դեմոկրատական (բոլշևիկյան) կուսակցություն ստեղծելու գաղափարը: Այդ կազմակերպությունը պետք է ամուր կապված լիներ ՌՍԴԲԿ(բ)-ի հետ, գործեր նրա գաղափարական ներգործությամբ: Այդ մասին հետագայում վերհիշել է նշանավոր բոլշևիկ Բագրատ Բորյանը:

Կուսակցության ստեղծման նախաձեռնությունն ստանձնեցին այդ ժամանակ Թիֆլիսում գործող բոլշևիկյան գործիչներ Գուրգեն Հայկունին, Հայկ Հովսեփյանը, Վահան Երեմյանը, Գրիգոր Վարդանյանը, Արտակ Ստամբոլցյանը, Գառնիկ Կարագուլյանը, Գևորգ Ալիխանյանը, Մարտին Սահակյանը, որոնք և այդ նպատակով ստեղծեցին կազմակերպական կոմիտե:

ՌՍԴԲԿ(բ) Կենտկոմի համաձայնությունը և սանկցիան ստանալու համար կազմակերպական կոմիտեն որոշեց իր ներկայացուցիչ-պատվիրակին ուղարկել Պետրոգրադ՝ Հայաստանի սոցիալ-դեմոկրատական (բոլշևիկների) կուսակցության հետ կապված հարցերը լուծելու համար: Կազմկոմիտեն իբրև պատվիրակ առաջադրեց Գ. Հայկունուն:

Գ. Հայկունու Պետրոգրադում գտնվելը զուգադիպեց մի կարևոր իրադարձության հետ: 1917 թ. դեկտեմբերի 29-ին Սովետական Ռուսաստանի ժողկոմխորհուրդը Վ. Ի. Լենինի ստորագրությամբ ընդունեց ««Թուրքահայաստանի» մասին» դեկրետը, որով ի լուր ամենքի հայտարարվեց, որ «Ռուսաստանի բանվորական և գյուղացիական կառավարությունը պաշտպանում է Ռուսաստանի կողմից գրաված «Թուր-



քահայաստանի» հայերի ազատորեն ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև լիակատար անկախությունը»: Դեկրետում նախատեսվում էին մի ամբողջ շարք նախնական պարտադիր երաշխիքներ, որոնք պետք է ապահովեին հայ ժողովրդի կամքի ազատ արտահայտումը:

ՌՍԴԲԿ(բ) Կենտկոմը, սովետական կառավարությունը, անձամբ Վ. Ի. Լենինը ձեռնարկեցին մի շարք միջոցներ ««Թուրքահայաստանի» մասին» ժողկոմխորհրդի դեկրետը հաջողությամբ կենսագործելու համար: Այդ նպատակին պետք է ուղղվեր նաև ստեղծվելիք Հայաստանի սոցիալ-դեմոկրատական (բոլշևիկյան) կուսակցության գործունեությունը: Կուսակցությունը կոչված էր լայն աշխատանք ծավալելու ռուսական զորքերի կողմից գրավված Արևմտահայաստանում, ինչպես նաև Ռուսաստան գաղթած արևմտահայերի շրջանում, բացահայտելու, ժողովրդականացնելու ազգերի ինքնորոշման լենինյան սկզբունքը, տարածելու կոմունիզմի գաղափարները, պայքար մղելու ազգայնական գաղափարների դեմ, սովետական իշխանության շուրջը համախմբելու աշխատավոր լայն զանգվածներին:

1918 թ. հունվարի կեսերին ՌՍԴԲԿ(բ) Կենտկոմն իր համաձայնությունը տվեց Հայաստանի սոցիալ-դեմոկրատական (բոլշևիկների) կուսակցության ստեղծման մասին: Այդ նույն օրերին Պետրոգրադում, ՌՍՖՍՀ արտաքին գործերի կոմիսարիատի շենքում Գ. Վ. Չիչերինի նախագահությամբ կայացավ ձախակողմյան սոցիալիստական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցություն: Քանի որ ՌՍԴԲԿ(բ) Կենտկոմն արդեն ճանաչել էր Հայաստանի սոցիալ-դեմոկրատական (բոլշևիկյան) կուսակցության գոյությունը, ապա Պետրոգրադում գտնվող Գ. Հայկունին, իբրև այդ օրինական կուսակցության ներկայացուցիչ, հրավիրվեց մասնակցելու խորհրդակցությանը: Այստեղ որոշում ընդունվեց նախապատրաստական աշխատանքներ տանել հրավիրելու ձախակողմյան սոցիալիստական կուսակցությունների ընդլայնված խորհրդակցություն, որը պետք է քննարկեր նոր ինտերնացիոնալի ստեղծման նախապատրաստության հարցերը:

ՌՍԴԲԿ(բ) Կենտկոմի համաձայնությունը, նրանից ղեկավար դիրեկտիվներ ու ցուցումներ, ինչպես նաև ֆինանսական աջակցություն ստանալուց հետո Գ. Հայկունին Պետրոգրադից մեկնեց Թիֆլիս և մեծ դժվարություններ հաղթահարելով հունվարի վերջերին տեղ հասավ:

1918 թ. փետրվարի սկզբներին Թիֆլիսում տեղի ունեցավ Հայաստանի սոցիալ-դեմոկրատական կուսակցության ստեղծման կազմկոմիտեի ընդլայնված նիստ, որը Գ. Հայկունու հաղորդման հիման վրա ձեռնամուխ եղավ կուսակցության ձևավորման գործին: Քանի որ առաջիկայում, ընդամենը երկու շաբաթ հետո, ՌՍԴԲԿ(բ) VII համագումարը փոխելու էր իր անվանումը՝ «սոցիալ-դեմոկրատականից» «կոմունիստականի», ուստի որոշում ընդունվեց նաև ձևավորող Հայաստանի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը սկզբից ևեթ անվանել «կոմունիստական», այսինքն՝ Հայաստանի կոմունիստական կուսակցություն: Այսպիսով, ժամանակագրական տեսակետից այդ կուսակցությունն առաջինն էր, որ սկսեց կրել «կոմունիստական» անվանումը:

1918 թ. մարտին Թիֆլիսում ձևավորվեց Հայաստանի կոմունիստական կուսակցության ժամանակավոր Կենտրոնական կոմիտեն, որի մեջ մտան Գ. Հայկունին, Գ. Վարդանյանը, Վ. Երեմյանը, Հ. Հովսեփյանը, Գ. Կարագուլյանը, Մ. Սահակյանը: Կենտկոմի որոշմամբ 1918 թ. մարտի 10-ից Թիֆլիսում սկսեց լույս տեսնել կուսակցության օրգան «Կարմիր օրեր» թերթը, որին հաջորդեց «Կարմիր դրոշակը»: 1918 թ. մարտի 10-ին հրապարակվեց Հայաստանի կոմկուսի առաջին դեկլարացիան, որտեղ տրված են նորաստեղծ կուսակցության նպատակներն ու խնդիրները: Դա կուսակցության առաջին մարտական կոչն էր:

Հայ աշխատավոր դասակարգերի անունից ողջունելով Հոկտեմբերյան հեղափոխությունը և աշխարհում առաջին բանվորագյուղացիական կառավարությունը, դեկլարացիան ազդարարում էր, որ հայ ժողովրդի փրկությունը թե՛ Կովկասում և թե՛ Արևմտահայաստանում հեղափոխության հաղթանակի մեջ է: Այս արյունալի օրերին, ասված էր դեկլարացիայում, երբ Կովկասի հակահեղափոխությունը հանձինս մուսավաթականների, վրաց մենշևիկների և դաշնակցականների դարանամուտ հարվածում էր թիկունքից, իսկ թուրքական վայրագ հորդաները փորձում են ճակատից ներխուժել Անդրկովկաս, նպատակ ունենալով ոտնակոխ տալ արդեն ազատ հայտարարված Հայաստանը, նման ճակատագրական պահին պետք է միավորվեն թշնամուն հակահարված տալու ընդունակ բոլոր ուժերը (տե՛ս «Կարմիր օրեր», № 1, 10 մարտի, 1918 թ.): Հայ ժողովրդի համար բախտորոշ այդ պահին, այնուհետև

ասված էր դեկլարացիայում, «հրազենների որոտի և համաշխարհային հեղափոխության հրդեհի մեջ ծնունդ է առնում Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, միջազգային սոցիալիստական բանվորական միության, III ինտերնացիոնալի մի նոր մասնիկը» (նույն տեղը):

Դեկլարացիան հռչակում էր, որ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը հարստահարված ու արյունաքամ աշխատավոր զանգվածների շահերի հարազատ արտահայտիչն է, որի շուրջն են համախմբվում բանվորները, չքավոր գյուղացիները և նրանց բոլոր ազնիվ բարեկամները (տե՛ս նույն տեղը):

Դեկլարացիան ավարտվում է հետևյալ խոսքերով ու կոչերով. «Բերելով իր հետ միջազգային պրոլետարիատի ընկերական ողջույնները և ունենալով իր թիկունքում Ռուսաստանի հաղթական բանվորությունը որպես զորավիգ, որպես հավատարիմ հենարան, Հայաստանի կոմունիստական կուսակցությունը ժողովրդական զանգվածների փրկության գործը տանելու է հեղափոխական, սոցիալիստական շարժումների և մասսայական ըմբոստացումների ուղիով:

Հայտարարելով Հայաստանի ժողովուրդներին մեր դավանանքը, մենք չենք կասկածում, որ մերն է ապագան:

Կեցցե՛ միջազգային պրոլետարիատը: Կեցցե՛ III ինտերնացիոնալը: Կեցցե՛ Ռուսաստանի պրոլետարական հեղափոխությունը: ... Կեցցե՛ Հայաստանի ինքնորոշումը» (նույն տեղը):

Այս լոզունգներում խտացված է Հայաստանի կոմունիստական կուսակցության քաղաքական դավանանքը: Դա ազնիվ հոգու ճիչ էր, անարատ դիմագծի հաստատում, մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին, հեղափոխության գործին անսահման նվիրվածության փայլուն օրինակ:

Հայաստանի կոմունիստական կուսակցության առաջին մարտական կոչը ջերմ արձագանք գտավ հազարավոր բանվորների և գյուղացիների սրտերում: Ամեն օր տասնյակ մարդիկ դիմումներ էին ներկայացնում՝ խնդրելով իրենց ընդունել Հայաստանի կոմունիստական կուսակցության շարքերը: Կուսակցության ժամանակավոր Կենտկոմը եռանդուն գործունեություն ծավալեց կազմակերպչորեն ձևավորելու նպատակով: Նրա ջանքերի շնորհիվ կուսակցության մեջ մտան Անդրկովկասում աշխատող զգալի թվով հայ բոլշևիկներ, ինչպես նաև Ռուսաստանում բնակվող ՌԿ(բ)Կ շատ հայ անդամներ: Կուսակցության շարքերն էին մտնում նաև թուրքական ջարդերից փրկված, Անդրկովկասում և Ռուսաստանում ապաստան գտած արևմտահայ աշխատավորների գիտակից ներկայացուցիչները: Կուսակցության շուրջն էին համախմբվում նաև մեծ թվով համակրողներ:

Հայաստանում կոմունիստական շարժման զարգացումը բարդ էր և բազմաձև: Հայաստանի կոմկուսի ձևավորումը եղավ Անդրկովկասի, Հյուսիսային Կովկասի և Ռուսաստանի մյուս հայաբնակ վայրերի հայ աշխատավորների ազատագրական, հեղափոխական կամքի արտահայտումը: Իր գործունեությամբ կուսակցությունը զուգակցում, ներդաշնակում էր Արևելյան Հայաստանի և Արևմտյան Հայաստանի ժողովրդական լայն զանգվածների ձգտումը դեպի նոր՝ Սովետական Ռուսաստանը, դեպի կյանքի արմատական սոցիալիստական վերափոխումը:

Չնայած ծավալած բուռն ու մեծապես օգտակար գործունեությանը, Հայաստանի կոմկուսը, անբարենպաստ հանգամանքների պատճառով, չկարողացավ կատարել իր հիմնական խնդիրը, այն է՝ կոմունիստական լայն աշխատանք ծավալել հայրենի բնաշխարհում՝ Արևմտյան Հայաստանում:

Չնայած հայկական կամավորական ջոկատների հերոսական դիմադրությանը, որոնց ուսերին էր ընկած ռուսական զորքերի հեռանալուց հետո կովկասյան ճակատը պահելու խնդիրը, ուժերը, սակայն, անհավասար էին և թուրքական մեծաքանակ կանոնավոր բանակները 1918 թ. գարնանը վերագրավեցին ամբողջ Արևմտյան Հայաստանը, ոչնչացրին խաղաղ հայ բնակչությանը, ապա ներխուժեցին Անդրկովկասի սահմանները: Դրանով իսկ, ինչպես նաև երկրամասից Կովկասյան բանակի հեռանալու պատճառով. անհնարին դարձավ ««Թուրքահայաստանի» մասին» Սովետական Ռուսաստանի ժողկոմխորհրդի դեկրետի իրագործումը: Հայաստանի կոմունիստական կուսակցությունը զրկվեց Արևմտյան Հայաստանում գործելու, այնտեղ արմատներ գցելու հնարավորությունից:

Դեպի Անդրկովկասի խորքերը թուրքական իմպերիալիստների ներխուժման պայմաններում Հայաստանի կոմկուսը ծավալեց պրոպագանդիստական, ագիտացիոն-մասսայական լայն աշխատանք: Նա մասսաներին ոտքի էր հանում դիմադրելու զավթիչներին, փրկելու երկրամասը վերջնական կործանումից: Կուսակցության



ջանքերով Կովկասում, մասնավորապես Թիֆլիսում ապաստանած արևմտահայ երիտասարդներից կազմակերպվեցին զինված ջոկատներ: Ռուսաստանի զանազան քաղաքներ գաղթած հարյուրավոր հայ երիտասարդներ նույնպես մտան կուսակցության կազմակերպած կամավորական զինված խմբերի մեջ և մեկնեցին Անդրկովկաս՝ դիմադրելու թուրքական ներխուժմանը: Հայաստանի կոմկուսը մեծ աշխատանք ծավալվեց հատկապես Օդեսայից, Սևաստոպոլից, Թեոդոսիայից և Ռուսաստանի այլ վայրերից Թիֆլիս եկած թուրքահայ զինված կամավորների շրջանում՝ նրանց ենթարկելով իր ազդեցությանը և պատրաստվելով հեղափոխական մարտերի:

Ինչ վերաբերում է Կովկասյան Հայաստանին, ապա այստեղ կուսակցությունը չկարողացավ լայն գործունեություն ծավալել: Կենտկոմը, որի գործունեությունը հիմնականում կենտրոնացած էր Թիֆլիսում, փորձեց աշխատանքներ տանել նաև Երևանի ու Ալեքսանդրապոլի գավառներում կենտրոնացված արևմտահայ գաղթականների շրջանում, ինչպես նաև կոմունիստական աշխատանք ծավալել տեղի բնակչության շրջանում: Բայց ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեի ղեկավարության տակ այստեղ գործող տերիտորիալ բոլշևիկյան կազմակերպությունները չէին ճանաչում Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի, որպես իրենց համար ղեկավար օրգանի, իրավասությունը: Իր ազդեցությունը Հայաստանի տեղական կազմակերպությունների վրա տարածելու Կենտկոմի բոլոր փորձերը հանդիպում էին դրանց բուռն դիմադրությանը: Դա հանգեցրեց Հայկոմկուսի Կենտկոմի և ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեի միջև բախումների ու աննորմալ հարաբերությունների: Երկրկոմը գտնում էր, որ Հայկոմկուսի Կենտկոմը չպետք է միջամտի տեղական քաղաքական կյանքին, որովհետև դա կազմալուծում է տեղի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեությունը: Երկրկոմի այդ դիրքորոշումը լարված իրավիճակ ստեղծեց մի կողմից երկրկոմի, մյուս կողմից՝ ՀԿԿ Կենտկոմի անդամների միջև:

Ինչպես Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները, այնպես էլ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը գործում էին երկրամասի բուրժուաազգայնական ուժերի մշտական հալածանքների պայմաններում: 1918 թ. մայիսին փակվեց «Կարմիր դրոշակ» թերթը: Վրացական մենշևիկները հրաման արձակեցին Հայաստանի կոմկուսի ղեկավարներին և թերթի աշխատակիցներին ձերբակալելու մասին:

Եվ դա այն ժամանակ, երբ Անդրկովկաս մտած թուրքական զավթիչները գրավում էին երկրամասի նորանոր տարածքներ, նոր արհավիրքներ բերում հատկապես հայ ժողովրդին: Չնայած Հայաստանի աշխատավորների, տեղի բոլշևիկյան կազմակերպությունների հերոսական ջանքերին, հնարավոր չեղավ թշնամուն կանգնեցնել երկրամասում սոցիալիստական հեղափոխության դրոշը պարզած Բաքվի կոմունայի հեռավոր մատույցներում: Ավեր ու մահ սփռելով իրենց ճանապարհին՝ թուրքական զավթիչները շարժվում էին Բաքվի վրա:

Դեպի Անդրկովկաս թուրքական զավթիչների արյունալի նոր արշավանքի և երկրամասի հակահեղափոխական ուժերի հալածանքների պատճառով Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հարկադրված եղավ տեղափոխվել Հյուսիսային Կովկաս՝ Վլադիկավկազ:

Կտրված լինելով Արևմտյան Հայաստանից և Անդրկովկասից՝ Հայաստանի կոմկուսը չհապաղեց բոլշևիկյան պրոպագանդիստական աշխատանք ծավալել Ռուսաստանի հայ բնակչության, մասնավորապես արևմտահայ գաղթականության շրջանում: Հյուսիսային Կովկաս և Ռուսաստանի ուրիշ շրջաններ անցած կուսակցության ղեկավարներն ու կուսակցության շատ անդամներ ՌԿ(բ)Կ տեղական կուսակազմակերպություններում և սովետական մարմիններում պատասխանատու աշխատանքներ էին կատարում: Նրանցից շատերը կարմիր բանակի շարքերում հերոսաբար կռվում էին քաղաքացիական պատերազմի ճակատներում: Ապավինելով սովետական իշխանության ուժին, Հայկոմկուսի անդամները կոմունիստական գաղափարների շուրջն էին համախմբում արևմտահայ գաղթական զանգվածներին:

1919 թ. սկզբին Հայկոմկուսի Կենտկոմի մի քանի ղեկավար գործիչներ՝ Գ. Հայկունին, Գ. Վարդանյանը, Վ. Երեմյանը, Հ. Հովսեփյանը հավաքվեցին Մոսկվայում և իրենց կուսակցության Կենտկոմի գործունեությունը վերսկսելու մասին հարց բարձրացրին ՌԿ(բ)Կ Կենտկոմի առջև:

Հայաստանի կոմկուսի ստեղծումից հետո անցել էր մեկ տարի և այդ ժամանակ փոխվել էր Սովետական Ռուսաստանի ներքին ու միջազգային դրությունը, քաղաքական մեծ անցքեր էին տեղի ունեցել նաև Անդրկովկասում: Արևելյան Հայաստանի տարածքում ստեղծվել էր Հայաստանի հանրապետությունը, որի քաղա-

րոնական օրգանը, արտահայտելով Կենտկոմի պաշտոնական տեսակետները, նորից շեշտում էր ազգային կոմունիստական կուսակցությունների ստեղծման իր գծի հետևողականությունը, ինչպես նաև Հայաստանի կոմունիստական կուսակցության, նրա լիազորությունների օրինական լինելը:

Մարտի 4-ի նիստում կոնգրեսն անցավ նոր ինտերնացիոնալի պլատֆորմի քննարկմանը: Թեզիսների ձևով այն իբրև նախագիծ համատեղ կազմել ու ներկայացրել էին Գերմանիայի և Ռուսաստանի կոմունիստական կուսակցությունների ներկայացուցիչներ **Մ. Ալբերտը և Ն. Բուխարինը**, որոնք էլ հանդես եկան պլատֆորմի թեզիսների վերաբերյալ զեկուցումներով: Ծավալվեց մտքերի փոխանակություն, այնուհետև թեզիսները դրվեցին քվեարկության, որին մասնակցեց կոնգրեսին վճռական ձայնի իրավունքով ներկա 17 պատվիրակ: Նորվեգիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության պատվիրակից բացի, որը ձեռնպահ մնաց, մյուս բոլոր 16 պատվիրակները, այդ թվում նաև Հայաստանի կոմկուսակցության պատվիրակ Գ. Հայկունին, քվեարկեցին թեզիսների օգտին (տե՛ս «Первый конгресс Коминтерна», стр. 102):

Այնուհետև կոնգրեսը լսեց բուրժուական դեմոկրատիայի և պրոլետարիատի դիկտատուրայի մասին թեզիսների առթիվ Վ. Ի. Լենինի զեկուցումը, որից հետո քվեարկության դրվեց այդ հարցի առթիվ առաջարկվող բանաձևը (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 37, էջ 630): Ինչպես բոլոր երկրների, այնպես էլ Հայաստանի կոմունիստները գործունեության հստակ ծրագիր ստացան աշխատավորների շրջանում սովետների գաղափարը լայնորեն պրոպագանդելու, սովետական իշխանության համար պայքարն ուժեղացնելու համար:

Մարտի 4-ին, կոնգրեսի երրորդ նիստում նախագահող Ֆրից Պլատտենը հայտնեց, որ մի խումբ պատվիրակներ նախագահությանն առաջարկել են հաստատված օրակարգից դուրս քննարկել III Ինտերնացիոնալի սահմանադրման (конституирования) հարցը, այսինքն՝ ներկա կոնգրեսը հիմնադրու՞մ է այդ ինտերնացիոնալը, թե այն միայն հանգրվան է ինտերնացիոնալի ստեղծման ճանապարհին:

Կատարվում է մտքերի լայն փոխանակություն, ապա ներկայացվում է բանաձևի նախագիծ, որով առաջարկվում էր անմիջապես ձեռնամուխ լինել III Ինտերնացիոնալի հիմնադրմանը, ինչպես նաև Ինտերնացիոնալի ղեկավար մարմինների մշտական նստավայր ընտրել Մոսկվան:

Նախագծի քվեարկման ընթացքում ձեռնպահ մնաց միայն Գերմանիայի կոմունիստական կուսակցության ներկայացուցիչը, մյուս բոլոր 33 կուսակցությունների և կոմունիստական խմբերի վճռական ու խորհրդակցական ձայն ունեցող բոլոր պատգամավորները քվեարկեցին նախագծի օգտին: Արձանագրության մեջ մտցված քվեարկությանը մասնակցածների ցուցակում Հայաստանի կոմունիստական կուսակցության պատգամավոր Գ. Հայկունու անունը 16-րդն էր: Այսպիսով, Հայաստանի կոմունիստական կուսակցությունը եղավ Կոմունիստական ինտերնացիոնալի հիմնադիր անդամներից մեկը:

Ճառով հանդես գալով Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 40-ամյակին նվիրված Երևան քաղաքում տեղի ունեցած հանդիսավոր նիստում, Ն. Ս. Խրուշչովը նշել է. «Հայ ժողովուրդը կարող է հպարտանալ, որ կոմունիստական ինտերնացիոնալի ստեղծմանը մասնակցել են հայ կոմունիստները»: Հիրավի, այդ պատմական ակտին մասնակից լինելը Վ. Ի. Լենինի, ՌԿ(բ)Կ-ի, միջազգային կոմունիստական շարժման կողմից Հայաստանի կոմունիստական կուսակցության գործունեության բարձր գնահատության, Հայաստանում հեղափոխական շարժման հաջողությունների ճանաչման ակնառու վկայությունն էր:

Այնուհետև մարտի 4-ին, 5-ին և 6-ին կոնֆերանսը քննարկեց Ցիմմերվալդյան միավորման, Բեռնի կոնֆերանսի և սոցիալիստական հոսանքների նկատմամբ վերաբերմունքի, միջազգային դրության և Անտանտի քաղաքականության, սպիտակ տեռորի մասին հարցերը: Հայաստանի կոմկուսի ներկայացուցիչը քվեարկեց այդ բոլոր հարցերի առթիվ ներկայացրած բանաձևերի օգտին:

Մարտի 6-ին, կոնգրեսի վերջին, հինգերորդ նիստում հրապարակվեց «Կոմունիստական ինտերնացիոնալի մանիֆեստը ամբողջ աշխարհի պրոլետարներին»: Այն հրապարակեց տեքստի հեղինակ Լ. Տրոցկին:

Մանիֆեստում, մասնավորապես, հիշատակվում էր նաև Հայաստանը, ցույց էր տրվում, որ Անտանտի իմպերիալիստները գաղութացրել են այդ երկիրը, և որ նա



ազատագրվել կարող է միայն հակաիմպերիալիստական վճռական պայքարի միջոցով (տե՛ս «Первый конгресс Коминтерна», стр. 207): «Բանվորների սովետների, իշխանության և պրոլետարիատի դիկտատուրայի համար մղվող հեղափոխական դրոշի ներքո, III Ինտերնացիոնալի դրոշի ներքո բոլոր երկրների պրոլետարներ, միացե՛ք»,— այս խոսքերով էր վերջանում մանիֆեստը (նույն տեղը, էջ 211):

Մանիֆեստի տեքստը քվեարկության է դրվում և հաստատվում: Այնուհետև նիստի նախագահության կողմից առաջարկ է մտցվում այն հրատարակել՝ դրա տակ դնելով կոնգրեսում հիմնական կուսակցությունները ներկայացնող, վճռական ձայնի իրավունք ունեցող պատվիրակների անունները: Հիմնական կոմունիստական կուսակցությունների պատվիրակությունների հանձնարարությամբ Մանիֆեստը ստորագրում են հետևյալ պատվիրակները (անունների թվարկման հերթականությունն ըստ պահպանվող արձանագրության), Մաքս Ալբերտ (Գերմանիա), Ն. Լենին (Ռուսաստան), Ի. Գրուբեր (Գերմանական Ավստրիա), Ա. Ռուդնյանսկի (Հունգարիա), Օ. Գրիմլունդ (Շվեդիա), Ֆ. Պլատտեն (Շվեյցարիա), Բ. Ռեյնշտեյն (Ամերիկա), Խ. Ռակովսկի (Բալկանյան ֆեդերացիա), Ունշլիխտ (Լեհաստան), Ի. Սիրոլա (Ֆինլանդիա), Սկրիպնիկ (Ուկրաինա), Կ. Գայլիս (Լատվիա), Հ. Պեգելման (Էստոնիա), Հայկունի (Հայաստան), Գ. Կլինգեր (Պովոլժիեի գերմանական գաղութ), Յալիմով (Արևելյան Ռուսաստանի ժողովուրդներ), Ա. Գիբո (Ցիմմերվալդի ֆրանսիական ձախ թև):

Այսպիսով, հիմնական կոմունիստական կուսակցությունների պատվիրակությունների հանձնարարությամբ ամբողջ աշխարհի պրոլետարներին ուղղված Կոմունիստական ինտերնացիոնալի մանիֆեստի տակ վճռական ձայն ունեցող 17 պատվիրակների ստորագրությունների թվում, 14-րդ տեղում, դրված է Հայաստանի կոմունիստական կուսակցության պատվիրակ Գուրգեն Հայկունու ստորագրությունը (տե՛ս նույն տեղը, էջ 211—212):

Երրորդ ինտերնացիոնալի ղեկավար օրգանների հիմնումից հետո կոնգրեսը մարտի 6-ին ավարտում է իր աշխատանքները: «Այսպիսով մենք մեր աշխատանքը հասցրինք մինչև վերջ»,— ասաց նիստը նախագահող Վ. Ի. Լենինը: Փակելով կոնգրեսը, նա եզրափակիչ ճառում ասաց. «Մեզ հարկ եղավ այստեղ արձանագրել լոկ այն, ինչ մասսաներն արդեն նվաճել են իրենց հեղափոխական պայքարում» (ԵԼԺ, հ. 37, էջ 631): Մեկ տարի հետո, 1920 թ., Լենինը շեշտում էր, որ Ինտերնացիոնալի դրոշով համաշխարհային կոմունիստական շարժումը նոր, է՛լ ավելի վիթխարի նվաճումներ է ձեռք բերել, «որպիսիք չէր կարելի սպասել» (ԵԼԺ, հ. 40, էջ 243):

Կոմունիստական ինտերնացիոնալի հիմնումը հսկայական նշանակություն ունեցավ նաև Հայաստանում կոմունիստական շարժման հետագա զարգացման տեսակետից: ՌԿ(բ)Կ Կենտկոմը Հայաստանի կոմունիստական կուսակցությանը ճանաչում էր որպես ոչ միայն այդ շարժմանը նպաստող ուժ, այլև որպես նրա օրինական ներկայացուցիչ: 1919 թ. մարտի կեսերին Հայաստանի կոմկուսի Կենտկոմն իր ներկայացուցիչներ Գ. Հայկունուն և Վ. Տերյանին ուղարկեց ՌԿ(բ)Կ VIII համագումար, որի աշխատանքներին նրանք մասնակցեցին վճռական ձայնի իրավունքով: 1919 թ. մայիսի 1-ին Մոսկվայում վերսկսվեց Հայկոմկուսի օրգան «Կարմիր դրոշակ» թերթի հրատարակումը, որի պատասխանատու խմբագիրն էր Արտաշես Կարինյանը: Հայաստանի կոմկուսի Կենտկոմը մեծ եռանդ դրսևորեց հայերեն կոմունիստական հանրամատչելի գրականություն հրատարակելու և տարածելու ուղղությամբ: Թերթը և գրականությունը տարածվում էին նաև հայ գաղթականների շրջանում՝ Պովոլժիեում, Ղրիմում, Ուկրաինայում, Բեսարաբիայում, ինչպես նաև զանազան ճանապարհներով առաքվում էին Անդրկովկաս, Հայաստան:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամների և լիազորների ջանքերով 1919 թ. կուսակցական խմբեր ստեղծվեցին Սարատովում, Աստրախանում, Ցարիցինում, Սիմֆերոպոլում, Յալթայում, Մոսկվայում: Կենտկոմն աշխատում էր ՌՍՖՍՀ Ազգությունների գործերի ժողկոմատի հայկական գործերի կոմիսարիատի հետ լիակատար համագործակցությամբ և նրա աջակցությամբ:

Հայաստանի կոմկուսը փորձեց նաև անլեգալ աշխատանք տանել Հայաստանում: Սակայն Կենտկոմի նստավայրը Հայաստանից հեռու գտնվելը մի կողմից, բուն Հայաստանում տեղի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության հետզհետե աշխուժացումը մյուս կողմից, կազմակերպական բնույթի տարաձայնություններ էին առաջ բերում դրանց միջև:

ՌԿ(բ)Կ Կենտկոմի կազմբյուրոն 1919 թ. սեպտեմբերի 19-ին քննարկեց Հայ-

կոմկուսի մասին հարցը և որոշեց սկզբունքայնորեն ճանաչել նրա գոյությունը որպես Հայկական հանրապետության սահմաններում գործող տերիտորիալ կազմակերպություն: 1919 թ. դեկտեմբերի 29-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն Վ. Ի. Լենինի մասնակցությամբ կրկին անդրադարձավ այդ կուսակցության հարցին և որոշում ընդունեց այն դիտել իբրև Հայաստանի հանրապետությունում գործող ՌԿ(բ)Կ տերիտորիալ կազմակերպություն: Ի կատարումն այդ որոշման, 1919 թ. դեկտեմբերի 29-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի կազմբյուրոն հաստատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հետևյալ կազմով՝ Վ. Երեմյան, Գ. Տեր-Մկրտչյան, Ս. Կասյան և Գ. Հայկունի:

1920 թ. հունվարի 3-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն Վ. Ի. Լենինի մասնակցությամբ ընդունեց որոշում «Հայաստանում կոմունիստական աշխատանքի մասին», որով սահմանվեցին հայ պրոլետարիատի շրջանում կոմունիստական կազմակերպությունների աշխատանքի սկզբունքները: Հաշվի առնելով այն տարաձայնությունները, որոնք առաջացել էին մի կողմից՝ Հայաստանի տեղական մի շարք կուսակցական կազմակերպությունների ղեկավարների և մյուս կողմից՝ Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարության միջև, ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն անդրադարձավ նաև նրանց փոխհարաբերություններին: Կենտկոմը նորից Հայաստանի կոմկուսը չհակադրելով Հայաստանի տարածքում գտնվող ՌԿ(բ)Կ կազմակերպություններին, այն դիտեց որպես Հայաստանի կոմունիստական շարժման բաղկացուցիչ մաս: Բայց ՌԿ(բ)Կ Կենտկոմի 1920 թ. հունվարի 3-ի որոշման իրագործումն ուշացավ մի շարք օբյեկտիվ պատճառներով: Հայաստանի կոմկուսը ստիպված էր դադարեցնելու իր գործունեությունը:

Բանն այն է, որ դեռևս 1919 թ. սեպտեմբերին ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեի նախաձեռնությամբ Երևանում հրավիրվել էր Հայաստանի տերիտորիալ կուսակցական կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություն, որը միավորելով այդ կազմակերպությունները, ստեղծել էր ղեկավար կենտրոն՝ ՌԿ(բ)Կ Հայկական կոմիտե (Արմենկոմ): 1920 թ. հունվարին տեղի ունեցած Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջին կոնֆերանսն ընտրեց Արմենկոմի նոր կազմ, որի մեջ մտան հայտնի բոլշևիկ գործիչներ Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Ս. Ալավերդյանը, Ա. Նուրիջանյանը, Ա. Խանջյանը և ուրիշներ:

ՌԿ(բ)Կ Կենտկոմի 1920 թ. հունվարի 3-ի որոշումն ըստ էության կենսագործվեց միայն նույն թվականի ամռանը, երբ տեղական կուսակցական կազմակերպությունների հիմքի վրա ստեղծվեց Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, որի շարքերը մտան նաև 1918 թ. ստեղծված Հայաստանի կոմունիստական կուսակցության շատ անդամներ: Այսպիսով, ավարտվեց Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմակերպական ձևավորման տևական պրոցեսը:

Հայաստանում սովետական կարգերի հաղթանակը նոր դարագլուխ բացեց հայ ժողովրդի բազմադարյա պատմության մեջ: 1918 թ. ստեղծված Հայաստանի կոմկուսի ղեկավար շատ գործիչներ դարձան հանրապետության կոմունիստական կուսակցության պատասխանատու աշխատողներ, ղեկավար պոստեր գրավեցին ՀՍՍՀ սովետական և տնտեսական մարմիններում:

Նշանակալի է 1918 թ. ստեղծված Հայաստանի կոմունիստական կուսակցության դերը Հայաստանում հեղափոխական շարժման զարգացման, լենինյան գաղափարների պրոպագանդման, Անդրկովկասի և Ռուսաստանի աշխատավոր հայ զանգվածներին սովետական իշխանության, կոմունիստական ինտերնացիոնալի գաղափարների շուրջը համախմբելու գործում:

---

# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. ԴԻԼՈՅԱՆ**

ԱՅՆ ՄԵԾ ՀԵՏԱՔՐՔՐՈՒԹՅՈՒՆԸ, որ այսօր դրսևորվում է սովետական հասարակության մեջ պատմության նկատմամբ, աներկբայելիորեն ցույց է տալիս այն սերտ կապը, որ գոյություն ունի անցյալի, ներկայի և ապագայի միջև, որ ներկան և ապագան չի կարելի ընկալել և կերտել առանց անցյալի ճշմարտացի իմացության: Հանրահայտ ճշմարտություն է, որ պատմությունը ժողովուրդների հավաքական հիշողությունն է, և այնպես, ինչպես որ որևէ մի անհատ չի կարող բանական գոյություն ունենալ առանց հիշողության, այնպես էլ չիք ժողովուրդ առանց պատմության:

Անհատի պաշտամունքի կամ, ավելի ճիշտ, ստալինականության հետադիմության տարիներին պատմության այդ նշանակությունը քաջ գիտակցվում էր, ուստի և ամեն ինչ արվում էր՝ զրկելու ժողովուրդներին իրենց պատմությունից կամ դնելու պատմության իմացության աստիճանը «տիրոջ» կողմից թույլ տրված շրջանակների մեջ: Մարդկանց աչքի առջև ստեղծվում էր պատմական եղելությունների հետ ոչ մի ընդհանրություն չունեցող պատմություն, երեկվա դրականը այսօր չարիք էր հռչակվում և մոռացության տրվում, պատմության մեջ մնում էին միայն հակընդդեմ ուժեր ու երևույթներ, տիրապետում էր միայն երկու գույն՝ սև և սպիտակ: Այդպիսով հահարթեցվում էին երևույթները և անցյալի հասարակական կյանքը իր բազմաթիվ երանգներով մեր առջև հառնում էր միայն երկու կողմերի՝ դրականի ու բացասականի հակադրությամբ: Նման սխեման, ինչ խոսք, իմաստազրկում էր պատմությունը, այն զրկում բազմերանգությունից և ծառայում միայն մեկ ուղղագիծ նպատակի՝ բարձրացնել Ի. Ստալինի անձը, դարձնել նրան պատմության մեջ միակ հերոսի:

Այսօր առօրեական է դարձել խոսել պատմության մեջ «սպիտակ բծերի» առկայության և դրանց վերացման անհրաժեշտության մասին: Բայց արդյո՞ք հարցը միայն սպիտակ բծերի մեջ է: Արդյո՞ք դրանով մենք չենք պարզունակացնում պատմական զարգացման ընթացքի մեկնաբանությունը, եթե կուզեք, քողարկում այդ ընթացքի մեկնաբանման և նորովի գնահատման հույժ կարևոր խնդիրը: Անհրաժեշտություն չկա ապացուցելու, որ պատմական երևույթները, գուցե և երբեմն անտեսանելի թելերով, կապված են արդիականության հետ և այս կամ այն ուժգնությամբ իրենց անընդհատ զգացնել են տալիս: Հետևաբար, անհրաժեշտ է ամենայն խորությամբ և անաչառությամբ հետազոտել և հասարակայնության սեփականություն դարձնել դրանք, որպեսզի իմանանք, թե որտեղից ենք գալիս և դեպի ուր ենք գնում:

Այնուհետև, հայտնի է, որ ցարական Ռուսաստանի ժողովուրդները դեպի Հոկտեմբերյան հեղափոխություն եկան՝ գտնվելով զարգացման ամենատարբեր և բևեռացված մակարդակների վրա՝ ընդհուպ մինչև քոչվորական կացութաձև: Բնական է, որ հեղափոխությանը նրանց մասնակցության աստիճանը և հեղափոխության նկատմամբ նրանց վերաբերմունքը միանշանակ չէր կարող լինել: Ի. Ստալինին այստեղ ևս համահարթեցում էր հարկավոր: Եվ սկսեցին խոշորացույցով փնտրել ու գտնել գործիչներ, որոնք իբր թե գործուն հեղափոխականներ են եղել: Եվ ահա մեկ բեմահարթակի վրա կողք-կողքի սկսեցին հանդես բերվել ամենանշանավոր հեղափոխականներ և շատ դեպքերում առնվազն անորոշ վարկի տեր անձնավորություններ: Նմանօրինակ համահարթեցումը ևս պետք էր «ժողովուրդների հորը», որպեսզի ցույց տա իր անձի մեծությունը:

Ազգային հարցի լուծման բնագավառում Ի. Ստալինի և նրա հետևորդների թույլ տված կամայականությունները հանգեցրին պատմության աղավաղման և ա-

---

*ԴԻԼՈՅԱՆ ՎԱԼԵՐ ԱՐՏԱՇԵՍԻ— Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ԵրՊՀ-ի ընդհանուր պատմության ամբիոնի վարիչ:*

կրնբախ կեղծման մի նոր երևույթի, որը գնալով խորացավ և ձեռք բերեց բացահայտ ազգայնականության ձևեր: Տարածքային ապօրինի յուրացումներին հետևեցին պատմության և պատմական դեպքերի յուրացումներ՝ տաջիկը դարձավ ուզբեկ, պարսիկը՝ ադրբեջանցի, հայը՝ աղվան (կարդա՝ ադրբեջանցի) և այլն, և այլն: Պատմության կեղծարարությունը որոշ, ժամանակին հետամնաց, ժողովուրդների մոտ այնպիսի անկասելի թափ առավ և աշխարհ բերեց այնպիսի թվաշատ պատմական գրականություն, որը միայն սոսկում և ցավ կարող է պատճառել: Հարց է ծագում, կկարողանանք արդյո՞ք մաքրել այդ ավգյան ախոռները:

Ստալինականությունը ամենաբացասական հետևանքներ ունեցավ Հայաստանի պատմության ուսումնասիրության բնագավառում: Հայոց պատմության ամբողջ դարակազմիկ նշանակություն ունեցող ժամանակաշրջաններ արգելքի տակ դրվելով՝ դուրս մնացին գիտական հետազոտությունների շրջանակից, ամբողջ կուսակցություններ և նշանավոր դեմքեր չքացան հայոց պատմության էջերից կամ հիշատակվեցին միայն նշանակվելու նպատակով: Փաստորեն հայ ժողովրդի Սովետական Հայաստանում և Սովետական Միության սահմաններում բնակվող հատվածը զրկվեց իր պատմության շատ և շատ հերոսական և ողբերգական էջերը իմանալու տարրական իրավունքից: Հետևողականորեն անցկացվում էր հայ ժողովրդին իր պատմությունից կտրելու, իր պատմական հիշողությունից զրկելու միտումնավոր քաղաքականություն:

Իհարկե, չենք կարող մոռացության տալ այն կարևոր փաստը, որ հենց լճացման տարիներին ստեղծվեց «Հայ ժողովրդի պատմության» ութհատորյակը, որ զգալի երևույթ էր մեր պատմական գիտության առաջընթացի գործում, մի աշխատություն, որը, չնայած լճացման հեղձուցիչ մթնոլորտին, շատ և շատ հարցերի նորովի մեկնաբանություններ տվեց: Բայց այժմ, երբ մենք պատմական գիտությունը պետք է դիտարկենք վերակառուցման հեղափոխական ընթացքի տեսանկյունից, ավելի ցայտուն և ակնհայտ են դառնում այն սխալները, որոնք չէին կարող տեղ չգտնել ութհատորյակում՝ օբյեկտիվ պայմանների բերումով:

Պատմական գիտության զարգացումը հայ պատմաբաններից պահանջում է ամենայն ջանասիրությամբ և նոր խնդիրների տեսանկյունից հետազոտել աղբյուրագիտական վիթխարի նյութը, տեսական ընդհանրացման ենթարկել այն, նորովի ընթերցել և մեկնաբանել այն կարևորագույն վավերագրերը, որոնք առ այսօր հանիրավի մոռացության են մատնված եղել: Դրան զուգընթաց, անհրաժեշտ է դառնում մեզ՝ հայ պատմաբաններիս համար, օգտագործել մյուս գիտությունների, մասնավորապես սոցիոլոգիայի (ավելի կոնկրետ սոցիալական հոգեբանության), մշակույթի պատմության, իրավունքի պատմության, փիլիսոփայության պատմության ընձեռած տվյալները: Ցավ ի սիրտ պետք է խոստովանել, որ առ այսօր հիշյալ գիտությունների մեջ ընձեռած սուղ տվյալները, երբեմն նույնիսկ բացարձակ չգոյությունը, մեզ տանում են դեպի փակուղի, սահմանափակում անասելիորեն մեր առջև ծառացած խնդիրների լուծման հնարավորությունները: Լիովին աչքաթող է արված հայոց փիլիսոփայության և իրավունքի պատմության, հայկական մշակույթի պատմության մասնագետների պատրաստման գործը Երևանի պետական համալսարանում, մինչդեռ առանց նման մասնագետների առկայության անհնար է հետևողականորեն, ի սկզբանե ցայսօր ուսումնասիրելու և բացահայտելու հայ ժողովրդի պատմության logos-ը, որը հնարավորություն կտար մեզ ըմբռնելու և պատճառաբանված մեկնաբանելու բոլոր այն մակընթացություններն ու տեղատվությունները, որոնք հազարամյակների ընթացքում ուղեկցել են մեր ժողովրդի պատմությանը: Շատ և շատ դեպքերում մեր ժողովրդի պատմության մեջ տեղի ունեցած վայրիվերումները առավելապես կապվում են արտաքին երևույթների ու դրդապատճառների հետ առանց, սակայն, խորապես բացահայտելու և մեկնաբանելու այն ներքին երևույթները, որոնք նպաստել են երբեմն արտաքին դրդապատճառներին և ճակատագրական դեր խաղացել մեր ժողովրդի պատմական զարգացման գործում:

Գաղտնիք չէ, որ ամենևին բացահայտված չէ նաև որոշ հասարակական հաստատությունների խաղացած վճռական դերը մեր ժողովրդի պատմական կյանքում, մասնավորապես միջնադարյան այնպիսի մի կարևոր հաստատության, որպիսին հայ եկեղեցին է: Միջնադարյան Եվրոպայի պատմության ուսումնասիրությունը ցցուն կերպով ցույց է տալիս, որ եկեղեցին միջնադարյան եվրոպական հասարակության կյանքում ոչ միայն գաղափարական առաջնորդի դեր է կատարել, այլև գործուն միջամտություն է ցույց տվել աշխարհիկ կյանքի ամենատարբեր կողմերին, ուղղություն տվել շատ դեպքերում նաև պետությունների ներքին զարգացման պրոցեսներին: Սա պատմական իրողություն է, որը լիովին վերագրելի է նաև հայկական եկեղեցուն, իրողություն, որի հետ հաշվի չնստել չենք կարող: Մինչդեռ մեր ժողովրդի պատմությունը լուսաբանելիս եկեղեցու դերը գրեթե անտեսվում է, բացառությամբ բացասական պահերի: Բավական է մատնանշել այն հույժ կարևոր իրողությունը, որ քրիստոնեության հռչակումը պետական կրոն ինքնըստինքյան առաջնահերթ քաղաքական ակտ էր, որով հայկական պետությունը, կրոնապես անջատվելով սասանյան Պարսկաստանից և Հռոմեական կայսրությունից, ձգտում էր այդ միջոցով պատնեշվել իր աշխարհակալ հարևանների անընդմեջ ոտնձգություններից: Այդ նույն նպատակն էր հետապնդում նաև Քաղկեդոնի ժողովի մերժումը և միաբնությանը հարելը: Չպետք է մոռանալ, որ վերջին դարերում, երբ Հայաստանը երկատված էր պարսկական և օսմանյան բռնապետությունների միջև, հայոց հայրապետները նրանց կողմից ճանաչվում էին իբրև ազգի հոգևոր և աշխարհիկ գլուխ՝ համապատասխան, թեկուզ և շատ դեպքերում ոտնահարվող, իրավասություններով: Եթե սրանց գումարելու լինենք եկեղեցու խաղացած անուրանալի դերը հայկական մշակույթի զարգացման, գրատպության տարածման, հայկական աշխարհասփյուռ զանգվածների միջև մշտական կապ ապահովելու, ազգային-ազատագրական շարժումներին ունեցած մասնակցության և ոչ հազվադեպ դրանց կազմակերպման ու գլխավորման գործում, ապա լիովին հստակ կդառնա նրա խաղացած դերը հայ ժողովրդի կյանքում: Հետևությունն այն է, որ անհրաժեշտ է փաստական ընդարձակ նյութի հիման վրա տալ հայ եկեղեցու պատմական էվոլյուցիան, նրա խաղացած դերը ողջ հայ իրականության մեջ և, որ ամենակարևորն է, այն ֆունկցիաները, որ նա կատարում էր որպես հայկական պետականության վերջին կրող մինչև 1918 թվականը: Իսկ հայ եկեղեցին, գաղտնիք չէ, որ սկզբից ևեթ գործուն կերպով միջամտում էր պետական գործերին, շատ դեպքերում հայրապետական իշխանությունը նույնիսկ մրցակցում էր թագավորական իշխանության հետ: Սրան որպես ապացույց կարող է ծառայել այն տխուր դերը, որ խաղաց հայոց եկեղեցին Արշակունյաց և Բագրատունյաց անկման գործում: Բայց մյուս կողմից, կրկնում ենք, անպետականության երկարատև դարերի ընթացքում այդ նույն եկեղեցին դրական դեր կատարեց հայ ժողովրդի ազգային գոյության պահպանման, հայկական մշակույթի զարգացման, ազգային-ազատագրական պայքարի ծավալման գործում: Աներկբայելի է նաև այն վիթխարի դերը, որ այսօր խաղում է հայ եկեղեցին աշխարհասփյուռ հայ զանգվածների ազգային գոյատևման, մայր հայրենիքի գաղափարի շուրջը նրանց համախմբման, խաղաղության համար պայքարի գործում:

Դեռևս կան բազմաթիվ հարցեր, որոնք, մեր կարծիքով, պատմական և պատմափիլիսոփայական վերլուծության խիստ մեծ կարիք են զգում: Առաջին և կարևորագույն պրոբլեմներից մեկը հայ ժողովրդի պատմության պարբերացման հարցն է՝ ըստ հասարակական-տնտեսական ֆորմացիաների, մասնավորապես ստրկատիրական և ֆեոդալական հարաբերությունների գոյատևման ու տևողության ժամանակի, նրանց սկզբնավորման և վախճանի ժամանակի հարցը: Դատելով ըստ «Հայ ժողովրդի պատմություն» ակադեմիական հրատարակության, ստրկատիրական հասարակության Հայաստանում առկա լինելն աներկբայելի է, ընդ որում այն գոյատևել է ընդհուպ մինչև մեր թվականության IV դարը, հակառակ Ն. Ադոնցի և Հ. Մանանդյանի ժխտողական կարծիքի: Այդ դեպքում, մեր կարծիքով, բոլորովին անհասկանալի է մնում նախարարական կարգը, այդ կարգի էությունը, արքունի պաշտոնությունների էությունն ու բովանդակությունը, նախարարական աստիճանակարգը, նախարարությունների ժառանգական բնույթը և այլն, բաղադրիչներ, որոնք ըստ էության ֆեոդալական հասարակարգին բնորոշ դրսևորումներ են:

Նույնպիսի անորոշության քողով է ծածկված մնում նաև Ուրարտուի և Երվանդունիների ժամանակաշրջանի Հայաստանի սոցիալ-տնտեսական կյանքի նմանությունների ու տարբերությունների հարցը, որովհետև բերված փաստարկները համոզիչ չեն, հենվում են սոսկ հարևան երկրների, իսկ հետագայում էլ հելլենիստական աշխարհի պատմության ընձեռած փաստերի սոսկական համադրման վրա: Անհասկանալի է մնում, թե ինչպես քայքայվեցին նահապետական-տոհմային կարգերը և անցում կատարվեց ստրկատիրական հասարակության, արդյոք կապ կա՞, թե՞ ոչ նախարարական կարգի և նախկին տոհմա-ցեղային կազմակերպության միջև, որն ավելի ուշ շրջանի աղբյուրներում հիշատակվում է որպես ազգա[illegible]ություն:

Այնուհետև, ֆեոդալական հասարակարգի գոյատևումը Հայաստանում հասցվում է, կասեինք մեխանիկորեն, ընդհուպ մինչև XIX դարի կեսերը (հիմնականում Ռուսաստանի պատմության հետևողությամբ), որը նույնպես ճիշտ չէ, որովհետև տվյալ

դեպքում զանց են առնվում մի շարք պրոցեսներ, որոնց առկայությունը պետք է որ պատմաբաններին մտորումների տեղիք տար: Պարզաբանենք մեր միտքը:

Չնայած այն հանգամանքին, որ Հայաստանը երկատված էր մահմեդական բռնապետությունների լծի տակ, բայց շնորհիվ հայկական գաղթաշխարհի, ինչպես նաև եվրոպական երկրների հետ ունեցած մշտական կապերի, որը իրագործվում էր մի կողմից հայ վաճառականական կապիտալի ներկայացուցիչների, և մյուս կողմից հայ եկեղեցու միջոցով, այս կամ այն չափով հաղորդակից էր դառնում այն դարակազմիկ տեղաշարժերին, որոնք այդ ժամանակ կատարվում էին եվրոպական մայրցամաքում: Այնպիսի պատմական խոշոր իրադարձություններ, ինչպես XVI դարի երկրորդ կեսին ազգային-ազատագրական պայքարի դրոշի ներքո ընթացած նիդերլանդական հեղափոխությունը և 1640—1660 թթ. անգլիական բուրժուական հեղափոխությունը, չէին կարող գեթ գաղափարաբանական առումով իրենց կնիքը չդնել վերելքի ուղին բռնած հայ ազգային-ազատագրական շարժման, հատկապես նրա ղեկավար գործիչների վրա: Այս առումով ամենևին էլ պատահական չպետք է համարել այն պարագան, որ աշխարհում առաջին բուրժուական պետության՝ միացյալ պրովինցիաների հանրապետության կամ Հոլանդիայի խոշորագույն առևտրաարդյունաբերական և մշակութային կենտրոն Ամստերդամը եղավ հայկական գրատպության կարևորագույն օջախներից մեկը, և կամ իտալական վերածնության կենտրոններից Վենետիկը սնուցեց Մխիթարյան միաբանության ազգանվեր գործունեությունը:

Առ այսօր սովետահայ պատմագրության մեջ տիրապետողը այն տեսակետն է, որ հայ ժողովրդի նոր պատմությունը սկսվում է 1801 թվականով, չնայած որ այդ թվականը շրջադարձային նշանակություն չունի հայ ժողովրդի պատմության մեջ, բացառությամբ այն բանի, որ Արևելյան Վրաստանի միացմամբ Ռուսաստանի տիրապետության տակ անցան նաև մի քանի հայկական գավառներ: Բայց այդ դեպքում զանց է առնվում հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի ավելի քան մեկ դար տևած ժամանակահատվածը, որ ոչ այլ ինչ էր, եթե ոչ ցայտուն արտահայտություն համաշխարհային պատմական մի դարաշրջանի, որի ընթացքում ծնունդ առան նաև ազգային-ազատագրական շարժումները, որպես այդ դարաշրջանը բնորոշող երևույթներ:

Հայտնի է, որ կապիտալիզմի սկզբնավորմամբ սկիզբ է առնում նաև համաշխարհային պատմության նոր ժամանակաշրջանը: Բայց այդ չի նշանակում, որ այդ ժամանակաշրջանը գոյություն է ունեցել միայն այն երկրներում, որոնք ոտք էին դրել կապիտալիստական զարգացման ուղին: Չպետք է մոռանալ, որ նորածին կապիտալիզմը բնորոշող երևույթներից մեկը գաղութարարությունն էր, գաղութային համակարգի ստեղծումը: Հետևաբար, համաշխարհային, ինչպես նաև առանձին երկրների պատմության դարաշրջանները բնութագրելիս պետք է վերանալ այս կամ այն երկրում տիրապետող արտադրաեղանակից, և տվյալ ժողովրդի կամ ժողովուրդների պատմությունը պարբերացնել համաձայն տեղի ունեցող թեկուզ և վերնաշենքային պրոցեսների, որոնք բնորոշ են պատմության տվյալ դարաշրջանին:

Այդ տեսակետից եթե մոտենանք հարցին, ապա ակնբախ է, որ ոչ միայն բուն Հայաստանում, այլև ամբողջ հայ իրականության մեջ XVI— XVIII դարերում տեղի ունեցող պրոցեսները՝ լինի դա կապիտալի նախասկզբնական կուտակում թե ազգային-ազատագրական շարժում, այդ շարժման գաղափարախոսության մշակում, երևույթներ էին, որոնք բնորոշ էին համաշխարհային պատմական այն դարաշրջանին, որն ընդունված է անվանել նոր պատմություն: Սա նշանակում է, որ մենք համաշխարհային պատմական դարաշրջանն իրեն յուրահատուկ բաղադրիչներով և տիրապետող արտադրաեղանակը չպետք է շփոթենք միմյանց հետ և անջրպետենք միմյանցից:

Արդեն XVII դարում հայ վաճառականական կապիտալն այնպիսի աննախընթաց վերելք է ապրում և այնպիսի լայն շառավիղներով է գործունեություն ծավալում, որը չէր կարող չհանգեցնել կապիտալի նախասկզբնական կուտակման: Այդ իսկ պատճառով էլ հաջորդ XVIII դարում նկատելի է դառնում հայ վաճառականական կապիտալի արդյունաբերականի վերածվելու միտում, որը, սակայն, հասկանալի պատճառներով, տեղի էր ունենում հայկական գաղթաշխարհում, ոչ թե Հայաստանում, հայ իրականության մեջ բառիս լայն առումով: Եվ ամենևին էլ պատահական չէ, որ հատկապես XVIII դարի երկրորդ կեսին գաղութահայ բուրժուազիան իր ձեռքն է վերցնում նաև գրատպության գործը և սկսում իր հրատարակությունների միջոցով մշակել ու քարոզել գաղափարներ, որոնք բխում էին նրա բուն շահերից, հետևաբար և առաջադիմական ու բնորոշ էին տվյալ դարաշրջանի համար: Այդպես ձևավորվեց



լուսավորական գաղափարախոսությունը հայ իրականության մեջ, որի առաջամարտիկները հանդիսացան հնդկահայ բուրժուազիայի առաջավոր թևի ներկայացուցիչները ի դեմս Հովսեփ Էմինի, Մովսես Բաղրամյանի, Շահամիր Շահամիրյանի և այլոց:

Գտնվելով այնպիսի մի իրավիճակում, երբ նրա հետագա գոյատևումը դրվում է անմիջական սպառնալիքի տակ Հնդկաստանը հետզհետե նվաճող անգլիական գաղութարարների կողմից, երբ նրա առջև ծառանում էր համլետյան հավերժական լինել կամ չլինելու հարցը, հնդկահայ բուրժուազիան ի դեմս իր հեռատես և առաջադիմական ներկայացուցիչների, դարձրեց հայացքը դեպի իրեն ծնունդ տված երկիրը, իրավացիորեն ըմբռնելով, որ միայն այն կարող է լինել վերջնական հանգրվան և իր ազգային գոյատևման գրավական: Բայց մասնատված, պարսկական և թուրքական հետադիմական լծի տակ կքած Հայաստանն իր նման կացությամբ չէր կարող երազած հանգրվան լինել այդ բուրժուազիայի համար: Մի կողմից, հայրենի երկրի անմխիթարական վիճակը, մյուս կողմից, Եվրոպայի և այնտեղ լայն տարածում գտած լուսավորականության հետ ունեցած աներկբայելի շփումը հնդկահայ բուրժուազիային և նրա ներկայացուցիչներին հանգեցրին այն գաղափարին, որ նրա ազգային հարատևման համար ոչ միայն կենսական անհրաժեշտություն է հայրենիքի ազատագրությունը և հայրենի պետականության վերականգնումը, այլև ազատագրված հայրենիքում այնպիսի հասարակական պետական կարգի հաստատումը, որն առավելագույն հնարավորությունները կընձեռեր բուրժուական հարաբերությունների զարգացման համար: Նման պարագաներում ծնունդ առան տվյալ դարաշրջանի հայ հասարակական-քաղաքական մտքի գլուխգործոցները՝ «Հորդորակը», «Որոգայթ փառացը», «Նշավակը»: Այս հասարակական-քաղաքական անվերապահորեն առաջադիմական հուսանքը թարմ շունչ և բոլորովին նոր գաղափարներ ներարկեց հայկական ամբողջ իրականության մեջ: Լուսավորության և կրթության, ազգային-ազատագրական պայքարի մեջ տեսնելով հայրենի երկրի և հայ ժողովրդի ապագան, նրանք ըմբոստանում էին հայ եկեղեցական հետադիմական մասի հնազանդության և ստրկամտության կոչող քարոզների դեմ, և, որ գլխավորն է, մերժում էին միապետական կարգերը և հանրապետական կարգի մեջ տեսնում հայրենիքի իսկական ապագան: Հատկանշական է, որ միայն հնդկահայ բուրժուազիայի առաջադիմական թևը չէր այդ գաղափարների կրողը. դրանք լիովին բաժանում էին նաև Ռուսաստանում ապաստանած հայ բուրժուազիայի առաջավոր ներկայացուցիչները ի դեմս Լազարյանների և այլոց:

Այսպիսով, երբ հարցը դիտարկում ենք համաշխարհային-պատմական զարգացման տեսանկյունից, այն տեսանկյունից, որ հայ ազգային-ազատագրական շարժումը, ազգային-ազատագրական մտքի և ծրագրերի մշակումը հայկական իրականության մեջ լիովին համաքայլ էր ընթանում համաշխարհային պատմության դարաշրջանին և անմիջականորեն բխում էր նրա ոգուց, ապա լիովին հասկանալի է դառնում, որ հայ ժողովրդի պատմության գոյություն ունեցող պարբերացումը ամենևին չի համապատասխանում պատմական իրականությանը և հնարավորություն չի ընձեռում ամբողջական զարգացման մեջ քննարկելու այն հարցերը, որոնք առաջնահերթ կարևորություն ունեն հայ ժողովրդի պատմության գիտական լուսաբանության համար: Այսպես, օրինակ, առ այսօր էլ սովետահայ պատմագրության մեջ հետևողականորեն հետազոտված չէ հայ ազգային-ազատագրական մտքի զարգացման էվոլյուցիան նոր պատմության ժամանակագրական շրջաններում, որը մեծապես խանգարում է ըմբռնելու երևույթների զարգացման օրինաչափ ընթացքը, անըմբռնելի է դարձնում շատ երևույթների պատճառական կապակցվածությունը: Պատմության նոր ժամանակաշրջանին համապատասխանող իրողություններն ու երևույթները պետք է դիտարկվեն իրենց ամբողջության մեջ:

Հայոց պատմության նոր ժամանակաշրջանի առանցքային հարցը՝ ազգային-ազատագրական շարժման, նրա գաղափարաբանության և նպատակաուղղվածության հարցն է: Այս իմաստով հատուկ կարևորություն է ներկայացնում XVII դարի երկրորդ կեսի և XVIII դարի առաջին երեսնամյակն ընդգրկող ժամանակաշրջանը, երբ որոշակիորեն ձևավորվեց ազգային-ազատագրական շարժման գաղափարախոսությունը և հստակորեն մշակվեցին ազգային-ազատագրության հասնելու ուղիները: Հատկանշական է, իհարկե, որ հայ ազգային-ազատագրական շարժման գաղափարախոսությունը՝ ստրատեգիական և տակտիկական խնդիրների առաջադրման և լուծման առումով կյանքի կոչվեց կապիտալիզմի համաշխարհային մասշտաբով կազմավորման դարաշրջանում:

ռեգրեսը: Եվ միաժամանակ փորձը՝ այլ միջավայրում և այլ պայմաններում ավարտելու մայր հայրենիքում ընդհատված պատմական զարգացման ընթացքը: Դրա փայլուն իլյուստրացիան կարող է լինել Բագրատունյաց Հայաստանի և Կիլիկյան Հայաստանի օրինակը: Քաղաքային կյանքի և քաղաքների աննախընթաց ծաղկումը Բագրատունյաց Հայաստանում, մշակութային կյանքի վերելքը, Վերածննդին բնորոշ տարրերի աներկբայելի երևան գալը, կարծես թե, Հայաստանում ստեղծում էին այն բոլոր անհրաժեշտ պայմանները, որոնք պետք է նպաստեին անցումի հասարակական-տնտեսական նոր հարաբերությունների, այսինքն առկա էին այն բոլոր տարրերը, որոնք բնորոշ դարձան ավելի ուշ շրջանի Իտալիային և որոշեցին նրա անխամրելի տեղը կապիտալիզմի զարգացման պրոցեսում:

Բայց անսպասելիորեն այդ պրոցեսը ընդհատվեց: Նախ և առաջ կրկնվեց այն, ինչ որ 428 թ. Արշակունյաց վերջին գահակալ Արտաշես Գ-ի հետ, միայն այն տարբերությամբ, որ Գագիկ Բ-,ի և Բագրատունյաց տերության վախճանը կապված էր Արևմուտքի Տիզբոնի՝ Կոստանդնուպոլսի հետ: Եվ հետո հայտնվեցին սելջուկթյուրքերը, որոնք խաղացին գրեթե այն նույն դերը, ինչ որ VII դարում արաբները, երբ ողողեցին անպաշտպան մնացած Հայաստանը:

Սելջուկյան արշավանքների հետևանքով ծայր առած արտագաղթը հանգեցրեց հայ ժողովրդի մի ստվար հատվածի հաստատվելուն Կիլիկիայում, Կիլիկիայի հայկական պետության ստեղծմանը: Այս նոր միջավայրում և նոր պայմաններում արմատավորվեց և շարունակվեց այն պրոցեսը, որն ընդհատվել էր բուն Հայաստանում: Կիլիկիայում ևս քաղաքային կյանքն իր բոլոր գծերով մեծ վերելք ապրեց, զարգացավ նաև մշակույթը, որի որոշ տարրեր, մասնագետների կարծիքով, ազդակ հանդիսացան իտալական վերածննդի որոշ կողմերի սկզբնավորմանն ու զարգացմանը: Բայց 1375 թ. մամլուքյան Եգիպտոսի կործանարար հարվածը վերստին ընդհատեց առաջընթացը:

Բուն Հայաստանից, այնուհետև նաև Կիլիկիայից արտահոսած գաղթական հոսանքները եվրոպական այլևայլ երկրներում հիմնեցին գաղութներ: Իրենց ճնշող մեծամասնությամբ լինելով քաղաքային գաղութներ, օժտված լինելով որոշակի առանձնաշնորհումներով ու արտոնություններով, այդ գաղութները, ինչպես ցույց է տալիս նրանց ընկալած երկրների պատմական զարգացման ընթացքը, ներգրավվեցին կապիտալիստական հարաբերությունների զարգացման ոլորտը և մեծապես սատարեցին իրենց հյուրընկալած երկրների զարգացմանը կապիտալիզմի ուղիով: Այս առնչությամբ գրատպության գյուտը և տպարանների՝ որպես մանուֆակտուրային տիպի ձեռնարկությունների երևան գալը, որը Կ. Մարքսը համարում էր բուրժուական հասարակության ձևավորման կարևոր նախապայմաններից մեկը, ինչպես հայտնի է, շատ արագ ընկալվեց հայկական շրջաններում, և նույնպես վկայություններից մեկն էր, որ հայ ժողովուրդը նախապատրաստված էր ընթանալու կապիտալիստական զարգացման ուղիով:

Մյուս կողմից չպետք է մոռացության մատնել բոլոր հայկական գաղութներին բնորոշ մեկ հատկանիշ (մինչև նրանցից ոմանց ուծացումը), այն է՝ սերտ կապը մայր հայրենիքի հետ շնորհիվ եկեղեցու: Ընդ որում այդ կապի նշանակությունը կայանում էր գաղափարական այն խոր ազդեցության մեջ, որ խաղում էին հայկական գաղութները հայ ժողովրդի մտավոր կյանքում:

Այդ տեսակետից հատկապես աչքառու է Նոր-Ջուղայի օրինակը: Աչքառու ոչ միայն այն անգնահատելի դերով, որ նա խաղացել է մեր ժողովրդի կյանքում, այլև որպես մի նոր իլյուստրացիա պատմական պրոցեսի ընդհատման: Ջուղա քաղաքը, որ բռնի տեղահանվեց շահ Աբբաս I-ի բռնագաղթի հետևանքով, նոր տեղում արագ պատվաստվելով, շատ շուտով լուրջ մրցակից դարձավ արևմտաեվրոպական վաճառականությանը: Ընդ որում մեծ քանակությամբ առևտրական հարուստ տների առկայությունը, շրջանառության մեջ գտնվող դրամագլխի քանակությունը, մշակութային հարուստ կյանքը և այլն, խոսում են այն մասին, որ դեռևս Հին Ջուղայում կային այդ ամենի նախադրյալները: Այն դերը, ինչ խաղացել է Նոր-Ջուղան ավելի քան մեկ դարի ընթացքում հայ ժողովրդի հասարակական, քաղաքական և մշակութային կյանքում (որը դեռևս հանգամանալի և համակողմանի ուսումնասիրության կարոտ



հարց է, բայց ներկա դրությամբ էլ կասկածից դուրս), ինչպես և նրա սերտ ու ներգործուն մասնակցությունը համահայկական կյանքին, վկայում է, որ այլ պայմաններում, մայրենի հողի վրա, թերևս ավելի արգասավոր լիներ այն: Բայց Նոր-Ջուղայի զարգացման պրոցեսը ևս ընդհատվեց 1740-ական թվականներին Իրանում տեղի ունեցած միջադեպերի հետևանքով, այստեղից ևս ծայր առավ ուժեղ արտահոսք տարբեր ուղղություններով՝ Հնդկաստան, Ռուսաստան, Զմյուռնիա, և այլուր, որտեղ ընդհատված պրոցեսը շարունակվեց՝ դրսևորելով վաճառականական կապիտալի արդյունաբերականի վերածվելու ցայտուն ընդգծված միտում:

Սովետահայ պատմագրության առջև ծառացած կարևորագույն պրոբլեմներից մեկը հայ ազգային-քաղաքական կուսակցությունների դասակարգային էության, ազգային-ազատագրական շարժման մեջ նրանց տեղի և դերի հարցն է: Սա հայ ժողովրդի պատմության այն բնագավառն է, որ մնացել է ամբողջապես կուսական վիճակում, քանզի անհատի պաշտամունքի ժամանակաշրջանը արգելակրակի տակ էր դրել այն: Ի սկզբանե այդ կուսակցությունները և, հատկապես, դաշնակցությունը, հռչակվել էին հակահեղափոխական, և այդ տեսանկյունից էլ լուսաբանվում էր նրանց գործունեությունը, լուսաբանություն, որը սովորաբար հայհոյանքների և լուտանքների տարափ էր առանց հիմնավորման իսկ փորձի: Եվ հետազոտողները գլխի էլ չէին ընկնում, թե ինչպիսի պարադոքսներ են ասում: Այսպես, ի ծնե ազգայնական հռչակված դաշնակցությունը որակվում էր որպես հայ ժողովրդի ոխերիմ թշնամի: Հարց է ծագում, եթե դաշնակցությունը ազգայնական կուսակցություն էր, էլ ինչո՞ւ էր իր իսկ ժողովրդի ոխերիմ թշնամին, եթե ոխերիմ թշնամին էր, էլ ինչպես էր ազգայնական: Սա միայն գալիս է ցույց տալու, որ փորձ չէր արվում, սակայն նման փորձերն էլ արգելված էին, փոքրիշատե լուրջ գիտական մոտեցում դրսևորելու հարցի նկատմամբ:

Քաջ հայտնի է, որ XIX դարավերջի և XX դարասկզբի հայ ազատագրական շարժումները ղեկավարել են այդ կուսակցությունները: Բայց հայտնի է նաև այն, որ ազգային-ազատագրական շարժման ժողովրդի ծոցից ելած գործիչները, որոնք անդամագրվել են այս կամ այն կուսակցությանը, շատ դեպքերում իրազեկ իսկ չեն եղել նրանց սոցիալական ծրագրերին: Ստացվում է, որ բացասելով շարժման ղեկավարությունը, մենք բացասում ենք շարժումն առհասարակ: Իսկ շարժումը՝ ժողովրդի շահերից և իդեալներից բխող շարժում էր, հետևապես և ժողովրդի սեփականությունը: Խլել այն ժողովրդից, նշանակում է զրկել նրան ինքնաճանաչողությունից, տանել դեպի ինքնահրաժարման ու ինքնամոռացման բավիղը: Սովետահայ պատմագրությունը պարտավոր է տալ սեփական ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի պատմությունը, ով էլ որ գլխավորած լինի այդ պայքարը: Իսկ այն անհարկի մեղադրանքները, որ շպրտվել են ազգային-քաղաքական կուսակցությունների հասցեին, որ իբր թե նրանք ազգային մեկուսացման ընթացք էին որդեգրել, չէին կամենում միաձուլել տարբեր ազգությունների պատկանող աշխատավորական զանգվածների դասակարգային պայքարը, առնվազն երեխայամիտ են: Մի՞թե մահմեդական մոլեռանդության ոգով տոգորված այդ զանգվածները, որոնք միայն իշխանությունների ազդանշանին էին սպասում ամենայն վայրագությամբ բնաջնջելու քրիստոնյա հայերին, այն նյութն էին, որոնց հնարավոր լիներ դասակարգային պայքարի առաջնորդել: Մենք հեռու ենք այն մտքից, որ ազգային-քաղաքական կուսակցությունները զերծ են եղել սխալներից կամ վրիպումներ չեն ունեցել: Բայց և պետք է հաշվի առնել այն միջավայրը, որի մեջ նրանք պետք է գործեին, պետք է հաշվի առնել ուժերի հարաբերակցությունը, մեծ տերությունների եսակենտրոն քաղաքական ընթացքը:

Նվազ քաղաքական կարևորություն չունի դաշնակցություն կուսակցության սոցիալական կազմի և դասակարգային բնույթի ճշգրիտ գնահատականը: Հակառակ լենինյան տեսակետի, թե այն եղել է մանրբուրժուական, ոչ պրոլետարական կուսակցություն, որն իր ակունքներով գնում էր դեպի նարոդնիկությունը, առ այսօր էլ պաշտոնական է համարվում այն տեսակետը, որ այն հայ խոշոր բուրժուազիայի կուսակցությունն էր: Փորձ իսկ չի կատարված փոքրիշատե լրջորեն քննարկելու այդ կուսակցության ծրագիրը և օբյեկտիվ գնահատական տալու: Անհատի պաշտամունքի ժամանակների ոգով, դեռ այսօր շատերը շարունակում են հայտարարություններ անել, առանց փոքրիշատե լուրջ հիմնավորման փորձեր կատարելու: Դեռ այսօր

էլ փականքի տակ է հանգուցյալ ակադեմիկոս Աշ. Հովհաննիսյանի արևելահայ ազգային քաղաքական կուսակցությունների պատմությանը նվիրված մենագրությունը, որտեղ գիտականորեն բացահայտված են դաշնակցական և հնչակյան կուսակցությունների սոցիալական արմատները և ծագումնաբանական ակունքները:

Ժամանակն է մեկընդմիշտ հրաժարվել ստալինյան այն անհիմն դրույթից, որ իբր թե Հայաստանի մի փոքր հատվածում սովետական կարգերի հաստատումով լուծվեց հայկական հարցը: Եթե մենք համադրում ենք նրա սույն դրույթը այն ժամանակի քաղաքական իրավիճակի հետ, որ նա բռնեց մեկ-երկու ամիս անց Մոսկվայի պայմանագրի կնքման ժամանակ, ապա պարզ է դառնում, թե ինչու էր նա հայկական հարցը համարում լուծված: Այդ տեսանկյունից էլ ամենայն մանրամասնությամբ պետք է լուսաբանվեն քեմալական Թուրքիայի հետ 1921 թվականի Մոսկվայի և Կարսի պայմանագրերը, իրենց նախապատմությամբ և նպատակաուղղվածությամբ:

Հայտնի է, թե միջազգային, ռեգիոնալ և ներքին որպիսի բարդ ու ճգնաժամային պայմաններում 1918 թ. տեղի ունեցավ հայկական պետականության վերականգնումը: Կարճատև եղավ Հայաստանի հանրապետության գոյությունը, բայց և սխալ կլինի ժխտել, որ այն որոշակի դրական դեր խաղաց հայ ժողովրդի ինքնաճանաչման, պետականության մտայնության պատվաստման գործում: Ժամանակն է, որ ամենայն օբյեկտիվությամբ տրվի Հայաստանի հանրապետության պատմությունը, վերհանելով դրականը և չմոռանալով բացասականը, որ այն խաղաց երկու և կես տարվա ընթացքում:

Վերջին ժամանակներս ընթացիկ մամուլը, ամսագրերը ողողված են հոդվածներով, որոնք բացահայտում են Ի. Ստալինի ոճրագործությունները 1930-ական թվականների ընթացքում և դրանից հետո, մինչև նրա մահը ընկած ժամանակաշրջանում, սոցիալիզմի այն ձևախեղումը, որ տեղի է ունեցել նրա բարեհաճությամբ, շեղումով լենինյան ուղուց: Սակայն հազվադեպ են և անորոշ այն «սխալների» մատնանշումները, որը նա թույլ է տվել ազգային հարցի ոլորտում: Հուսահատության առաջին ճիչը բարձրացավ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզից և մեր առջև պարզեց սոցիալիզմի պայմաններում լենինյան ազգային քաղաքականության միանգամայն հակասող մի սահմռկեցուցիչ օրինակ: Ինչպես արդեն նշեցինք, իր «հայրական» սերը հայ ժողովրդի նկատմամբ Ստալինը ցույց տվեց 1921 թվականին, նպաստելով, որ Մոսկվայի և Կարսի պայմանագրերով քեմալական Թուրքիային անցնեն Կարսի ամբողջ մարզը գումարած պատմության ընթացքում բնավ երբեք Թուրքիային չպատկանած Սուրմալուի գավառը: Այդպես «լուծելով» հայկական հարցը Թուրքիայի հետ, և հօգուտ Թուրքիայի, վերջինիս թելադրանքով էլ նա Նախիջևանը հանձնեց Ադրբեջանին, այդ արանքում էլ մերժելով Լեռնային Ղարաբաղի հանձնումը Հայաստանին: Հետևողականորեն կիրառելով ավտոնոմիզացիայի իր հակալենինյան պլանը, 1923 թ. նա Լեռնային Ղարաբաղը մուծեց Ադրբեջանի կազմի մեջ՝ ինքնավար մարզի ստատուսով: Այդպես կողոպտվեց առանց այդ էլ տարածքապես կողոպտված Հայաստանը: Եվ ի՞նչ եղավ այդ «ազգային» քաղաքականության հետևանքը: Մ. Բաղիրովը և նմանները, նկատի առնելով այն հանգամանքը, որ Նախիջևանի տարածքը երեք կողմից շրջափակված է հայկական հողերով և այն կորցնելու հնարավոր վտանգ կա, արագորեն հայաթափեցին Նախիջևանը, որից հետո ձեռնամուխ եղան նույն քաղաքականության իրագործմանը Լեռնային Ղարաբաղում: Ծակատագրի հեգնանքով, հայկական պետականության վերականգնման պայքարի այդ առաջամարտիկը՝ Արցախի հայությունը, ոչ միայն անջատվեց մայր հայրենիքից և գաղութային ճնշման տակ ընկավ էթնիկապես, կենցաղային և կրոնական առումով բոլորովին խորթ մի էթնոսից, այլև կանգնեց հազարամյակների հայրենիքն ու ազգային ինքնությունը կորցնելու իրական վտանգի առջև: Նկատի առնելով վերոհիշյալ բոլոր հանգամանքները, ԼՂԻՄ-ի հարցը քննարկման դրվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նիստում և 1989 թ. հունվարի 12-ի հրամանագրով ԼՂԻՄ-ում սահմանվեց կառավարման հատուկ ձև, ստեղծվեց հատուկ կառավարման կոմիտե՝ Ա. Ի. Վոլսկու նախագահությամբ, պահպանելով հանդերձ Ադրբեջանական ՍՍՀ-ի կազմում ինքնավար մարզի ստատուսը: Դրանով իսկ ընդունվեց այն անուրանալի իրողությունը,որ ԼՂԻՄ-ում տարվել է, հիրավի, սոցիալիզմի սկզբունքներին անհարիր քաղաքականություն:



Հայ ժողովրդի համար խիստ թանկ արժեցան 1930—50-ական թվականների սկզբի բռնությունները: Բայց առ այսօր էլ խոսքը դեռ գնում է միայն առանձին ականավոր գործիչների մասին: Անհրաժեշտ է վեր հանել և ցույց տալ, թե ինչպիսին եղան սոցիալիզմի ձևախեղման հետևանքները Հայաստանում, ինչպես կործանվեց հայկական գյուղաշխարհը, որքան մարդկային կոհեր տվեցինք մենք այդ ահասարսուռ տարիներին: Անշուշտ, ավելի քան ճիզվիտական նպատակներ էին հետապնդում 1949 թ. ռեպրեսիաները և բռնի տեղահանումները, որոնք հետապնդում էին քաղաքական հեռագնա նպատակներ, ընդհուպ մինչև Հայկական ՍՍՀ-ի վերացում: Չէ՞ որ դա ևս ազգային քաղաքականության ստալինակերպ դրսևորում էր, շարունակությունը 1921 թ. և 1923 թվականների: Սրանց գիտական վերլուծությունը ևս պետք է դառնա հանրության սեփականությունը:

«Մենք պետք է թանկ գնահատենք մեր պատմության ամեն էջը,— ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում նշեց ընկ. Ս. Գ. Հարությունյանը,— քանի որ դա մեր պատմությունն է ու մենք նրանից խույս տալու իրավունք չունենք: Մենք հեռավոր և ոչ այնքան հեռավոր անցյալի մասին պետք է իմանանք ամբողջ ճշմարտությունը, որքան էլ այն դառը լինի»:

Անցյալի բազմաթիվ երևույթներ որոշ իմաստով կրկնվում են, բայց կրկնվում են զարգացման նոր պայմաններում և որպես արգասիք պատմական նոր իրականության: Այստեղից էլ պատմության անաչառ ուսումնասիրության անհրաժեշտությունը, որպես դաս և առհավատչյա ժողովրդի ապագա գոյատևման:

---

# ԿՎԵՐԱԾՆՎԵՆ ՔԱՂԱՔՆԵՐՆ ՈՒ ԳՅՈՒՂԵՐԸ

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

ԹՎՈՒՄ Է, ԹԵ ՄԻ ԱՄԲՈՂՋ հավիտենություն է անցել այն օրից, երբ հայոց լեռնաշխարհը ցնցվեց ավերիչ երկրաշարժից: Ավերվեցին մեր հնամենի Գյումրին և նորակերտ Սպիտակը, Ստեփանավանն ու Կիրովականը, հարյուրավոր շեներ, անօթևան մնաց մոտ կես միլիոն մարդ:

1988 թ. դեկտեմբերի 7-ը սևով գրվեց հայոց պատմության մեջ, բնության անկուլ տարերքին մեկ վայրկյանում զոհ գնացին հազարավոր անմեղ, անլեզու երեխաներ, ապագայի թովռուն և լուսավոր երազներով լի երիտասարդներ, հազարավոր հայրենակիցներ գերի դարձան հայրենի հողին ու քարին, այն քարին, որը դարեր շարունակ եղել է մեր ժողովրդի ստեղծարար հանճարի վկան ու խորհրդանիշը: «Հայաստանը աղաղակող քարերի երկիր է»,— գրել է դարասկզբին Օսիպ Մանդելշտամը: «Հայաստանը քարե սիմֆոնիա է»,— ասել է մեր օրերի ճանապարհորդը: Ողբերգություն և վերածնունդ կողք-կողքի. այսպես է եղել մեր լեռնաշխարհի պատմության երկար ու ձիգ քառուղիներում. այսպես է և մեր օրերում: Վկան՝ այն փոքրիկ լենինականցիները, կիրովականցիները, սպիտակցիները, որոնք ծնվեցին երկրաշարժից հետո Երևանում, Թբիլիսիում, Մոսկվայում: Ծնվեցին հայկազունները, և նրանց հետ կարծես նորից ծնվեց ողջ հայ ժողովուրդը: Ոտքի ելավ տոկալու, գոյատևելու աներեր հավատով, և այդ հավատը դրոշի պես վեր պարզած՝ առաջին շարքերում, ավագների հետ Հայաստանի երիտասարդությունն է:

«Ծանր արհավիրք է... պարզապես ողբերգություն: Այն ամենը, ինչ տեսա այս երկու օրում,պարզապես ցնցեց ինձ,— նշեց Մ. Ս. Գորբաչովը կենտրոնական և հայկական հեռուստատեսության թղթակիցների հետ ունեցած հարցազրույցի ժամանակ:— Իհարկե, մի բան, որ չես վերադարձնի, դա մարդկանց խորտակված կյանքն է: Շատ ափսոս, ափսոս մարդիկ, բայց փորձության ժամին ես հայ ժողովրդին տեսա արիակամ: Թե՛ լաց, թե՛ արցունքներ, թե՛ պահանջներ՝ այս ամենը չէր ջնջում այն, ինչ մենք տեսնում էինք, ինչպես էին մարդիկ անձնվիրաբար ոչնչի առջև կանգ չառնելով, չսպասելով, մինչև ամեն ինչ կազմակերպվի, ինչպես հարկն է, գործում էին, օգտագործում ձեռքի տակ եղած ամեն ինչ, որպեսզի օգնության հասնեն»:

Երկրաշարժից հետո մեր ժողովրդի համար այդ օրհասական օրերին մենք մենակ չմնացինք: Մեր ցավն ու վիշտը հավասարաչափ կիսեցին սովետական ողջ ժողովուրդը, ամբողջ առաջադեմ մարդկությունը: Միասնական ընտանիքի, մեկ երկնքի տակ ապրող մարդկային հասարակության ջերմությունն ու համերաշխությունը լավայի ուժով ժայթքեցին, նյութական ու բարոյական կերպեր ստանալով առարկայացան, դարձան բարեկամության անշեջ մի հուշարձան: Աշխարհի լեզուները խառնվեցին հայոց ավերված քաղաքների ու գյուղերի փլատակների վրա, երկիր մոլորակը դարձավ փոքրիկ Հայաստանը գուրգուրող և վիշտն ամոքող մեկ սիրտ և մեկ հոգի:

Այդ ամենը ոչ միայն մարդկային կարեկցանքն էր, այլև մեր կուսակցության և կառավարության վարած նոր քաղաքական մտածողության արդյունքը, մեր վերակառուցման հուժկու ուժն ու նրա նկատմամբ անսասան հավատը: Մարդասիրության, հայ ժողովրդի ճակատագրի հանդեպ խոր մտահոգության արտահայտություն էր

---

*ՀԱԿՈԲՅԱՆ ՀՐԱՆՈՒՇ ՀՐԱՆՏԻ— ՀԼԿԵՄ կենտկոմի առաջին քարտուղար:*



Մ. Ս. Գորբաչովի պաշտոնական այցի ընդհատումը ԱՄՆ-ում և ժամանումը երկրաշարժի վայր: Յուրաքանչյուր հայի հոգում ալիքվում է երախտագիտության անափ զգացումը Քաղբյուրոյի հանձնաժողովի նախագահ, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Նիկոլայ Ռիժկովի հանդեպ, որը նպատակասլաց և վճռական գործողություններով ձգտում էր դուրս բերել հանրապետությունը օրհասական վիճակից, կանխագծել նրա ապագան: Մեզ համար ծանր այդ օրերին մեկ անգամ ևս ապացուցվեց, որ մեր երկրի ուժը նրա միասնության մեջ է, նրա ժողովուրդների անկաշառ բարեկամության և ինքնաբուխ ինտերնացիոնալիզմի մեջ:

«Դժվար է ասել, թե հանրապետությունը հիմա ինչ վիճակի մեջ կլիներ, եթե ճակատագրական օրվանից՝ դեկտեմբերի 7-ից հետո ամբողջ թափով չդրսևորվեին սովետական մարդկանց միասնության, համերաշխության, եղբայրության ստեղծարար հնարավորությունները»— հանրապետական կուսկցական-տնտեսական ակտիվի ժողովում նշեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը:

Հայ ժողովրդին հասած դժբախտությունը ալեկոծեց նաև երկրի երիտասարդության ջահել հոգիները: Միության բոլոր կոմերիտական կազմակերպություններից ՀԼԿԵՄ Կենտկոմում ստացվեցին ցավակցական և օգնություն ավետող հազարավոր հեռագրեր և նամակներ: Մեզ օգնության ձեռք մեկնեցին Վրաստանի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Տաջիկստանի, Լատվիայի, Ուզբեկստանի և մյուս եղբայրական հանրապետությունների կոմերիտմիության կենտկոմներն ու մարզկոմները, Մոսկվայի ու Լենինգրադի քաղաքային կազմակերպությունները: ՀամԼԿԵՄ Կենտկոմը որոշում ընդունեց երկրաշարժից տուժած մեր հայրենակիցներին, երիտասարդներին ու մանուկներին օգնելու նպատակով հատկացնել հինգ միլիոն ռուբլի: Այդ օրերին մենք ամբողջությամբ զգացինք մեր լենինյան երիտասարդական կազմակերպության հզորությունն ու կազմակերպվածությունը: ՀամԼԿԵՄ Կենտկոմն իր որոշումով ոչ միայն նյութական օգնություն կազմակերպեց, այլև մոբիլիզացրեց երկրի ամբողջ երիտասարդության ուժերը՝ փրկարար աշխատանքների կազմակերպման համար: Անմիջապես հանրապետություն ուղարկվեցին «Լենինսկի կոմսոմոլեց», «Կոմսոմոլեց Ուկրաինի», «Կոմսոմոլեց Ուզբեկիստանա» ագիտգնացքները, որոնց մի մասը վերածվել էր վագոն-պոլիկլինիկաների, ճաշարանների: Ինչպե՞ս շնորհակալ չլինել միութենական բոլոր կոմերիտական կազմակերպություններին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին, որոնք պարտքի և պատասխանատվության բարձր զգացումով, հավասարաչափ կիսելով մեր վիշտը, մեր ցավն իրենցը համարելով, ժամ առաջ փորձում էին փրկարար ջոկատներով, ծանրոցներով ու աղետյալներին իրենց ռեգիոն ընդունելով թեթևացնել մեր հոգսերը, շնորհակալություն հայտնել 131 կոմերիտական-երիտասարդական ջոկատների կազմում երկրի տարբեր ծայրերից ժամանած այն երիտասարդներին, որոնք ցուցաբերեցին անձնազոհության փայլուն օրինակներ՝ փրկելով հազարավոր մարդկանց կյանք: Ողբերգության առաջին օրերից Լենինականի և Սպիտակի փլատակների վրա էր աշխատում ՀամԼԿԵՄ Մոսկվայի քաղկոմի հավաքագրած միացյալ ջոկատը, որը փրկել էր 38 կյանք, փլատակներից հանել մոտ 500 զոհվածի: Կա՞ ավելի մեծ զգացում, երբ երիտասարդ մարդը փրկում է մեկի կյանքը, իմաստնանում և ապրում այդ աննկարագրելի զգացումով, որը հավերժ ուղեկից է դառնալու իրեն:

Ինքնամոռաց էր աշխատում նաև Ռոստովի երկաթուղային տրանսպորտի ինստիտուտի 109 հոգիանոց ջոկատը, որտեղ ընդգրկված էին 11 ազգերի ներկայացուցիչներ: Ջոկատի անդամներից Սերգեյ Ռիժկինը գտել և պետությանն էր հանձնել գոհարեղենի մի զարդատուփ: Գոգա Միլտաձեն՝ 10 հազար, իսկ Հմայակ Սարգըսյանը՝ 3 հազար ռուբլի: Հայ ժողովրդի ողբերգությանը փլատակների վրա ականատես եղան Մոսկվայի Լոմոնոսովի անվան համալսարանի, միջազգային հարաբերությունների պետական ինստիտուտի ուսանողները, Լենինգրադից, Կիևից, Խարկովից, հեռավոր Կամչատկայից ժամանած երիտասարդներն ու աղջիկները: Փրկարար աշխատանքներին մասնակցեց Լեհաստանի երիտասարդական սոցիալիստական միության հավաքագրած 89 հոգիանոց ջոկատը: Երկրաշարժից հետո մեզ մոտ էր գտնըվում նաև չեխ կինեմատոգրաֆիստների խումբը:

Դժբախտության ժամին մեզ ցավակցեցին ուսանողների միջազգային միությունը, դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան և այլ միջազգային առաջադեմ երիտասարդական միություններ ու կազմակերպություններ:

Հսկայական աշխատանք կատարեցին սովետական ռազմիկները, ՍՍՀՄ ՆԳՄ ներքին զորքերը, որոնց հատուկ էին կազմակերպվածությունն ու քաջարտությունը: Միայն Քիշինևից և Կիևից ժամանած զինվորները և միլիցիայի բարձրագույն դպրոցի ունկնդիրները փրկել են ավելի քան 1500 վիրավոր, պետությանն են հանձնել 30

որը որբացած, բայց բոլորը կարեկցանքի, գուրգուրանքի և հարազատի կարոտ:
Ուզում եմ գտնել երախտագիտության այն թանկ և միակ խոսքերը Մոսկվայի, Թբի-
լիսիի, մյուս քաղաքների մանկաբույժներին և վիրաբույժներին, որոնցով լցված է
յուրաքանչյուրիս սիրտը, նաև ապշահար բժիշկներից լսում եմ մեր երեխաների
անօրինակ կամքի ու հոգու արիության մասին: Քաջն Վարդանի և կամ լեգենդար
Կամոյի արիությու՞նն ուներ արդյոք 12-ամյա Տիգրան Պետրոսյանը Սպիտակից,
որը 13 ժամ ոտքերն ու ձեռքերը փլատակների տակ իր մեջ ուժ էր գտնում ազատ
ձեռքով քրոջ համար օդանցք բացելու: Ավա՜ղ, քույրը չդիմացավ դժոխքին և խեղդ-
վեց, իսկ Տիգրանը ատամներով սեղմած ցավը, բժիշկներին թույլ էր տալիս բուժե-
լու իր խեղանդամ մարմինը: Բուժող բժիշկ Դոմբրես Բեռնդը վճռեց Տիգրանին ա-
պաքինման տանել ԳՖՀ:

Այս օրերին արցունքները խեղդում են յուրաքանչյուրիս, երբ լսում ենք տար-
բեր երկրների բժիշկների ցույց տված օգնության մասին: Հայ ժողովրդի, հայ փոք-
րիկների ողբերգությունը վերացնում է բոլոր սահմանները, մոտեցնում օվկիանոս-
ներն ու մայրցամաքները: Ամերիկացի բժիշկների «Հույս» բարեգործական կազ-
մակերպությունը ամերիկահայ բժիշկների նախաձեռնությամբ հենակների կարիք
ունեցող հայ մանուկներին բուժման է տանում ԱՄՆ: Շատ դժվար պահերի ակա-
նատես կլինեք՝ փողոցներում հանդիպելով հաշմանդամ փոքրիկներին, մեծերին:
Եվ գուցե այդ վիշտը թեթևացնի գթասրտության և բարեգործական այն շարժումը,
որը Հայաստանը կապում է համայն աշխարհին: Այսօր արդեն ակնհայտ է, որ ան-
հրաժեշտ է երկրի մասշտաբով ստեղծել հաշմանդամների վերականգնման պետա-
կան ծրագիր, որտեղ ֆիզիկականի հետ պակաս կարևոր չէ նաև հոգեկանի վերա-
կանգնումը:

ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի՝ հանրապետությունում աշխատող հանձնաժո-
ղովի, հանրապետության ղեկավարության կարևոր հարցադրումներից մեկն էլ երե-
խաներին, կանանց ու ծերերին էվակուացնելու խնդիրն էր: ՀԱՄԽ-ը, ՀԱՄԿԽ-ի
ղեկավարությամբ և ՀԼԿԵՄ Կենտկոմը մասնակցեցին այդ աշխատանքներին:
ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշմամբ համամիութենական մի շարք ճամբարներ տրա-
մադրվեցին աղետից տուժած երեխաներին:

Այստեղ, ինչպես նաև հայ բնակչության վերաբնակեցման այլ վայրերում, ուր
բացվել են հայկական դպրոցներ և դասարաններ, ՀԼԿԵՄ Կենտկոմը ՀՍՍՀ կուլ-
տուրայի մինիստրության հետ մեկտեղ առաքել է գեղարվեստական, ուսումնական,
մանկական գրականություն և գրենական պիտույքներ: Կազմակերպվել է Երևան—
Մինսկ—Յարոսլավլ—Կրասնոդար ռադիոկամուրջը: ՀԼԿԵՄ Կենտկոմի նախաձեռ-
նությամբ կազմակերպված ամենօրյա հանդեսները, հանդիպումները սիրելի դերա-
սանների և գրողների հետ, հայկական ֆիլմերի ցուցադրումը փոքր-ինչ ամոքում
են տնից հեռու գտնվող մեր հայրենակիցների վիշտը: Հայ փոքրիկների սևուկ աչ-
քերից աստիճանաբար վերանում է սարսափը՝ տեղի տալով ապրելու աներեր կամ-
քին:

Հայաստանի շատ կոմերիտական կազմակերպություններ ստանձնել են առան-
ձին հանգստյան տների, առողջարանների շեֆությունը: Հանրապետության մի շարք
ձեռնարկությունների կոմերիտականների և երիտասարդների նախաձեռնությամբ
անցկացվել են շաբաթօրյակներ, որոնցից գոյացած միջոցները օգտագործվում են
էվակուացված երեխաներին անհրաժեշտ օգնություն ցույց տալու համար: Միայն Դի-
լիջան քաղաքի տրիկոտաժի ֆաբրիկայի կոմերիտականները 10.000 ռուբլու արժո-
ղությամբ մանկական հագուստներ են հանձնել աղետյալներին:

Այժմ կարևորագույն խնդիրն է՝ վերադարձնել երեխաների հոգեկան անդորրը,
մոռացության տալ մղձավանջը: Չկա ավելի սարսափելի բան, քան փլվող շենքերի
նկարները, ստեղծված մանկական ձեռքով, ինչին քանի անգամ ականատես ենք
եղել Լենինական, Սպիտակ քաղաքներում: ՀԼԿԵՄ Կենտկոմի և Վ. Ի. Լենինի անվան
համամիութենական մանկական ֆոնդի ուժերով Երիտասարդական պալատում կազ-
մակերպված հոգեբանական ծառայությունն այս օրերին բուժում է ոչ միայն երեխա-
ներին, այլև մեծահասակներին:

Երկրաշարժի առաջին իսկ օրը ՀԼԿԵՄ Կենտկոմում ստեղծված շտաբին էին
դիմում անօթևան մնացած, հարազատներ ու մտերիմներ կորցրած հազարավոր
մարդիկ: Նրանց անհրաժեշտ էր օգնել ապաստարանով, տաք հագուստով, սննդա-
մթերքով: ՀԼԿԵՄ Կենտկոմի նախաձեռնությամբ Երևան քաղաքի հասարակական
սննդի 12 օբյեկտներում կոմերիտմիության միջոցների հաշվին կազմակերպվեց երկ-
րաշարժից ավելի քան 10.000 տուժածների անվճար սննդի ապահովման գործը:



ՀԼԿԵՄ Կենտկոմի Երիտասարդական պալատը, «Ծիծեռնակ» երիտասարդական
տուրիստական կենտրոնը դարձան աղետյալների յուրօրինակ հավաքատեղի: Սի-
րով և ամենայն հոգատարությամբ փրկվածներին իրենց հարկի տակ ընդունեցին
հարյուրավոր երևանցիներ, քաղաքամերձ շրջանների բնակիչներ: Այս առումով մեծ
աշխատանք են կատարել հատկապես ՀԼԿԵՄ Երևան քաղաքի, Ապարանի, Արա-
գածի, Արարատի, Արտաշատի, Աշտարակի, Անիի, Աբովյանի, Թալինի, Էջմիածնի,
Ճամշադինի, Դիլիջանի, Հոկտեմբերյանի, Հրազդանի կոմերիտմիության շրջկոմները:

Աշխարհի տարբեր ծայրերից, մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների
կողմից հանրապետության աղետյալ շրջաններին ցույց էր տրվում տարբեր տեսակի
օգնություն: Հարկավոր էր բեռնաթափել գնացքները, յուրաքանչյուր 12 րոպեն մեկ
վայրէջք կատարող ինքնաթիռները: Դեկտեմբերի 8-ին «Զվարթնոց», «Էրեբունի»
օդանավակայաններում, երկաթգծի կայարաններում սկսեցին գործել ՀԼԿԵՄ Կենտ-
կոմի ստեղծած բեռնաթափման և տուժած շրջաններին բեռների առաքման շտաբ-
ները: Շուրջօրյա բեռնաթափման և բեռնաառաքման աշխատանքներում ընդգրկվել
են ավելի քան 30 հազար կոմերիտականներ և երիտասարդներ, որոնց ակտիվ
մասնակցությամբ բեռնաթափվել են ավելի քան 800 ինքնաթիռ, 11 հազար տոննա
բեռ: Հանրապետություն առաքվող բեռների ընդունման և բեռնաթափման աշխա-
տանքներն ամբողջությամբ ստանձնեց ՀԼԿԵՄ Երևանի քաղաքային կոմիտեն, այդ
գործին ամենաակտիվ մասնակցությունը ցույց տվեցին Օրջոնիկիձեի, Շահումյանի,
Լենինականի, Սովետական, Մյասնիկյանի շրջանների կոմերիտականներն ու երի-
տասարդները, բուհերի ուսանողները:

Ողբերգության առաջին իսկ օրերից «Բաղրամյան 18» հասցեն մոտ ու հարա-
զատ դարձավ ոչ միայն օթևան և սնունդ ստացած հազարավոր աղետյալներին,
այլև բոլոր նրանց, ովքեր ՀԼԿԵՄ Կենտկոմի շեմից ներս էին մտնում հարազատ-
ների, մերձավորների մասին բարի լուր լսելու ակնկալությամբ: Անհնար էր տեսնել
մանուկների սևորակ աչքերին իջած անհուն թախիծն ու աղերսող, ծնողին պա-
հանջող, օգնություն հայցող հայացքը: Եվ նաև երեխաներին կորցրած, կարկամած,
կորստից խենթացած երիտասարդ մայրերի ու բնության հետ կռիվ տվող, տղա-
մարդկային ժլատ արցունքները զսպելու անկարող հայրերի սպասումը:

Այո՛, վերահաս աղետի ամենածանր հարվածը, ամենացուրտ իրողությունը
մարդկային կորուստներն են: Այդ օրերին բոլորի շուրթերին «հույս» բառն էր: Չկար
մտերիմն ու հարազատը, բայց չէր մարում նրան վերստին տեսնելու հույսը, որն
օգնեց հազարավոր մարդկանց՝ գտնել միմյանց: Հայաստանի կոմերիտմիության
Կենտկոմն իր կարևոր խնդիրներից մեկը համարեց երեխաներին, աղետի վայրերից
սարսափահար փախած, արնաքամ ու անգիտակից, տարբեր հիվանդանոցներում
գտնվող մարդկանց որոնելու գործը: Ժամ առ ժամ մեծանում էր «Որոնում» ծառա-
յության տարբեր բաժիններում կուտակվող տեղեկատվությունը, որը մշակելու և հա-
մակարգելու համար կենտրոնացվեցին երիտասարդ գիտնականների և ծրագրավո-
րողների ուժերը: Տասը հաշվիչ կենտրոնների բազայի վրա երիտասարդ ծրագրավո-
րողներ Երվանդ Խոջամիրյանի, Գագիկ Թորգոմյանի, Կարեն Կարապետյանի,
ՀԼԿԵՄ Կենտկոմի բաժնի վարիչ Գ. Վահանյանի, ՀԼԿԵՄ Կենտկոմի բյուրոյի ան-
դամ Արթուր Փահլևանյանի և մյուսների ուժերով սկսեց գործել ՀԼԿԵՄ Կենտկոմի
ինֆորմացիոն-հաշվիչ կենտրոնը: Այդ բազայի վրա ՀԼԿԵՄ Կենտկոմը, ելնելով
ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի համապատասխան որոշումից, ստեղծեց կոմերի-
տական ինքնուրույն ձեռնարկություն՝ երկրաշարժի հետ կապված շատ ու շատ
հարցեր հաշվողական տեխնիկայի միջոցով լուծելու համար: «Որոնում» ծառայու-
թյան լուրը հասավ նաև ԱՄՆ, և Ամերիկայի ռադիոսիրողները մեզ հատկացրին
հաշվիչ ռադիոկապը, որը հնարավորություն է ընձեռում հեռավորության վրա մեծ
զանգվածով տեղեկություն հաղորդել: Ստացված հաշվիչ սարքերն ու ռադիոհաղոր-
դիչները հնարավորություն կտան նաև մշտական կապ հաստատել երկրի տարբեր
շրջաններում ապրող հայ ընտանիքների, նրանց ընդունող կազմակերպությունների
հետ: Մեծ է հանրապետության ռադիոսիրողների ծառայությունն այս գործում: Մեզ
մեծապես աջակցեցին ռադիոսիրողների հանրապետական ֆեդերացիայի նախա-
գահ Պյոտր Զելենկոն և Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի ռադիոսիրողների
ակումբի ղեկավար Լևոն Թովմասյանը:

«Որոնում» ծառայության ամենօրյա հեռախոսազանգերի թիվն առաջին օրերին
անցնում էր հինգ հազարից, իսկ այցելուներինը՝ 15 հազարից: Սակայն ծառայու-
թյան փոստն այժմ լի է նաև երախտագիտության նամակներով և հեռագրերով: Կա՞

արդյոք մեկ այլ ուրախություն, քան երեխաներին մոր գիրկը վերադարձնելը, բավարարվածության մեկ այլ զգացում, քան հայրենակցիդ վիշտն ամոքելը:

«Որոնում» ծառայության աշխատակիցները սրտի անհուն բերկրանք և բավարարվածություն են ապրում գրեթե ամեն օր՝ ուրախ լուր հայտնելիս, ինչպես ասենք լենինականցի չորսամյա Ռիտա Ավետիսյանին հանձնելով մորը և կամ 10 ամսական Հրաչիկ Սարդարյանին՝ Սպիտակից, մորաքրոջը, 12-ամյա Մերուժան և 16-ամյա Կարապետ Ղարիբյաններին՝ եղբորը: Այս օրինակները կարելի է անվերջ շարունակել, քանի որ այսօր իրար գտել են մոտ 20 հազար մարդ: Հարազատներին, բարեկամներին, ծանոթներին որոնելու խնդրանքներ են ստացվում Միության տարբեր ծայրերից, անգամ արտասահմանից: Բարեկամներն ու հարազատները հեռավորության վրա էլ են գտնում իրար և բարի լուր ստանում միմյանց մասին: Իվանովո քաղաքից օդաչու Ռուդոլֆ Կրիչիկովը այդպես գտավ իր լենինականցի բարեկամներին: Այսօր ծառայությունն ստացել է 30 հազարից ավելի հարցում կորածների մասին: Միութենական հանրապետությունների կոմերիտմիության կենտկոմներում ստեղծված նմանատիպ ծառայությունների միջոցով հայտնում են մեր տեղեկությունները, և այսօր ծառայությունն ունի տվյալներ շուրջ 115 հազար աղետյալի մասին: Որոնումն արագացնելու նպատակով Կենտկոմում մշակվող ցուցակները, ինչպես նաև անհայտ կամ փնտրվող երեխաների լուսանկարները ՀԿԿ Կենտկոմի որոշմամբ սկսեցին տպագրվել «Ինֆորմացիոն բյուլետեն»-ում և նրա «Հույս» հավելվածում, որի լույսընծայմանը օգնում են «Ավանգարդ» և «Կոմսոմոլեց» թերթերի խմբագրությունները:

Մեզ, առավել ևս ապագա սերունդներին, անհրաժեշտ է այս օրերի պատմությունը: Աղետի առաջին օրերից ՀԼԿԵՄ Կենտկոմում գործում է «Տարեգրություն» խումբը, որի նպատակն է հավաքել յուրաքանչյուր փաստ, մասունք, լուսանկարային փաստաթղթերի, հեռագրերի, նամակների և այլ նյութերի հիման վրա ստեղծել երկրաշարժի և նրան հաջորդած վշտահուր օրերի ամբողջական պատկերը: Այս գործում շատ մեծ էր նաև կենտրոնական և հանրապետության մասսայական ինֆորմացիայի միջոցների դերը: Իրավիճակը օպերատիվ ներկայացնելուց և լուսաբանելուց բացի, «Ավանգարդ» թերթի խմբագրության ուժերով վերածնվեց Սպիտակի «Լուսարձակ» շրջանային թերթը: «Գարուն» ամսագրի աշխատակիցները օգնեցին վերականգնելու Ստեփանավանի «Փարոս» շրջանային թերթը:

Այսօր արդեն սկսվել է վերակառուցման երկրորդ՝ ոչ պակաս կարևոր փուլը, որի գլխավոր նպատակն է առաջիկա երկու տարում, ամենակարճ ժամկետում վերականգնել տուժած շրջանների սոցիալ-տնտեսական պոտենցիալը: Ողջ ընթացքով հունի մեջ են մտնում քաղաքների և գյուղերի վերակառուցման աշխատանքները:

Շենացնել, ծաղկեցնել ավերված բնակավայրերը՝ սա է ոչ միայն հինավուրց շինարար հայ ժողովրդի, այլև մեր երկրի բոլոր շինարարների հոգսն ու խնդիրը: «Երկրաշարժի հետևանքները վերացնելու աշխատանքների երկրորդ փուլը մենք անվանում ենք վերականգնողական, հանրապետության կուսակցական և տնտեսական ակտիվի ժողովում իր ելույթում ասաց Ն. Ի. Ռիժկովը:— Բայց այն պակաս մարդասիրական չէ, քան առաջինը, որովհետև խոսքը տվյալ դեպքում նույնպես փրկության և խոշոր ռեգիոնի կենսագործունեության փրկության մասին է»:

Երկրաշարժից տուժած շրջանների վերաբերյալ կուսակցության և կառավարության ընդունած որոշումներում կան կոնկրետ հանձնարարականներ հանրապետության երիտասարդությանը: ՀԼԿԵՄ Կենտկոմի հերթական պլենումը նվիրվեց այդ հանձնարարականների կոնկրետացմանը, հանրապետական կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովի պահանջների կատարմանը: Առաջին գլխավոր խնդիրը, որը նշվեց պլենումում, երիտասարդական ուժերի ճիշտ տեղաբաշխումն է վերականգնողական աշխատանքներում, լինի դա բնակելի տների, թե սոցիալ-տնտեսական օբյեկտների, դպրոցների, մանկապարտեզների, կուլտուրայի տների շինարարությունը և այլն: Մեր ուժերով վերականգնվելու են Ախուրյանի շրջանի Գետք ավանը, Սպիտակի և Գուգարքի շրջաններում վերակառուցվելու է երկու գյուղ: Հայաստանի կոմերիտականները ստանձնել են ավերված շրջաններից որևէ մեկում պիոներների և դպրոցականների պալատի, կոմերիտական և պիոներական աշխատողների շուրջտարյա հանգստի ճամբարի, Ստեփանավանի կառուցման աշխատանքները: Ամառը այդտեղ, միութենական տարբեր ջոկատների հետ կաշխատի նաև ուսանողների 10 հազարանոց շինարարական ջոկատը:

Շինարարական աշխատանքներն արագացնելու և դրանց որակի վրա խիստ վերահսկողություն իրականացնելու նպատակով ՀԼԿԵՄ Կենտկոմը դիմել է ՀԿԿ



Կենտկոմ և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդ՝կոմերիտական ինքնուրույն շինարարական կազմակերպություն ստեղծելու համար: Կարծում ենք, որ կոմերիտական կազմակերպությունները, երիտասարդական շինարարական կազմակերպությունները պետք է լինեն շինանյութերի և կառուցման որակի մշտական վերահսկողն ու ահազանգողը:

Պլանավորվել է նաև երիտասարդության ուժերով տուժած շրջաններում կառուցել պարզ տիպի սպորտային հրապարակներ, լողավազաններ, հրաձգարաններ, մանկական «Հույս» համալիրներ, ըստ բնակության վայրերի ստեղծել ակումբներ: ՀԼԿԵՄ Կենտկոմին կից գեղագիտական զարգացման, գիտատեխնիկական և տնտեսական կապերի հանրապետական կենտրոնի միջոցով մեծ աշխատանքներ են ծավալվել՝ երիտասարդ ճարտարապետների, նախագծողների ուժերը մոբիլիզացնելու գյուղական շրջաններում սեյսմիկ տնակների, բնակարանների նախագծման համար:

Այսօր, առավել քան երբևէ, անհրաժեշտ է պրոպագանդել և խրախուսել տեղերում այն երիտասարդական կոոպերատիվների, ձեռնարկությունների ստեղծումը, որոնց գործունեությունը կնպաստեն ոչ միայն տուժած շրջաններում բնակչության որոշ խմբի աշխատանքով, այլ նաև աղետյալ գոտիներին գյուղատնտեսական ապրանքներով, սննդամթերքով և լայն սպառման առարկաներով ապահովմանը:

Երկրաշարժի ծանր հետևանքները լուրջ վտանգի տակ են դրել գյուղատնտեսական արտադրության կազմակերպումը: Այդ ծավալուն աշխատանքների կատարմանը մասնակցելու են երիտասարդները, աշակերտական-արտադրական բրիգադներն ու ջոկատները, գյուղատնտեսական և անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտների ուսանողները:

Աշխատանքի հաջորդ կարևոր ուղղությունն է երկրաշարժից տուժած բնակչության, ինչպես նաև տարերային աղետի գոտում աշխատող մեծաթիվ հայ և այլազգի շինարարների ազատ ժամանակի կազմակերպումը: Այդ գործում մենք ակնկալում ենք մեր ստեղծագործական միությունների երիտասարդական ստեղծագործական կոլեկտիվների, լենինյան կոմերիտմիության դափնեկիրների, ինքնագործ խմբերի ամենաակտիվ մասնակցությունը մեր բազմադարյան արվեստն ու գրականությունը ներկայացնելու, նրանց առօրյան հագեցնելու, բազմազան դարձնելու համար: Այս հարցում մենք պետք է համագործակցենք նաև մյուս հանրապետությունների կոմերիտմիության կենտկոմների և մարզկոմների, մշակութային կազմակերպությունների հետ: Չէ՞ որ տնից հեռու հնչող հարազատ երգն ու խոսքը միշտ էլ ոգևորում և լիցքավորում է մարդուն: Պակաս կարևոր չէ հայ ժողովրդի պատմությանը, սովորույթներին նվիրված դասախոսությունների ու զրույցների կազմակերպումը, գրքույկների և ուղեցույցների լույսընծայումը:

Երկրաշարժի ավերիչ ուժը կործանեց շատ ու շատ պատմաճարտարապետական հուշարձաններ, որոնց վերականգնման աշխատանքներին անդամագրվում են մեր երիտասարդ նկարիչներն ու ճարտարապետները, քանդակագործներն ու հնէաբանները: Ներկա վիճակում մեծանում է լրատվական-մասսայական միջոցների դերը, որոնք նոր խորագրերի, հաղորդաշարերի, թղթակցական կետերի միջոցով լայնորեն պետք է լուսաբանեն տուժած շրջանների սոցիալ-տնտեսական և մշակութային պոտենցիալի վերականգնման ողջ ընթացքը:

Մեր հիմնական խնդիրներից է «Որոնում» ծառայության գործունեության շարունակումը: Մեզ համար պակաս կարևոր չէ նաև ուշադրության և մշտական խնամքի տակ պահել աղետի և վերաբնակեցված շրջաններում հայ մանուկների, պատանիների ու աղջիկների ուսուցման և հանգստի կազմակերպումը, որոնք այսօր բնականոն հունի մեջ են մտել:

Աղետյալ շրջանների տնակային և վրան-դպրոցներում խիզախության, բարության և ինտերնացիոնալիզմի դասեր են տրվում արհավիրք տեսած երեխաներին: Այդ դպրոցներում այսօր ամենագլխավոր առարկան հայրենասիրությունն է, հողին ու ջրին հարազատ մնալու պատվիրանը: Ու նաև անձնազոհությունը, որպիսին ցուցաբերեց Ստեփանավանի շրջանի Գյուլագարակ գյուղի գործարանային մասնաճյուղի ինժեներ Բալասան Մաղաքյանը՝ կյանքի գնով փրկելով դպրոցի մանուկներին: Վ. Ի. Լենինի անվան համամիութենական մանկական ֆոնդի և ՀամԼԿԵՄ-ի միջոցներով որոշվել է դպրոց կառուցել գյուղում և այն կոչել Բալասանի անունով: Կարծում եմ, այդպես պետք է հավերժացվի բոլորի հիշատակը՝ անուն առ անուն:

Անսովոր պայմաններ, նոր պահանջներ են ներկայացվում ներկոմերիտական աշխատանքներին: Մեզ առաջադրված խնդիրների լուծման համար երիտասարդության ուժերի համախմբման արդյունավետությունը մեծապես պայմանավորված կլինի

այն բանով, թե ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմներին, սկզբնական կոմերիտական կազմակերպություններին որքանով կհաջողվի ստեղծված արտակարգ պայմաններում վերականգնել սկզբնական կոմերիտական ու պիոներական կազմակերպությունները, իրենց քաղաքական հասունությամբ, կողմնորոշվելու կարողությամբ, կազմակերպվածությամբ լուծել շատ ու շատ հարցեր, հոգալ գործունյա, մարտունակ ակտիվի ստեղծման մասին:

Այստեղ անհրաժեշտ է արդեն թոթափել ծանր մղձավանջը, հասկանալ, թե այս ի՞նչ դանթեական դժոխքով անցավ մեր սերունդը, ի մի բերել արածն ու չարածը, գնահատել նաև երիտասարդության հասարակական-քաղաքական ակտիվությունը, որը կարծես ամլացել էր լճացման տարիներին: Այն ինքնաբուխ պոռթկաց վերակառուցման հետ, հրապարակայնության և դեմոկրատիայի շնչով կյանքի կոչված ղարաբաղյան շարժման փոթորկուն ամիսներին: Դառն ու երկարաձիգ ամիսները ցույց տվեցին, որ էքսպանսիոնիզմը և առճակատումը երկու հարևան հանրապետությունների միջև հղի է միայն վտանգավոր հետևանքներով: Երկխոսությունը, տեղական կապերի վերականգնման ուղիներն ու ձևերը կողք-կողքի ապրող ժողովուրդների, հատկապես երիտասարդների համար, լարվածության, փոխադարձ կշտամբանքների և վիրավորանքների վերացման միջոց են, քանզի ներկա սերունդը չէ, որ մեղավոր է ստալինյան կամայականության, բրեժնևյան լճացման տարիներով խտացած ղարաբաղյան պրոբլեմի գոյության համար: «Նման իրավիճակներում,— նշեց ընկ. Ռիժկովը,— պետք է վերակշռվեն պատասխանատվությունը, կշռադատվածությունը, խելամիտ քաղաքական փոխզիջումներին ընդառաջելու կարողությունը և երկու ժողովուրդների ժողովրդական իմաստնությունը»: ԼՂԻՄ-ում ժամանակավորապես կառավարման հատուկ ձև սահմանելու մասին 1989 թ. հունվարի 12-ին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության ընդունած որոշումը աննախադեպ է մեր երկրի պատմության մեջ, որը թելադրված է ԼՂԻՄ-ի շուրջ ստեղծված լարված իրադրությամբ: Կոմերիտական կազմակերպությունները բացատրական աշխատանք են տանում՝ երիտասարդության լայն շրջաններին հասցնելու ընդունված փաստաթղթի խոր քաղաքական իմաստն ու ինտերնացիոնալիստական էությունը:

Մեր ժողովուրդը գոհունակությամբ ընդունեց ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1988 թ.) պլենումի կողմից ՍՍՀՄ կառավարության առջև բարձրացված հայկական ատոմակայանի փակման հարցի դրական լուծումը: Այս առումով ազգային անհետաձգելի խնդիր է դառնում էներգիայի խնայողության, մեր արդյունաբերական համալիրները նոր ռեժիմի տեղափոխելու գործը: Երիտասարդությունը իր գործարարությամբ, ակտիվությամբ պետք է ամենօրյա հսկողություն իրականացնի այս հույժ կարևոր գործում, դրանով իսկ օգնի երկրաշարժից տուժած շրջանների վերականգնմանը, մասնակցի մեր հանրապետության, երկրի քաղաքական կյանքի վերափոխումներին: Կոմերիտականներն ու երիտասարդները պետք է դառնան նորի, առաջավորի ջատագովներ, միայն աշխատանքով, նվիրվածությամբ ամոքեն մեր ցավն ու վիշտը, մեր բազմազգ երկրի շինարարների հետ թեթևացնեն աղետյալների հոգսը:

Հանրապետության երիտասարդության մարտական ջոկատը, որը աղետյալներին օգնելու ժամանակ անձնուրացության հիանալի օրինակներ է տվել, ակտիվորեն ու խանդավառությամբ կմասնակցի ավերված քաղաքների ու գյուղերի վերականգնման հայրենանվեր գործին, արդարությամբ և ազնվությամբ կավելացնի աշխարհի բարին ու լույսը:

---

# ԼԵՆԻՆԱԿԱՆ. ՀԱՎԵՐԺԻ ՔԱՂԱՔ

Տ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

**«Մանրագույն մարդկային ողբերգություն տեղի ունեցավ: Դրա մասշտաբների մասին մենք առաջ էլ գիտեինք, բայց նման ավերածություններ ու զոհեր պարզապես անհնար էր պատկերացնել:**

**... Անկարելի է բառերով արտահայտել այն, ինչ տեսնում ես այստեղ՝ բազմաչարչար Լենինականում: Բոլորս, ամբողջ երկիրն է բաժանում ձեր վիշտը: Կարող եք չկասկածել, ամեն ինչ կարվի, որպեսզի լիովին անհրաժեշտ օգնություն ցույց տրվի»:**

**Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎ**

ԱՎԱՆԴԱԾԱՏ ՈՒ ԱՎԱՆԴԱՊԱՀ Լենինական քաղաքի Մայիսյան ապստամբության հերոսների անվան հրապարակում վեր է խոյանում մի գեղեցիկ կոթող՝ «Քարե մատյանը»: Նրա քարե էջերին գրանցվում էին քաղաքի տարեգրության ամենանիշարժան օրերը, իրադարձությունները՝ ի պահ գալիք սերունդների: Մեծ արհավիրքի օրերին, երբ հիմնովին ավերվեցին մերձակա շինությունները, անգամ՝ Ամենափրկիչը, «Քարե մատյանը» մնաց անեղծ. քաղաքը պատմելիք ունի աշխարհին...

**1924 թվական:** Հայաստանի աշխատավորները Վ. Ի. Լենինի հիշատակը հավերժացնելու համար, հատուկ գրությամբ դիմեցին Մոսկվա՝ հնօրյա Ալեքպոլը վերանվանելու Լենինական: ՍՍՀՄ Կենտգործկոմի փետրվարի 26-ի նախագահության նիստում, որը վարում էր Մ. Ի. Կալինինը, ուշադրությամբ ծանոթացան Հայաստանի Կենտգործկոմի և Ժողկոմխորհի խնդրանքին:

— Արդեն մենք ունենք Լենինի անվան մի քանի վայրեր,— ասաց Մ. Կալինինը:— Ահա այսօր մեզ մի քանի վայրերից առաջարկում են նշել Լենինի հիշատակը: Այդ ամենը հասկանալի է. ժողովուրդը սիրում է Լենինին և ցանկանում է ընդգծել իր անսահման սերը: Բայց մենք չենք կարող հաշվի չառնել տեխնիկական որոշ խնդիրներ: Երևակայու՞մ եք, թե ինչ կացություն կստեղծվի, եթե վերցնենք և առանց լավ մտածելու փոխենք բոլոր հին անունները...

Կենտգործկոմի անդամներին, սակայն, դուր եկավ հնչուն անունը՝ «Լենինական»: Ինչպես վկայում է այդ նիստին ներկա գտնված պետական, հասարակական գործիչ Արտաշես Կարինյանը, Կալինինը մի քանի անգամ ակներև հաճույքով կրկնեց «Լենինական» անունը, ժպտաց մի ակնթարթ, ապա տեղեկանալով, որ քաղաքը գտնվում է անմիջապես սահմանին մոտ, ձեռքի մի շարժում անելով ասաց. «Ընդունենք այդ առաջարկը: Ալեքպոլ ոչ մի պարագայում չի կարելի անվանել հենց նրա համար, որ այդ անունը կապված է նորտատերերի հովանավորողի անվան հետ: Դա շատ լուրջ մոտիվ է: Թող ուրեմն այդ քաղաքը անվանվի ԼԵՆԻՆԱԿԱՆ: Բայց դուք այժմ պարտավոր եք այդ քաղաքը դարձնել օրինական և շեն մի քաղաք»:

Ալեքսանդրապոլը վերանվանվեց Լենինական: Բնորոշ է այն, որ այդ անունը անմիջապես սիրելի դարձավ, ընդունվեց ուրախությամբ. առաջին իսկ օրից գյումրեցիները առանձնակի պարծանքով էին հիշեցնում երևանցիներին, որ իրենք լենինականցիներ են: Քաղաքի նոր անվան հետ մարդիկ նոր հույսեր էին կապում, սկսվում էր ապահով կյանքի ու վերածնության մի բեղուն շրջան:

Ռուսիան, սովետական իշխանությունը օգնության ձեռք մեկնեցին պատերազմներից բզկտված, հազար-հազար սովյալ գաղթականներով լեցուն Լենինականին. մի քաղաքի, որ ասես ճակատագրի դաժան նախախնամությամբ, 1924-ի օգոս-

---

*ԽԱՉԱՏՐՅԱՆ ՏԻԳՐԱՆ ՀԵՆՐԻԿԻ— «Սովետական Հայաստան» թերթի թղթակից:*

տոսին Ա. Վ. Լունաչարսկին նմանեցրեց Պոմպեյի հետ. «Սիրտս ճմլվում է այն արտասովոր նմանությունից, որ ունի Լենինականը Պոմպեյի հետ: Միայն այն տարբերությամբ, որ վերջինս ենթարկվել էր բնական աղետի, իսկ առաջինը՝ թուրքական»:

Ի հակադրություն ոճրալից ողբերգության, սովետական իշխանությունը արգասավոր շինարարություն ծավալեց այստեղ: Առաջինների թվում անշահախնդիր օգնության եկան Իվանովո-Վոզնեսենսկի տեքստիլագործները. նրանց ուղարկած ջուլհակային սարքավորումներով 1924 թվականին Լենինականում հիմնադրվեց Հայաստանի թեթև արդյունաբերության առաջնեկը՝ տեքստիլ կոմբինատը: Առաջնեկը լինելու մենաշնորհ դեռ էլի էր տրված աշխատասեր լենինականցիներին ու Լենինականին. այստեղ 1924-ի հունիսին տեղի ունեցավ սովետահայ օպերային թատրոնի անդրանիկ ներկայացումը, բեմադրվեց «Ֆաուստ» օպերան: Հանրապետությունում առաջին երաժշտական ստուդիան, մանկավարժական տեխնիկումը բացվեցին Լենինականում: 1925-ի հունիսին լենինականցիները համաժողովրդական տոնախմբության վերածեցին Շիրակի ջրանցքի բացման արարողությունը: Ջրանցքի փականի մեխանիկական բարձրացմանը, Մ. Ցխակայայի, Ս. Խանոյանի, Ա. Հովհաննիսյանի, Ս. Համբարձումյանի, Ս. Լուկաշինի, Ֆ. Մախարաձեի, Ա. Մռավյանի և Անդրֆեդերացիայի ղեկավար մյուս գործիչների հետ միասին, մասնակցեց նաև հայ ժողովրդի մեծագույն բարեկամներից մեկը՝ աշխարհահռչակ բևեռախույզ ու գիտնական, ականավոր հասարակական գործիչ Ֆրիտյոֆ Նանսենը: «Հայ ժողովրդի տարեգրության մեջ սկսվում է նոր դարաշրջան,— Շիրակի ջրանցքի բացման առթիվ հունիսի 21-ին Լենինականում կազմակերպված հանդիսավոր նիստում ասաց Ֆ. Նանսենը: Նա խոսում էր գերմաներեն, որը թարգմանվում էր:— Այս գործը (ջրանցքը), որից ստացանք հրաշալի տպավորություն, կատարված է ուժեղ ու խելոք ժողովրդի կողմից, որը համեստ միջոցներով, բայց նպատակասլաց կերպով, երկար տարիների տանջանքներից, գրկանքներից, պատերազմների արհավիրքներից ու ավերածություններից հետո պատրաստ է կառուցելու իր երջանիկ ապագան»:

Լենինականում Ֆ. Նանսենը այցելեց նաև նորաստեղծ տեքստիլ կոմբինատ, շրջագայեց արտադրամասերում և գոհունակությամբ արձանագրեց բանվոր-բանվորուհիների ոգեշունչ աշխատանքը: Մեծ նորվեգացին զգաց նոր կյանքի շունչը, տեսավ ազատ ու խաղաղ լենինականցիների ստեղծագործ աշխատանքի պտուղները և իր հետ որպես հիշատակի մասունք Նորվեգիա տարավ տեքստիլ կոմբինատի արտադրանքի նմուշներից:

Խաղաղ երազներով էր ապրում ու շնչում Լենինականը, նոր մտահղացումներ էին թևածում լենինականցիների հոգիներում, երբ... 1926-ի հոկտեմբերի 22-ին հողը դղրդաց ու ցնցվեց մարդկանց ոտքերի տակ: Ժամը 16-ն անց 4 րոպեին զգացվեց առաջին թույլ հարվածը: Ժամը 16-ն անց 44 րոպեին՝ առաջին ուժեղ հարվածը տագնապով ցնցեց քաղաքը: Իսկ 19-ն անց 59-ին՝ գլխավոր ավերիչ հարվածը կործանեց քաղաքը: Երկրաշարժը ընդգրկեց Արփաչայի միջին հոսանքին կից շրջանները և նրա ամենահնտենսիվ ազդեցությունը տարածվեց Լենինականից մինչև Ղազարապատ գյուղը: Այդ շերտում երկրաշարժի ուժգնությունը հասավ 8—9 բալի: Ավերվեց ու կործանվեց Լենինականի բնակելի տների գրեթե 80 տոկոսը, շուրջ մեկուկես հազար տուն: Աղետի զոհ դարձան 300, վիրավորվեց նույնքան մարդ: Հատկապես տուժեց երկաթուղային կայարանի շրջակայքը, որտեղ կառուցվածքները տեղադրվել էին բերվածքների ու լիցքերի վրա:

Աղետի բոթը տարածվեց երկրով մեկ, հեռագրերը կայծակի արագությամբ գուժեցին. «Լենինականում ուժեղ երկրաշարժը անտուն է թողել հազարավոր մարդկանց», «Հարյուրավոր մարդիկ զոհ են գնացել բնական տարերքին», «Շիրակի ջրանցքը չի վնասվել», «Տեքստիլ կոմբինատը վնասվել է», «Բանկոոպի փուռը չեն աշխատում. ամբողջովին վնասվել են: Բնակչությանը հաց բաժանվում է զորանոցային փուռերից», և՛ այլն, և՛ այլն...

Միութենական, հանրապետական բոլոր թերթերն իրենց առաջին էջերում, լրատվական մյուս միջոցները այդ օրերին հրապարակում էին Անդրերկրգործկոմի նախագահ Միխա Ցխակայայի խոսքը. «Լենինականը, եղբայրական հանրապետության երկրորդ քաղաքը, նախկին Ալեքսանդրապոլ-Գյումրին, որ խորհրդայնացումից հետո «մկրտվեց» պրոլետարական մեծ հանճար, անմոռանալի առաջնորդ Լենինի անունով, կատարելապես արդարացրեց մեծ առաջնորդի հույսերն ու ավանդները:

Լենինականում վերջին երեք-չորս տարում եռում էր շինարարական աշխատանքը: Լենինականը տուժեց, տուժեցին և շրջակա գյուղերը, բայց Լենինականը վաղը նորից ոտքի կկանգնի ամբողջ կարմիր Հայաստանի, ամբողջ Խորհրդային Անդրկովկասի և ամբողջ մեծ ԽՍՀՄ բանվորների, գյուղացիների կամքով:

Տուժած ընկերներ, մեր ձեռքերն ու միտքը այսօր ամբողջովին ձեզ են պատկանում: Մենք բոլորս, ամբողջ մեծ ԽՍՀՄ ձեզ հետ ենք՝ ձեր վշտի և ուրախության օրերին, ինչպես միշտ»:

... Ցավակցական, նաև շտապօգնության հասնելու պատրաստակամությամբ հեռագրեր էին այդ օրերին ստացվում Հայաստանում՝ ամեն մի հանրապետությունից, շրջանից ու քաղաքից. «Մոսկվայի պրոլետարիատը հավաքել է մեկ միլիոն ռուբլի», «Աղետի առաջին և երկրորդ օրերին Լենինգրադի աշխատավորները հավաքել են 25 հազար ռուբլի, նաև տաք հագուստ, անհրաժեշտ իրեր», «Նիժնի Նովգորոդից ստացվել է հինգ հազար ռուբլի», «Մեր սիրելի քույրեր ու եղբայրներ, ձեզ ենք ուղարկում ջուլհակային նոր դազգահներ: Իվանովո-Վոզնեսենսկի տեքստիլագործները ցավակցում են ձեզ և ամեն ինչ կանեն թեթևացնելու համար ձեր վիշտը», «Ուկրաինայի ժողկոմխորհը հատկացրել է 50 հազար ռուբլի»...

Աղետից մեկ շաբաթ անց մամուլում հրապարակվեց «Լենինականի երկրաշարժի դեմ կռվող արտակարգ հանձնաժողովի» նախագահ, Հայաստանի հողժողկոմ Ա. Երզնկյանի հաղորդումն այն մասին, որ նոյեմբերի 1-ի դրությամբ հավաքված միջոցների գումարը հասել է երկու միլիոն ռուբլու:

Առաջինը, այդ ծանր պահին մեր ժողովրդին սատար կանգնեցին սովետական բանակի մարտիկները: Ալեքսանդր Շիրվանզադեն, որ աղետի օրերին հաճախ էր լինում Լենինականում և թղթակցություններ տպագրում կենտրոնական թերթերում, «Խորհրդային Հայաստանի» նոյեմբերի 8-ի «Աղետի վայրում» հոդվածում գրում է. «... Շարքերը մի կերպ ճեղքելով մտնում եմ առաջին հարկի դահլիճը (կայարանի շենքի—Տ. Խ.): Քարե հատակի վրա սփռված են մարդկային կույտեր, գրեթե իրար վրա... Շուրջս դիտելու համար նստած եմ մի սեղանի մոտ: Մի խումբ զինվորականներ, առանձին սեղանի շուրջը նստած թեյ են խմում: Մոտս նստած մի երիտասարդ ինձ ասում է, որ այդ մարդիկ մասնակցել են վիրավորներին ու դիակներին փլատակների տակից դուրս բերելու տխուր գործին: Հոգնությունը նրանց մղում է դեպի քուն...

— Ի՞նչ դեր է կատարել կարմիր բանակն աղետի ժամին,— հետաքրքրվում եմ ես:

Երիտասարդը հուզված ձայնով նկարագրում է այն խոշոր օգնությունը, որ ցույց է տվել բանակն աղետյալներին:

— Եթե չլինեին այդ անձնազոհ ու խիզախ մարդիկ, խուճապը կլիներ դժոխային, և զոհերի թիվը՝ եռակի,— ավարտում է երիտասարդը»:

Գրողի աչքից չի վրիպել նաև առաջինների թվում Լենինական հասած եղբայրական վրաց ժողովրդի օգնությունը. «... Մի փողոցում տեսա Խորհրդային Վրաստանի հրդեհաշեջներին իրենց մետաղյա կասկաներով: Նրանք կարմիր բանակի զինվորներին հավասար օգնություն են մատուցել աղետյալներին: Եղբայրական աննախընթաց օգնություն, որի նմանը գոնե ես չեմ տեսել երբեք, քառասուներեք տարի ապրելով հայ-վրացական միջավայրում: Եվ ահա, չնայելով ավերված քաղաքի ողբերգական պատկերներին, սիրտս բաբախում է ցնծությունից»:

Աղետի այն տխուր օրերին Լենինական եկավ համամիութենական Կենտգործկոմի նախագահ Մ. Ի. Կալինինը: Նրա այցը մեծ տպավորություն թողեց վրաններում ապաստանած լենինականցիների վրա: Կալինինը, ինչպես վկայում են ականատեսները, փողոցներում զրույցի էր բռնվում մարդկանց հետ: Բնորոշն այն էր, որ մարդիկ զգում էին բարձր իշխանության ներկայացուցչի խոր ապրումները, նրա պատրաստակամությունը կազմակերպելու շտապօգնություն:

Կալինինի վրա մեծ տպավորություն է թողնում լենինականցիների առույգ տրամադրությունը: Նա գոհունակությամբ նշում է, որ ժողովուրդը հավատում է սովետական իշխանությանը:

Լիահույս ու լավատես էին լենինականցիները, որ կվերականգնվի, կվերակառուցվի նոր Լենինականը, որովհետև լավ էին գիտակցում, որ միայնակ չեն աշխարհում: Ժողովուրդը բռնել էր վերածննդի մեծ ճանապարհը՝ թոթափելով որբությունն ու աղքատությունը, ապավինելով ժողովուրդների իրական բարեկամությանն ու օգնությանը: «Օգնության կամպանիաներ մեր բանվորներն ու գյուղացիները շատ անգամ են կազմակերպել,— «Խորհրդային Հայաստանի» հոկտեմբերի 26-ի համարում գրում էր Ասքանազ Մռավյանը:— Աշխատավորական քրտինք բուրող կոպեկներից գոյացել են հարյուր հազարներ ու միլիոններ և բուժվել մեծ վերքեր: Լենինականի աղետը ցավոտ վերք է ողջ Խորհրդային Միության համար և այժ, մենք համոզված ենք, կդարմանվի պետական ու հասարակական բուռն ջանքերով: Կազմակերպված և արագ միջոցներով մենք կփրկենք երկրաշարժից վնասված և

անտուն մնացած Լենինականի և գավառի աշխատավորներին...»:

Թերթում եմ այն ոչ հեռավոր օրերի լրագրերը, ականատեսների հուշագրությունները, արխիվային բազմաթիվ վավերագրեր. դրանք խոսուն վկաներն են այն եղբայրական ձեռքմեկնման, որ ուղղվեց մեզ լենինականյան «զուլումի» օրերին: Այդ անշահախնդիր օգնությունը գնահատվեց ըստ արժանվույն և հավերժ գրանցվեց մեր ժողովրդի հավաքական հիշողության մեջ:

Այո՛, մենք հիշողությունը պահող-փայփայող ժողովուրդ ենք, մեր կյանքը հազարամյակներով չափող ժողովուրդ, անհամար դժբախտություններ ու աղետներ հաղթահարած, բարին, գթությունը, եղբայրությունը պաշտող ժողովուրդ: Այդ հիշողությունը այսօրվա սերունդը կրում է իր մեջ և փոխանցելու է գալիք սերունդներին՝ եղբայրության, բարեկամության մասին նոր հավաստիացումներով ու դրսևորումներով, աշխարհի, մեր Միության բազմաթիվ ժողովուրդների գութ ու կարեկցանքի օրինակներով: Ու նաև դժբախտության մեջ հայտնված եղբայրական ժողովուրդներին օգնություն փութալու, նրանց ցավը մեզանում դարմանելու, վիշտը բաժանելու բազում օրինակներով: Վկա՝ ժողովուրդների բարեկամության շքանշանը, որով պարգևատրվեց Լենինական քաղաքը 1984-ին: Այդ իրադարձությունը նույնպես, ի պահ գալիք սերունդների, փորագրվեց Լենինականի Մայիսյան ապստամբության հերոսների անունը կրող հրապարակի «Քարե մատյանում»:

Եվ դեռ որքա՜ն պատմելիք ուներ քաղաքը...

**1988 թվական:** Լենինական: Քարտեզի վրա փոքրիկ այս կետն այժմ հայտնի է աշխարհի չորս ծագերում ապրող ողջ մարդկությանը: Ահա այժմ էլ ո՞րերորդ անգամ վիշտն ու աղետը դժբախտություն պատճառեցին գյումրվա համ ու հոտով, կենսախնդությամբ լեցուն, ինքնատիպ ու ավանդապահ քաղաքին: Դժնի դեկտեմբերի 7-ի օրը որքա՜ն լուսավոր իղձեր մնացին փլատակների տակ. ամեն մի հանգած կյանք՝ մի արև-կորուստ, ամեն մի քանդված տուն՝ մեծ ողբերգություն:

Աղետալի երկրաշարժը ավերեց պետական բնակարանային ֆոնդի 70 տոկոսը կամ 1,2 միլիոն քառակուսի մետր բնակտարածություն, մասնավոր հատվածի 18,7 տոկոսը: Արդյունաբերական համալիրի 38 ձեռնարկություններից լրիվին ավերվեց 12-ը, մասնակիորեն՝ 13-ը: Մնացածները տարբեր աստիճանի ավերածություններ են ստացել: Ընդհանուր առմամբ կորսվել է ավելի քան 400 միլիոն ռուբլու արտադրական կարողություն: 37 հանրակրթական դպրոցներից լրիվին ավերվել կամ քանդման է ենթակա 24-ը: Տասնյակ հազարավոր մարդիկ զոհ գնացին աղետին, դարձան հաշմանդամներ...

Ու հարվածն այդ ժողովրդի ուղիղ սրտին էր, հույսերով ու տագնապներով ապրող ժողովրդի սրտին: Բայց աղետն այս նաև ազդանշան էր, որը համախմբեց աշխարհի ժողովուրդներին փրկության մեծ գործի համար: Այդ ազդանշանին արձագանքեցին. սկիզբ առավ գթության, փրկության, օգնության աննախադեպ շարժում: Հայ ժողովրդին հասած ծանրագույն վիշտը բաժանելու եկան սովետական եղբայր ժողովուրդները, աշխարհի գթասիրտ մարդիկ: Աղետի բոթը խորապես ցնցեց աշխարհով մեկ սփռված մեր հայրենակիցներին: Ծանր ապրումներով՝ մորմոքը սրտերում, արցունքները աչքերին, սփյուռքահայերը սատար կանգնեցին մայր հայրենիքին. Նյութական, դրամական հսկայական օժանդակություն ի սպաս դրվեց ավերված քաղաքների ու շեների վերակառուցմանը: Եկան նրանք, եկան դարմանելու, մեզ հետ տոկալու...

Եվ դժբախտության մեջ մենք միայնակ չմնացինք: Մոլորակի անշահախնդիր օգնությունը ամենից առաջ մարդասիրություն ու կարեկցանք է հայ ժողովրդի հանդեպ, դա նաև արձագանք է մեր երկրում վերակառուցման ու դեմոկրատացման ընթացքին, քաղաքական նոր մտածողության հաստատումն է միջազգային ասպարեզում: Դժվար է ասել, թե հանրապետությունը հիմա ինչ վիճակի մեջ կլիներ, եթե կուսակցության հռչակած դեմոկրատիան և հրապարակայնությունը չընձեռեին այն հնարավորությունները, ինչին ականատեսը եղանք մենք բոլորս:

Այդ ծանրագույն ու դժնի օրերին Լենինականին օգնություն ցույց տվեցին բոլոր մայրցամաքների 111 պետություն և յոթ միջազգային կազմակերպություն: Համաշխարհային համերաշխության և գթության ալիքը գերազանցեց քաղաքական տարաձայնությունները ու տարբերությունները: Ասվածի վկայությունն է և այն, որ օգնության պատրաստակամություն հայտնեցին անգամ այնպիսի պետություններ, ինչպիսիք են, օրինակ, Չիլին, Իսրայելը, Հարավային Կորեան, Հարավաֆրիկյան Հանրապետությունը, որոնք դիվանագիտական հարաբերություններ չունեն մեր երկրի հետ:

Ակամայից մտաբերում ես մեծ Նորվեգացու այնքա՜ն եռանդագին հայանպաստ ջանքերը: Որքա՜ն անհաղորդ մնացին ազգերի լիգայում ընդգրկված պետությունները Ֆ. Նանսենի խնդրանքին՝ անհապաղ օգնություն կազմակերպել ի նպաստ Հայաստանի որբերի, բազում արհավիրքներ տեսած հայ ժողովրդի: Իսկ ինչպե՞ս չհիշել այն «աղերսալից խնդրագիրը», որ Լենինականում մի խումբ ողբացող մայրեր ներկայացրին Ֆ. Նանսենին. այնտեղ նշվում էր, որ միայն 1920 թ. թուրքերը գերեվարել են 12 հազար հոգու, որոնք կա՛մ տանջամահ են արված, կա՛մ «դատապարտված են գանակոծման, սովամահության ու թշվառության»...

Եվ ահա, 64 տարի անց Ֆ. Նանսենի հայրենիքը՝ Նորվեգիան, առաջինների թվում օգնության հասավ Լենինականին. հատուկ ինքնաթիռը՝ նորվեգական դրոշով, վայրէջք կատարեց հայկական հողում՝ բերելով դեղորայք, տաք հագուստ, անհրաժեշտ սարքավորումներ:

Երկրաշարժից անմիջապես հետո սովետական դեսպանատների շենքերի վրա ծածանվող դրոշները երիզվեցին սև ժապավենով, դեսպանատներում բացվեցին հատուկ մատյաններ, որոնցում ցավակցական գրություններ թողեցին պետությունների ղեկավարները: Բազմաթիվ երկրներում գործում էին հասարակական ու կառավարական կենտրոններ, որոնք կոորդինացնում էին դրամական միջոցների հանգանակությունն ու տուժածների համար նախատեսված մյուս տեսակները: Արտասահմանից ստացված և սպասվելիք օգնությունը պատկառելի գումար է կազմում:

Այնուամենայնիվ, աղետին դիմագրավելու վճռական գործոնը դարձյալ սովետական մարդկանց գործարար ինտերնացիոնալիզմն է, միասնության, համախմբվածության, եղբայրության ստեղծարար հնարավորությունները: «Այսօր,— ասվում է սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի մեջ,— որևէ մեկին պետք չէ համոզել, որ մենք ուժեղ ենք, երբ միասին ենք: Ամբողջ երկիրը, յուրաքանչյուր հանրապետություն, յուրաքանչյուր սովետական ընտանիք Հայաստանի վիշտը զգացին որպես իրենց սեփականը: Եվ յուրաքանչյուրը կիսեց այդ վիշտը, օգնության շտապեց...»:

Փրկարար աշխատանքներին զուգընթաց անհետաձգելիորեն կազմակերպվեց Լենինականից, աղետահար մյուս շրջաններից երեխաների, կանանց ու ծերունիների էվակուացումը: Երկրի լավագույն առողջարանները, հանգստյան տները, պանսիոնատները սիրով ու հոգատարությամբ ընդունեցին աղետյալներին: Հազարավոր մարդիկ բաժին հանեցին իրենց ունեցվածքից, ամենաթանկը՝ իրենց արյունը ուղարկեցին Հայաստան: Լենինականի քաղաքային շտաբում այդ օրերին ստացված ցավակցական, նաև հույս ու հավատ ներշնչող նամակներից ուզում եմ առանձնացնել Ստավրոպոլի երկրամասի Նովոալեքսանդրովսկ քաղաքի Կալինինի անվան փողոցի № 95 տան 7-ամյա բնակչուհի Անժելիկա Մաշկովայի նամակը. «Բարև, լենինականցի աղջիկներ ու տղաներ: Մենք լսեցինք ձեզ պատահած ծանր դժբախտության մասին: Ես շատ եմ ցավում ձեզ համար: Ես յոթ տարեկան եմ: Սովորում եմ երկրորդ դասարանում: Եթե ձեզանից որևէ մեկը ցանկանում է ընկերություն անել ինձ հետ, ապա թող հյուր գա մեր տուն, իսկ եթե ցանկանա, թող մնա մեզ մոտ: Մայրս համաձայն է: Ես ունեմ երկու եղբայր և քույր: Ապրում ենք մեր սեփական տանը: Ես շատ եմ ցանկանում ընկերություն անել ձեզանից որևէ մեկի հետ: Գրեցեք մեզ: Սպասում ենք...»:

Ծրարի վրա նույն անվարժ ձեռքը նկարել է արև: Կարծես ցանկանալով արևի լույս ու ջերմություն հաղորդել բոլոր այն երեխաներին, ովքեր զամված են հիվանդանոցային մահճակալներին, կորցրել են հարազատներին ու մերձավորներին, ապրել երկրաշարժի սարսափները...

Երբեք այդքան մոտ չեն եղել դժբախտությունն ու կարեկցանքը: Տասնյակ հազարավոր մխիթարիչ օրինակներից ո՞ր մեկը թվարկես...

Այս տարվա հունվարի 17-ին տեղի ունեցած հանրապետական կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը նշեց, թե բարոյահոգեբանական ինչպիսի մեծ ներգործություն ունեցավ աղետի օրը ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Մ. Ս. Գորբաչովի հղած դիմումը հայ ժողովրդին: Նրա արտասահմանյան ուղևորության ընդհատումը, անմիջականորեն տարերային աղետի շրջան ժամանելը, բնակչության հետ կայացած բազմաթիվ հանդիպումներն ու զրույցները, հանրապետության անհետաձգելի և համակողմանի օգնություն ցույց տալու նպատակով տեղում կենսական վճիռներ ընդունելը և պրակտիկ միջոցների ձեռնարկումը քաղաքական մեծ ներգործություն ունեցան, մարդկանց ներշնչեցին լավատեսություն, վստահություն:

Դեկտեմբերի 10-ին Մ. Ս. Գորբաչովը եղավ Լենինականում, հանդիպումներ ունեցավ քաղաքի բնակիչների հետ, ծանոթացավ փրկարար աշխատանքներին: Պատասխանելով ՏԱՍՍ-ի թղթակցի հարցե-

րին՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարն ասաց. «Ես այստեղ իմացա, թե ինչպես են ամենադժվարին, առաջին գիշերը, առաջին ժամերին, երբ Լենինական քաղաքը կտրված էր, օդանավակայանը՝ քարուքանդ, երկաթուղին այլևս չէր աշխատում, խճուղին էլ էր քարուքանդ եղել, այդ իրադրության մեջ Երևանը՝ բժիշկները, բանվորները, շինարարները, երիտասարդությունը, ուսանողները, հատկապես բժշկական ֆակուլտետների, անմիջապես բոլորը մեկնեցին այնտեղ, որպեսզի օգնության հասնեն մարդկանց: Օդաչուները բացարձակ մթության մեջ էին վայրէջք կատարում, վերցնում ծանր վիրավորներին և տեղափոխում... Եվ հիմա ես տեսնում եմ ամբողջ երկիրը այնպիսի խոր սրտացավությամբ, այնպիսի անկեղծությամբ է արձագանքում մեր այս դժբախտությանը, և հպարտություն եմ զգում մեր բոլոր մարդկանց համար: Նշանակում է, որքան շատ բան կա մեր ժողովուրդների մեջ ամփոփված, ինչպիսի հսկայական բարոյական ուժ ունեն նրանք»:

Ցավոտ է մեր վերքը, սակայն յուրաքանչյուր լենինականցու մեջ մեծ սփոփանք առաջացրին սովետական եղբայր ժողովուրդների սրտացավությունն ու օգնությունը: Առանձնակի սիրով համակվեցին մեր մարդկանց սրտերը, երբ հայտնի դարձավ, որ վերականգնման աշխատանքները ղեկավարելու է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հեղինակավոր հանձնաժողովը՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովի գլխավորությամբ: Մեր ժողովուրդը, որին հատուկ է անսահմանորեն նվիրվելու զգացումը, անկեղծորեն սիրեց կառավարության նախագահին: Հիմա Լենինականում հրաշալի պատմություններ են արվում, թե ինչպիսի խոր ապրումներ է ունեցել Ն. Ի. Ռիժկովը՝ տեսնելով աղետահար քաղաքն ու աղետյալներին: Նա սրտացավությամբ էր արձագանքում մարդկանց կարիքներին, հմտորեն ղեկավարում փրկարարական և վերականգնողական աշխատանքները:

Մեր ժողովրդի ցավը իսկապես դարմանելու համար հարազատ եղբոր պես մեր ձեռքը սեղմեցին ու մեր վիշտն իրապես բաժանեցին, մերձավորի նման մեր կարիքները հոգացին մեծասիրտ Ռուսիան, Ուկրաինան ու Բելոռուսիան, Դաղստանը, մերձբալթյան և միջինասիական հանրապետությունները: Ղազախստանն ու Մոլդավիան, բոլորը... Արցախահայությունը՝ մայր հայրենիքի գորովին կարոտ, սատար կանգնեց իր եղբայրներին ու քույրերին:

Եվ, իհարկե, դարձյալ առաջինների թվում մեր ժողովրդին օգնության հասավ գթառատ Վրաստանը: Բոլոր քաղաքներից ու շրջաններից եկան նրանք շտապ օգնության մեքենաներով, բեռնավտոներով, կռունկներով, անձնական ավտոմեքենաներով: Մեծաքանակ սնունդ հասցրեցին Լենինական, հագուստ, անգամ՝ ջուր ու թերմոսներով տաք թեյ: Վրաստանի ուղղաթիռային անձնակազմերը քանի՜ տասնյակ վիրավորներ փոխադրեցին Երևանի հիվանդանոցները, վրաց փրկարարները քանի՜-քանիսին հանեցին փլատակների տակից: Որքա՜ն ընտանիքներ են այսօր ապաստանել վրացիների օջախներում:

Իսկ հերոսության, անձնազոհության ինչպիսի՜ փայլուն օրինակներ ցուցաբերեցին մեր զինվորները: Նրանք, որ պարետային ժամի հսկիչներ էին, աղետի առաջին իսկ պահից արտակարգ վճռական գործողություններով փրկարարական աշխատանքներ իրականացրին, նեցուկ կանգնեցին քաղաքին:

Դաժան փորձության դեմ-հանդիման, իրոք, մեր ժողովուրդը չկորցրեց ինքնատիրապետումը, իր հոգու վեհությունը: Հազարավոր մարդիկ դրսևորեցին հերոսության, անձնվիրության օրինակներ: Եվ եղան մարդիկ, որ ոչ միայն իրենց անձնական մեծ ողբերգությունն ապրեցին, այլև պարտավորված զգացին շտապել դեպի ուրիշի ցավը. և՛ մխիթարել, և՛ հոգալ, և՛ դառնալ վաղվա Լենինականի կառուցման կազմակերպիչ: Չէ՞ որ, որքան էլ անդառնալի լինեն կորուստները, Լենինականը պետք է հառնի ավերակներից: «Իսկ այդ մեծագործությունը,— երկրաշարժից մեկ շաբաթ անց լույս տեսած «Բանվոր» թերթի անդրանիկ համարում գրում է կուսակցության Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար Մ. Մկրտչյանը,— պետք է կատարենք մենք՝ լենինականցիներս: Մենք մեր ձեռքը կվերցնենք շինարարի մուրճը, մեր բազկի ուժով, մեր հոգու ջերմությամբ կկառուցենք մի նոր Լենինական, կվերագտնենք Գյումրվա կոլորիտը, և դա կլինի լավագույն հուշարձան աղետի հազարավոր զոհերի հիշատակին»:

Միսակ Մկրտչյանին կուսակցության Լենինականի քաղաքային կազմակերպության ղեկավարումը վստահվեց աղետից մի քանի ամիս առաջ: Որքա՜ն մտահղացումներ, համարձակ նախաձեռնումներ էր նա փայփայում իր հոգում, ինչպիսի՞ն էր նա տեսնում աճող Լենինականը, նրա զարգացման հեռանկարները: Մեծ արհավիրքից մի քանի օր առաջ, երբ նախապատրաստվում էր Լենինականի քաղաքային կուսկոնֆերանսը, այդ հարցերի շուրջ մտադրվել էի հարցազրույց ունենալ նրա հետ: Սակայն... Լենքաղկոմի առաջին քարտուղարին հանդիպեցի արդեն ավերված Լենինականի կանգուն մնացած հատուկենտ շենքերից մեկում՝ մանկական ստեղծագործության ոչ բարձր երկհարկանի տանը: Այստեղ էր տեղավորված աղետի հետևանքների վերացման քաղաքային շտաբը: Այստեղ էին ընդունվում բոլոր կարևորագույն որոշումները, այստեղից էին հրահանգ-ազդակները ուղղություն տալիս վերածնվող քաղաքի կյանքին, բաշխում և գործի դնում մարդկանց, տեխնիկայի ու բեռների օրեցօր զորացող հոսքը: Փոքրիկ սենյակներից մեկում, սեղանին փռված քարտեզի առջև խորասուզված տեսա նրան: Դեմքին ակնհայտորեն դրոշմված էին անքուն գիշերների գերլարումն ու հոգնությունը: Զրույցի համար այդպես էլ քաղկոմի քարտուղարը ոչ մի րոպե չկարողացավ առանձնացնել և ինձ մնում էր, ինչպես ասում են՝ «հետևել» նրան: Ես նրան տեսնում էի ամեն երեկո ժամը 8-ին տեղի ունեցող կուսակցական-տնտեսական ակտիվի հետ թռուցկաժողովներ անցկացնելիս, ուր վճռվում էին կենսական կարևորագույն հարցեր, քաղաքի ապագան: Հետո՝ բազմաթիվ մարդկանց հետ սրտալից զրուցելիս. ամենատարբեր հարցերով, խնդրանքներով, պահանջներով նրանք գալիս էին շտաբ, և բոլորն էլ իրենց վիշտը, մտահոգությունը ուզում էին բաժանել առաջին քարտուղարի հետ: Դրա համար նա ժամանակ էր գտնում: Հետո հասցնում էր լինել վերականգնվող ձեռնարկություններում, արտադրամասերում, տեղերում կազմակերպել և ընթացք տալ սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքին: Եվ այն, որ աղետի հետևանքների վերացման նպատակով հանրապետական կուսակցական կազմակերպության ծավալած գործունեությունը արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի դրվատանքին, դրանում մեծ բաժին ունի նաև Լենինականի քաղաքային կոմիտեն: Հասկանալի է, թե ինչու ՍՄԿԿ Կենտկոմը Մ. Ս. Մկրտչյանի թեկնածությունն առաջադրեց երկրի բարձրագույն մարմնում՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատների կազմում:

Ավերիչ երկրաշարժը և նրա հետևանքները վերացնելու պայքարը դարձավ արտակարգ պայմաններում արդյունավետորեն գործելու կուսակցական կազմակերպությունների ընդունակությունների, կարողությունների լուրջ քննություն: Այդ քննությունը պահանջեց ուժերի նշանակալի լարում, կազմակերպվածություն, հըստակություն: Ցավոք, մի շարք կուսակցական կազմակերպությունների անձեռնհասության, դանդաղաշարժության հետևանքով չհաջողվեց անմիջապես լուծել կենսականորեն կարևոր շատ հարցեր, ամենից առաջ՝ մարդկանց ներգրավել վերականգնողական և շինարարական աշխատանքներում: Խափանումներ տեղ գտան ստացված օգնության բաշխումը կազմակերպելու գործում: Աններելիորեն, առաջին շաբաթներին, դանդաղում էին կառուցապատման ենթակա գոտիներում բնահողի երկրաբանական, սեյսմիկայնության վիճակի ուսումնասիրումը, վագոնների բեռնաթափման հզորությունների աճը: Իսկ այնտեղ, որտեղ կուսակցական կազմակերպությունը, կոմիտեն, բյուրոն կարողացան մոբիլիզացնել բոլոր կոմունիստների ջանքերը, կուսակցական աշխատանքը նպատակամետ համապատասխանեցվեց տարերային աղետի հետևանքները վերացնելու պահանջներին, այնտեղ կարճ ժամանակաընթացքում վերականգնվեցին աշխատանքային հստակ ռիթմը, արտադրական հզորությունները:

Մեծ արհավիրքից մեկ ամիս անց իրենց առաջին արտադրանքը տվեցին բամբակագործվածքային և գուլպեղենի միավորումները, կահույքի և հրուշակեղենի ֆաբրիկաները, մսի կոմբինատը, գարեջրի-ածիկի, վերլուծական սարքերի գործարանները: Քաղաքը նորմալ կյանքի վերադարձնելու սկիզբը դարձավ ջրմուղի ցանցի վերականգնման աշխատանքը: Արդեն տարերային աղետի երկրորդ շաբաթվա վերջին քաղաքը ստանում էր վայրկյանում հազար լիտր խմելու ջուր՝ մինչև երկրաշարժը ունեցած ջրի կեսից փոքր-ինչ ավելի: Ընթացիկ տարվա սկըզբին Լենինականում գործում էին 104 խանութ՝ մինչև երկրաշարժը եղածի գրեթե կեսը, հասարակական սննդի 77 տաղավար... Այս փաստերը գրելիս գիտեի, որ մինչև հրապարակվելը դրանք հնանալու են: Որովհետև ամեն եկող օրը քաղաք է մտնում մի նոր արարումով: Յուրաքանչյուր աշխատանքային օր վերածվում է շենքի, արտադրանքի, լցվում մանկանց ուրախ կարկաչով:

Հունվարի 7-ին հանդիսավորությամբ դրվեց վերածնվող Լենինականի առաջին բնակելի շենքի հիմնաքարը: Այսօր շենքերի ամբողջ թաղամասեր են բարձրանում: Այսօր վրանադպրոցներում ուսումնական խաղաղ դասընթաց է: Վաղը լուսավոր, ամուր ու գեղեցիկ քարաշեն դըպրոցներում հնչելու են նոր զանգեր:

Եվ, այսպես, օր-օրի, հառնելու է հավերժի քաղաք Լենինականը...

# ՄԱՐԴՈՒՆ ԸՆԴԱՌԱՋ

Վ. ԿՈՒԶՄԻՆ

ՎԱՂ Է ԱՐԹՆԱՆՈՒՄ աշխատավոր քաղաքը՝ Կիրովականը: Արևը տակավին դուրս չի եկել սարերի հետևից, իր լույսով չի ողողել Լենինի պողոտան, բայց առավոտյան ցրտին մարդիկ շտապում, հա՛ շտապում են գործարաններ ու կառույցներ: Մի պահ ինձ թվում է, թե քաղաքն այնպիսին է, ինչպես կար մինչև ճակատագրական դեկտեմբերի յոթը: Սակայն դա միայն մի պահ: Ահա կուրացուցիչ վառ արևը ի վերջո ներխուժեց Կիրովականի փողոցները: Ժամը 8-ն է: Հենց այդ ժամանակ են երևում պարապմունքների շտապող դպրոցականների երամները: Հենց այդ ժամանակ են տնային տնտեսուհիները գերադասում հասնել խանութները՝ դրանց բացման պահին: Սակայն ինչ-որ չեն երևում ոչ նրանք, ոչ մյուսները:

Առայժմ 31 դպրոցներից գործում են չորսը, և դա էլ է հերիքում: Գրեթե 180-հազարանոց Կիրովականը կիսվել է, միայն էվակուացվել է 62 հազար մարդ, շատերը մեկնել են հարևան շրջաններ, հանրապետության սահմաններից դուրս: Այո՛, և ինչպե՞ս ապրել այդ՝ առաջին հայացքից չտուժված քաղաքում: Երկրաշարժից հետո պետական սեկտորի 908 տներից 41-ը փլվել են, քանդման ենթակա են 217-ը, ամրացում են պահանջում 650-ը: Փաստորեն շարքից դուրս է եկել ողջ բնակելի ֆոնդի երեք քառորդը: Այդպիսի պատկեր է նաև մասնավոր սեկտորում:

Աղետի օրը քաղաքում գործում էին 206 ձեռնարկություն, հիմնարկություն և կազմակերպություն՝ անձնակազմի ընդհանուր թվաքանակով 63 հազար մարդ: Այդ սարսափելի օրվա երեկոյան համարյա ամեն ինչ ջլատվել էր: Հատկապես խիստ վնասվել էր արդյունաբերական համալիրը՝ իր մեծությամբ Երևանից հետո հանրապետությունում երկրորդը: Լիովին փլվել էր հինգ ձեռնարկություն, որոնց թվում՝ ողջ երկրում հայտնի ճշգրիտ հաստոցների գործարանը, տրիկոտաժի արտադրամիավորումը, մորթու-մուշտակի ֆաբրիկան: Ոչնչացվել էին նաև ուրիշ ձեռնարկությունների մեծ թվով արտադրամասեր, տեղամասեր, առանձին կառույցներ:

Այդ տխուր, սրտամաշ վիճակագրությունը կարելի է շարունակել երկար: Սակայն չփորփրենք վերքերը: Կյանքը շարունակվում է: Մարդիկ, թեև դանդաղ, դուրս են գալիս ցնցակաթվածից, գործի կպչում՝ հանուն հարազատ քաղաքի վերականգնման: Արդեն գործում է բոլոր ձեռնարկությունների, հիմնարկությունների և կազմակերպությունների ավելի քան կեսը: Մասնակիորեն կամ լիովին վերսկսել է աշխատանքը 29 ձեռնարկություն. ճիշտ է, այնտեղ առայժմ աշխատում է նախկին անձնակազմի կեսը, բայց օրեցօր այդ թիվն աճում է: Կյանքն անում է իրենը:

Լենինի պողոտայում հզոր բարձրախոսների միջոցով տրանսլյացիայի են ենթարկվում համամիութենական և հանրապետական ռադիոյի հաղորդումները: Այդ արվել է կուսակցության քաղկոմի նախաձեռնությամբ, որովհետև երկրաշարժից հետո առաջին շաբաթներին մարդիկ զրկվել էին կապից, հիմա էլ դեռևս շատերը, որոնք ապրում են վրաններում և հավաքովի տնակներում, չունեն ռադիոընդունիչներ ու ռադիոբարձրախոսներ: Ինչքա՞ն խելացի վարվեցին՝ ռադիոֆիկացրին քաղաքը: Մարդիկ կանգ են առնում փողոցում, լսում են հատկապես «վերջին լուրերը»

---

*ԿՈՒԶՄԻՆ ՎԻԿՏՈՐ ԻՎԱՆՈՎԻՉ— «Պարտիյնայա ժիզն» ամսագրի բաժնի վարիչի տեղակալ:*



Մոսկվայից: Ահա հնչում են Շոստակովիչի մեղեդու ծանոթ ազդականչերը. «Հայրենիքը լսում է, հայրենիքը գիտի...» և այդպես խոր սիմվոլիկությամբ հնչում է այն տարերքից փիրավոր քաղաքում:

Հայրենիքը լսում է և գիտի քո դժբախտությունն ու հոգսերը, Կիրովակա՛ն: Երկիրը, արտասահմանցի շատ մարդիկ օգնության եկան քեզ: Հեռնաթափվում և բաժանվում են տնակներն ու վրանները, տրվում են դրամական նպաստներ, հագուստ, վճարվում են փոխհատուցումներ փլված և քանդման ենթակա կառույցների համար: Իսկ Կիրովականի արևմտյան մասում արդեն գործի են անցել հազարավոր շինարարներ՝ ուկրաինացի, բելոռուս, պատվիրակներ՝ միջին մեքենաշինության և քարածխային արդյունաբերության միութենական մինիստրություններից: Քաղաքը պետք է շարժվի դեպի արևմուտք, արդեն հիմա այնտեղ մաքրվում են հրապարակները՝ «Տարոն—1», «Տարոն—2», «Տարոն—3», «Տարոն—4» ապագա միկրոշրջանների համար: Այստեղ արդեն երևան են եկել և շարունակում են աճել շինարարների ժամանակավոր քաղաքամասերը: Չէ՞ որ ոչ հեռու ապագայում նրանց թիվը հասնելու է 20 հազար մարդու:

Աշխատանքի թափը հսայական է, բայց և խնդիրները դժվարին ու պատասխանատու են, չափվում են հարյուր հազարավոր քառակուսի մետր բնակտարածությամբ, սոցիալ-կուլտուրական և կենցաղային նշանակության տասնյակ օբյեկտներով: Է՛լ չենք խոսում արդեն արդյունաբերական պոտենցիալի լրիվ վերականգնման մասին: Ժամկետն էլ սուղ է՝ երկու տարի: Հարկավոր է շտապել, ոչ մի րոպե չմոռանալ շինարարության որակի, շենքերի ամրության մասին, դրանց ազգային կոլորիտի, իր մեծությամբ Հայաստանի երրորդ քաղաքի տեսքի մասին:

Թերացումները, կարգ ու կանոնի բացակայությունը դեռևս շատ են, պետք չէ թաքցնել: Գլխավորն այն է, որ փութաջանորեն չեն գործում հանրապետության պետշինը, նրա նախագծային ու հետազոտական ինստիտուտները: Արդյունքում դեռևս չկա քաղաքի գլխավոր հատակագիծը, միկրոսեյսմոշրջանացման շատ սխեմաներ: Իսկ դա կասեցնում է աշխատանքները, ստիպում դրանք կատարել ընտրովի, մի խոսքով, հանգեցնում է շինարարական հարահոսի խախտումների:

Այսպիսին է պատկերը. չգիտես ո՞րը դժվարին պատկերացնես, ինչպիսի՞ պայմաններում ստիպված կլինի գործել կուսքաղկոմը, ինչպիսի՞ հարցեր կլուծի: Այդ մասին էլ խոսք կլինի ստորև:

Դեկտեմբերին, երկրաշարժից մեկ շաբաթ անց, ես քաղկոմը գտա դեռևս իր նախկին, քաղաքի կենտրոնական հրապարակի զանգվածային շենքում: Տեղավորվել էին առաջին հարկում՝ քաղաքի շտաբի հետ միասին. վերին հարկերը վթարային վիճակում էին: Հիմա ողջ շենքը փակ է. ստորգետնյա ցնցումները շարունակվում են, չի կարելի մարդկանց ռիսկի ենթարկել:

Այժմ և՛ քաղկոմը, և՛ քաղգործկոմը, և՛ շտաբը, և՛ «Կայծ» թերթի խմբագրությունը, և՛ շատ այլ քաղաքային ծառայություններ փայտյա ու մետաղյա տնակներում են, որոնք տեղադրված են քաղկոմի շենքի հետևի զբոսայգում: Այստեղ էլ փոքրիկ վառարաններով երկու բրեզենտե վրաններն են, որտեղ կարելի է անցկացնել շտաբի կամ քաղկոմի բյուրոյի նիստերը: Իրադրությունը հիշեցնում է ռազմի դաշտ, այն հիմնականում դեռևս այդպիսին էլ մնում է: Ե՛վ քաղկոմի քարտուղարների, և՛ հրահանգիչների աշխատատեղերում հայտնվել են ծալովի մահճակալներ, քանի որ աշխատանքն ավարտվում է կեսգիշերին, և ոչ բոլորը քնելու տեղ ունեն: Յուրաքանչյուր շաբաթ քաղաքային շտաբը նիստ է ունենում, առաջ, աղետից անմիջապես հետո, այն հրավիրվում էր ամեն օր: Շտաբը գլխավորում է կուսքաղկոմի առաջին քարտուղար Ն. Գրիգորյանը, տեղակալն է քաղգործկոմի նախագահ Լ. Խաչատրյանը: Շտաբի կազմում գործում է մեծ քաղաքի կենսագործունեության ամենատարբեր ուղղությունների 20 հանձնաժողով: Շտաբի պարտականություննե՞րը: Դժվար է դրանք թվարկել: Պարզ ասած՝ նա զբաղվում է ամեն ինչով, ինչը կապված է Կիրովականը վերականգնելու, բնականոն կյանքի վերադարձնելու հետ: Իհարկե, հարցերի մեծ մասը տնտեսական, դիսպետչերական, կոորդինացիոն բնույթի են:

Այստեղ ես պետք է շեղվեմ, որպեսզի խորհեմ, թե ինչու շտաբի կառավարման ծանրությունը իր վրա է վերցրել կուսքաղկոմը: Մինչև վերջին ժամանակներս, այ-

սոր և մամուլում, կուսակցական կոմիտեների պլենումներում խոսվում էր այն մասին, որպեսզի կուսակցական մարմինները վճռականորեն ձերբազատվեն տարբեր տեսակի տնտեսական շերտանստվածքներից, ինչպիսիք հաճախ հանդիսանում են և շտաբները: Գործն, իհարկե, անվան մեջ չէ: Բանն այն է, որ տարբեր տեսակի կառույցներում ստեղծված շտաբները դարձել են մի տեսակ տնտեսական ֆունկցիաների մեջ կուսակցական կոմիտեների ուղղակի խառնվելու մարմնավորում, երբ քաղկոմի, շրջկոմի քարտուղարը հանդես է գալիս շինմոնտաժային վարչության պետի կամ տրեստի կառավարիչի դերում և կարգադրում է աշխատանքի ընթացքում՝ մոռանալով, որ ինքը առաջին հերթին քաղաքական աշխատող է, քաղաքական մարմնի ղեկավար:

Ձեռնամուխ լինելով քաղաքական սիստեմի ռեֆորմին՝ համամիութենական կուսկոնֆերանսը ի լուր ամենքի հայտարարեց. «Արմատական նշանակություն ունեն կուսակցական և պետական մարմինների ֆունկցիաների սահմանազատումը և սովետների լիիշխանության վերածնումը ներքևից վերև»: Դե, ինչպե՞ս այդ դրույթի լույսով մենք պետք է դիտարկենք աղետի վայրերում ամենուրեք ստեղծված շտաբները, այդ թվում և Կիրովականում: Որպես անախրոնի՞զմ, թե՞ հարկադիր միջոցառում:

Մտածում եմ՝ որպես հարկադրական միջոցառում: Առաջինը նրա համար, որ արտակարգ իրադրությունում իրականացվի պետական և հասարակական կազմակերպությունների ուժերի կոորդինացիա, իսկ կուսակցական կոմիտեները կոչված են դա անել այդ կազմակերպություններում աշխատող կոմունիստների միջոցով: Դա կարելի է արդյունավետորեն իրականացնել կառավարման միասնական մարմնի միջոցով, ինչպիսին դարձել են և շտաբները: Իսկ երկրորդ, և կարևոր է դա ընդգծել, սովետները տեղերում դեռևս պատրաստ չեն վերցնելու իշխանությունն իրենց ձեռքը: Անհրաժեշտ իրավունքների, տեղական ինքնակառավարման և տնտեսության մասին օրենքի բացակայությունը, վերջապես կուսակցական մարմինների հեղինակությանը ամեն ինչում ապավինելու սովոր սովետական ապարատի և դեպուտատական կորպուսի թուլությունը,— այդ ամենը վերջին հաշվով ստիպել է կուսակցական մարմիններին՝ կանգնել ղեկավարման ղեկին, երբեմն զբաղվել օպերատիվ կարգադրական գործունեությամբ: Այսպիսին է ռեալ իրականությունը և դրա առջև աչք փակել չի կարելի:

Սակայն սխալ կլինի մտածել, թե քաղկոմն ու նրա բյուրոն ինչ-որ «լուծվել» են շտաբի կազմում, դադարել են կատարել իրենց դերը որպես քաղաքական մարմին: Նոսրացել է նրանց կազմը, շարքից դուրս են եկել ոչ քիչ ակտիվիստներ, բայց ընտրովի մարմնի ուղղություն տվող ձեռքը, նրա աշխատանքի ոճը զգում են և՛ կոմունիստները, և՛ անկուսակցականները: Իսկ այդ ոճի էությունը, ինչպես տարողունակ և ճիշտ ասաց քաղկոմի առաջին քարտուղար Ն. Գրիգորյանը, մարդուն ընդառաջ գնալն է, նրան օգնելը՝ ոտքի կանգնելու, ձեռք բերելու հավատ վաղվա օրվա համար: Ահա երկու օրինակ:

Քաղկոմի բյուրոն քննարկում է ժամանակավոր կառույցներում բնակարանակենցաղային պայմանների վիճակի հարցը: Ներկայիս Կիրովականում այն ստանում է յուրահատուկ քաղաքական նշանակություն: Քաղկոմի հրահանգիչները արհմիութենական ակտիվի, բժիշկների հետ այցելում են վրաններ, հավաքովի տնակներ, գարաժներ, որտեղ այժմ ապրում են զգալի թվով կիրովականցիներ: Ոգևորել մարդկանց, իրենց աչքերով տեսնել, սրտով զգալ նրանց հոգսերը, օգնել իսկույն ևեթ, ընթացքում վերացնել դժվարությունները, տեղում պարզել, թե ում մեղքով չի անցկացվում ջեռուցումը կամ լուսավորությունը, ով է մեղավոր, որ ժամանակին չի ստացվում փոստը, ահա այսպես, բայց ոչ տեղեկանքների հիման վրա, ինչպես նախկինում էր, նախապատրաստվեց այս հարցը բյուրոյում քննարկելու համար: Խոսակցությունը նրա շուրջը երկար չէր, բայց հույժ գործնական էր. ով և ինչպիսի ժամկետներում պետք է սահմանի կարգուկանոն. ով է կրում անձնական կուսակցական պատասխանատվություն: Եվ բնակիչները շուտով զգացին փոփոխությունները դեպի լավը:

Ահա ևս մեկ հարց, որը քննարկել է քաղկոմի բյուրոն՝ քաղաքային տրանսպորտի աշխատանքի մասին: Կարող են առարկել՝ դրանով պետք է զբաղվի քաղգործկոմը: Առարկությունը, ինչպես ասում են, իր հիմքն ունի: Բայց եթե



ձեռնարկություններում առայժմ աշխատում է մարդկանց կեսը, եթե նրանք էլ չենք կարող ժամանակին հասնել գործի տեղը, կարելի՞ է, արդյոք, խոսել քաղաքի տնտեսական ու սոցիալական իրավիճակը շուտափույթ կարգավորելու մասին: Հետևաբար, հարցը վերաբերում է քաղաքական ոլորտին: Դրա հետ միասին, ինչպես վկայում էին քաղկոմում ստացված ահազանգերը, ավտոբուսային հավաքակայանի ղեկավարությունը ի զորու չէր ամրապնդել կարգապահությունն իր կոլեկտիվում, շփոթվել էր ծանր իրադրության մեջ: Նշանակում է՝ պետք է լուծել նաև կադրային հարց: Քաղկոմի բյուրոն, վերլուծելով գործերի վիճակը, կուսակցական տույժի ենթարկեց ավտոբուսային հավաքակայանի դիրեկտոր Ա. Հայրապետյանին: Նա ազատվեց զբաղեցրած պաշտոնից: Ավտոբուսային սպասարկումը հետզհետե բարելավվում է:

ԳՈՐԾԵԼ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԵԹՈԴՆԵՐՈՎ— առաջին հերթին խելամտորեն, վերակառուցման, դեմոկրատիայի, հրապարակայնության ոգով վարել կադրային քաղաքականությունը: Ինչպես նշեց Մ. Ս. Գորբաչովը վերջերս երկրի բանվոր դասակարգի ներկայացուցիչների հետ ունեցած հանդիպման ժամանակ, հին մեթոդներով այդ բնագավառում աշխատելը հեշտ էր: Կադրերի ընտրության և տեղաբաշխման նկատմամբ ձևական-անվանացանկային մոտեցումը «փորձարկվել» էր, այն վերացրին, նորը ներդրեցին: Իսկ վերակառուցումը ինքն է կարգավորում՝ ում պահել և ում է հարկավոր փոխարինել, երևան է հանում այն մարդկանց, ովքեր կարող են գործն ստանձնել և առաջ տանել: Քանի դեռ աշխատավորական կոլեկտիվների խորհուրդներն իրենք չեն լուծելու կադրային հարցերը կուսկազմակերպությունների օգնությամբ, արհմիությունների մասնակցությամբ, լուծելու դեմոկրատական եղանակին համապատասխան, մրցութային, ընտրովիության հիման վրա, ոչինչ չի փոխվի: Բավական է մեզ կադրեր հրամցնեն վերևից: Իհարկե, առանձին դեպքերում հնարավոր է մարդկանց առաջարկեն դրսից: Սակայն, այնուամենայնիվ, տեղերում իրենք պիտի լուծեն այդ հարցը:

Եթե այդ պահանջով դիտվի Կիրովականի կուսքաղկոմի վարած կադրային քաղաքականությունը, ապա կարելի է հաստատ ասել՝ ողջ աշխատանքն առջևում է: Դեմոկրատական ուղիով այլընտրական թեկնածուներից ընտրվել են քաղկոմի առաջին քարտուղար Ն. Գրիգորյանը, ճշգրիտ հաստոցների գործարանի կուսկոմիտեի քարտուղար Ա. Մադոյանը, մի քանի արտադրամասերի ու հերթափոխությունների պետեր: Սակայն գործը քանակի մեջ չէ: Կադրային քաղաքականության նորացման շրջադարձը դեռևս տեղի չի ունեցել, ձևական անվանացուցակային մոտեցումը առայժմ չի զիջում դիրքերը:

Իսկ ինչպե՞ս դրան ստիպել նահանջել, եթե այն, ինչպես ասում են, թափանցել է արյան մեջ, եթե այդ ձևով հեշտ է կարգադրել, քիչ հոգ տանել կադրերի դաստիարակության, պատրաստման մասին: Ցուցակը, ինչպես ինձ բացատրեցին, երեք անգամ պակասեցված է: Առաջ դրանում կային մոտ երկու հազար պաշտոններ, որոնք քաղկոմը պահում էր «բռի մեջ», այժմ մնացել է 673: Համարձակորեն կարող եմ ասել, որ այդ ղեկավար ընկերների համարյա մեծամասնությունը այժմ իսկական աշխատանք չի կատարում, իսկ մի քանիսին տեսնում են քաղկոմում, երբ նրանց հաստատում կամ հանում են բյուրոյում: Եվ դա ոչ միայն Կիրովականում, եղեք ցանկացած շրջկոմում, կտեսնեք գրեթե նույն բանը:

Եկեք քաղկոմից իջնենք սկզբնական կուսկազմակերպություններ, ձեռնարկություններ, տեսնենք, ինչպես է այնտեղ արտացոլվում այդ անվանացանկային քաղաքականությունը: Կիրովականի լուսատեխնիկական գործարան: Այստեղ քաղկոմն իր «պահունակում» պահում է դիրեկտորին, նրա երեք տեղակալներին, գլխավոր ինժեներին, կուսկոմիտեի քարտուղարին, գլխավոր կոնստրուկտորին, գլխավոր տեխնոլոգին, պետընդունման ղեկավարին: Հանրագումարում՝ 11 ղեկավար պաշտոններ: Հապա եղեք պրոֆտեխնիկական ուսումնարաններում, արյան փոխներարկման կայանում, կինոպրոկատում, գրադարանում, քաղաքային զբոսայգում, ամենուրեք անվանացանկի խիստ նեղվածք է: Պահը չէ՞, արդյոք, մտածել՝ ինչպիսի ժա-

մանակ ենք մենք ապրում, ժամանակը չէ՞, արդյոք, ավելի վստահել մարդկանց, աշխատանքային կոլեկտիվներին:

— Պահն է,— համաձայնում է կուսքաղկոմի կազմբաժնի վարիչ Ա. Թումանյանը: Նա ինքը այդ պաշտոնում չորս ամիս է, առաջ եղել է գործարանի կուսկոմիտեի քարտուղար՝ շատ ակտիվիստների կարծիքով լավագույն քարտուղարներից մեկը: Բազմակողմանիորեն կրթված, ոչ ստանդարտ մտածող մարդ է: Այդպիսիք են այժմ հույժ անհրաժեշտ կուսակցական ապարատում: Ա. Թումանյանը, նաև մի քանի ուրիշ կուսաշխատողներ շարադրեցին իրենց կարծիքը կադրային հրատապ պրոբլեմի վերաբերյալ:

-- Չե՞ք մտածել, արդյոք, ինչու մի քանի ղեկավարների ընտրության ժամանակ մարդիկ ընդդիմադրում են: Հաճախ միայն այն պատճառով, որ թեկնածուն երաշխավորված է լինում «վերևից»: Առաջանում է յուրահատուկ հոգեբանական չընդունելու տրամադրություն: Չէ՞ որ մենք մարդկանց հետ առաջ չէինք խորհրդակցում, չէինք հարցնում նրանց կարծիքը, ահա և նրանք այժմ լարվածությամբ են արձագանքում ամեն մի կարգադրության, վերևից «հրամցված» թեկուզև բանիմաց ղեկավարի:

Նրա հետ կարելի է համաձայնել: Նա, քաղկոմի բոլոր աշխատողները լավ են հասկանում, որ կադրերը եղել են, կան և կլինեն կուսակցության առաջնահերթ հոգսը, կուսակցական աշխատանքի հիմքերի հիմքը: Բայց գործել հին ձևով արդեն չի կարելի, այն ժամանակները չեն: Ի՞նչ են առաջարկում: Մինչև վերջին կետը կրճատել քաղկոմի կողմից հաստատվող պաշտոնները, ցուցակում թողնել միայն առաջին ղեկավարներին: Ողջ կադրային աշխատանքը տեղափոխել աշխատանքային կոլեկտիվներ, սկզբնական կուսկազմակերպություններ, որոնք պետք է անցկացնեն իրենց գիծը աշխատանքային կոլեկտիվների խորհուրդների, նրանց կազմում գտնվող կոմունիստների միջոցով: Իսկ որպեսզի իրականացվի այդ ծրագիրը, հարկավոր է բարձրացնել իրենց իսկ՝ սկզբնական կուսկազմակերպությունների, մարտունակությունը, զարգացնել նրանց ինքնուրույնությունը, չզբաղվել մանր բաներով:

Քաղկոմի աշխատանքի այդ կարևոր ուղղության՝ սկզբնական կուսկազմակերպությունների կապի ամրապնդման մասին հարկավոր է ասել առանձնահատուկ:

ՔԱՂԱՔՈՒՄ ԿԱ 183 ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆ: Նրանցից 11-ը ունեն կուսկոմիտե, այսինքն՝ առավել խոշորները, որոնք իրենց շարքերում միավորում են քաղաքի կոմունիստների գրեթե կեսը: Քաղկոմը հիմնական աշխատանքը տանում է հենց այս տասնմեկի հետ: Նրանք, այսպես ասած, եղանակ են ստեղծել քաղաքում, պարզապես ազդել են քաղկոմային ցուցանիշների վրա, լինի դա կուսակցության մեջ ընդունելություն թե շաբաթօրյակներ: Իսկ այն կուսակցականները, որոնք զբաղված էին ժողովրդական կրթության, առողջապահության, առևտրում և սպասարկման ոլորտում, հաճախ մնացել են տեսադաշտից դուրս: Երկրաշարժի դասերից մեկը հենց այն է, որ քաղաքի կենսագործունեությունը հնարավոր չէ առանց այդ հիմնարկությունների ու ծառայությունների, հաճախ էլ՝ նրանց սակավաթիվ կուսկազմակերպությունների:

Քաղկոմում նաև մտածում են, թե ինչպես արդյունավետ կապ հաստատել օգնության եկած կոմունիստ շինարարների հետ: Այնտեղ ստեղծվում են ժամանակավոր կուսկազմակերպություններ, բայց հարկավոր է ստանձնել նրանց շեֆությունը և միացնել այն գործարանային կուսկազմակերպություններին, որոնք արտադրական յուրահատկությամբ մոտ են կանգնած նոր եկած ընկերներին: Մի խոսքով, անցյալից դասեր արվում են, կուսակցականների ուժերը միավորելու նպատակով ձեռնարկվում են համապատասխան միջոցներ:

Պրոբլեմներ, ճիշտ է, ծագում են ոչ քիչ: Քաղկոմի կուսակցական ապարատի վերակառուցումը նոր միայն ավարտվում է, կազմբաժնի հրահանգչական կազմը դեռևս լրիվին չի կոմպլեկտավորված: Ինչպե՞ս ազդեցության ոլորտում ներգրավել բոլոր 183 կուսկազմակերպությունները, մշտական կապ հաստատել նրանց հետ, իրազեկ լինել նրանց գործերին, այլ խոսքով, տիրապետել իրադրությանը:



Գնացին այսպիսի ուղիով. հրաժարվեցին հին սկզբունքից, երբ հրահանգիչները կուսկազմակերպությունները «ղեկավարում» էին ճյուղային սկզբունքով: Այժմ յուրաքանչյուր հրահանգիչ ունի ամենատարբեր բնույթի ձեռնարկությունների և հիմնարկությունների կուսկազմակերպությունների խումբ: Նա գործ ունի նրանց հետ կուսակցական կյանքի բոլոր հարցերով: Բա՞րդ է: Բավականին շատ: Բայց դրա փոխարեն յուրաքանչյուր հրահանգչի քարտուղարները գիտեն դեմքով: Նրանց համար նա քաղկոմի լիազոր ներկայացուցիչն է, խորհրդատուն, օգնականը, բայց ոչ վերահսկիչը:

Գործողության մեջ դրվեց թերևս հայտնի ձևը՝ «քարտուղարի օրը»: Արտակարգ իրավիճակում այն ստացվեց չափազանց հաջող: Կարող են ասել՝ նորից խորհրդակցություն: Չշտապենք եզրակացություններ անել: Առաջին, ճիշտ կլինի այն անվանել ոչ թե օր, այլ «քարտուղարի ժամ»: Հենց այդքան է շարունակվում հանդիպումը, և դրան հետևում են խստորեն: Խորհրդակցությունն անցնում է գործարար, կոնստրուկտիվ կերպով: Երկրորդ, Կիրովականի պայմաններում, երբ բոլոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների հետ կապը իսկականից չի կարգավորվել, դրանք դեռևս անփոխարինելի են:

Ի՞նչ են տալիս այդպիսի հանդիպումները. իսկ սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հինգ խմբից յուրաքանչյուրը հավաքվում է շաբաթը մեկ անգամ: Իրենք՝ մասնակիցները, դրանք համարում են շատ օգտակար և անհրաժեշտ: Սկսվում է նրանից, որ կուսակցական ղեկավարները, հանդիպելով միմյանց, ծանոթանում են քաղաքի տարբեր թաղամասերի գործերի վիճակին, որը պակաս կարևոր չէ մարդկանց շրջանում բացատրական աշխատանք ծավալելու համար:

Այնուհետև: Այդպիսի հանդիպումների ժամանակ նրանց հաղորդում են քաղկոմի գործողությունների, առաջիկա միջոցառումների մասին: Նրանք ստանում են անհրաժեշտ հրահանգավորում: Եվ, վերջապես, ըստ իս, դա գլխավորն է, այստեղ կազմակերպվում է յուրահատուկ ուսուցում, ոչ ստանդարտ իրադրություններում գործողությունների փորձի փոխանակում: Գործնականում դա երևում է այսպես: Ամեն անգամ, որպես կանոն, հաղորդմամբ հանդես է գալիս քարտուղարներից որևէ մեկը: Այն լինում է հակիրճ, գործնական հետևություններով և առաջարկություններով: Ո՛չ, դա հաշվետվություն չէ, բայց, հավանաբար, ավելի պատասխանատու է այլ կարգի հաշվետվությունից: Չէ՞ որ քեզ լսում են քո 30—35 կոլեգաները, քո կուսակցական ընկերները և նրանք չեն հանդուրժի դատարկախոսությունը: Այդ գործարար երկխոսության ընթացքում ծագող հարցերը պահանջում են ծայրաստիճան մտազգաստություն և հիմնավորված պատասխան:

Վիճակվեց լսել, թե ինչպես ելույթ ունեցավ Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի կուսկոմիտեի քարտուղար Գ. Դոնապետյանը: Գործարանի հետ է կապված նրա կյանքի մեծ մասը: Կառուցել է այն, եղել ապարատավար, վարպետի օգնական, հերթափոխի, արտադրամասի պետարհկոմի նախագահ, ութերորդ տարին է՝ գլխավորում է կուսկոմիտեն: Երևակայեցեք, ինչպե՞ս նրա համար թանկ է կոլեկտիվը: Իսկ կոլեկտիվը, որի հին կազմի գրեթե կեսն է մնացել, հաջողությամբ է աշխատում, երկրին տալիս անհրաժեշտ արտադրանք: Ընդ որում 750 ընտանիք դեռևս բնակարան չունի: Ահա թե որն է դժբախտությունը: Եվ, ելույթ ունենալով կոլեգաների առջև, քաղկոմի շտաբի վրանում, քարտուղարը հստակ շարադրում է գործողությունների ծրագիրը, որը մշակել է կուսկոմիտեն, դիրեկցիայի և աշխատանքային կոլեկտիվի խորհրդի հետ միասին աղետից մի քանի օր հետո: Այն կենսագործվում է անշեղորեն: Շուտով 120 ընտանիք կգնա ապրելու «Լոռի» հանգստյան տանը, որտեղ ավարտվում է նորոգումը: Հետո կարելի է այնտեղ ուղարկել ևս 50 ընտանիք: Քարտուղարը պատմում է, թե ինչպես արտադրանքի թողարկմանը զուգահեռ ընթանում է մասնաշենքի ամրացումը:

Հարց. «Ու՞ր եք ուղարկելու մարդկանց, եթե ժամանակին չբացեն հանգստյան տունը»: Պատասխանը չի ուշանում. «Նման դեպքում նախատեսել ենք գործարանի վարչական շենքը, պատրաստում ենք խնդրի լուծման այդ տարբերակը»:

Իմ կողքին նստած է «Ավտոմատիկա» գործարանի կուսկոմիտեի քարտուղար Գ. Հովնեփյանը։ Նկատում եմ, թե ինչպես է նշում՝ «Գործարանային վարչություն». հետո պարզեցի, որ նրանց մոտ իրադրությունը նման է քիմիական մանրաթելի գործարանին, որովհետև նրանք ևս պետք է մտածեն, թե ինչպես օգտագործել վարչական մասնաշենքը։ Շնորհակալություն, որ հանգեցրին այդ մտքին։

Իսկ հաջորդ օրն արդեն քարտուղարների ուրիշ խումբ լսում էր «Արմենիա» առողջարանի կուսկազմակերպության (ընդգրկում է 14 կոմունիստ) քարտուղար Ս. Մանասյանի հաղորդումը։ Եվ այդպիսի ուժերով, պարզվում է, կարելի է շատ բան անել։ Առողջարանում այժմ ապրում է մի քանի հարյուր մարդ, որոնք զրկվել են բնակարանից, զբաղված են նույնիսկ բժշկական և պրոցեդուրային կաբինետները։ Այդուհանդերձ, այստեղ բժշկական զննություն է անցկացվում, սնունդը անվճար է։ Ճիշտ է, նկատեց քարտուղարը, մարդիկ բողոքում են, թե թերթերը չեն բավականացնում, կինոնկարներ չեն ցուցադրվում։

Եվ գիտե՞ք, քարտուղարներն այդ բողոքներին առանձնապես չարձագանքեցին՝ պատճառաբանելով, թե այդ հարցերը լիովին լուծելի են, հարկավոր է ավելի շատ նախաձեռնություն։ Մենք պետք է կրկնապատկենք, եռապատկենք ջանքերը։ Դա կլինի մեր լավագույն շնորհակալությունը օգնության համար։ Դա հարազատ քաղաքի, ողջ հանրապետության արագ վերականգնման ուղին է։

---

Հանձնված է շարվածքի՝ 10.03.89 թ.։ Ստորագրված է տպագրության՝ 18.04.89 թ.։ ՎՖ 10917։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրություն՝ օֆսեթ, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակը՝ 12.582։ Պատվեր՝ 347։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2։